# ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹԻՒՆ

## ՀԻՆ ԵՒ ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆԵԱՑ

## ԴՊՐԱՏԱՆՑ ՏՂԱՅՈՑ ՀԱՄԱՐ



ԱՇԽԱՏԱՍԻՐԵՑ

Հ. ՄԱՆՈՒԷԼ Վ. ՔԱՋՈՒՆԻ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆ ՈՒԽՏԷՆ






ՎԵՆԵՏԻԿ

ՄԽԻԹԱՐԵԱՆՑ ՏՊԱՐԱՆԸ

1857

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Ինչ դիտմամբ որ ասկէ քանի մը տարի առաջ Հայաստանեայց Հնախօսութեան համառօտութիւն մը հրատարակեցինք դպրոցաց մէջ վարժուող տղայոց համար, նոյն վախճանաւ նաև այս երկասիրութիւնս ալ տպագրելու յորդորուեցանք։ Եւ ինչպէս Հնախօսութեան մէջ ընդհանրապէս մեր բարեյիշատակ Ինճիճեան վարդապետին համանուն ընդարձակ երկասիրութեանը հետևեր ենք, ասանկ ալ նաև Աշխարհագրութեան մէջ անոր առաջնորդ բռնեցինք իր Հին և Նոր Հայաստանը, որոնք վաստակաւոր հեղինակին բազմամեայ ուսմանցն և հետազօտութեանց արդասիք են։ Բայց տեղ տեղ ալ հարկ եղաւ մեզի իրեն քանի մը սխալները ուղղագրել, ձեռուընիս ունենալով նաև այնպիսի երկասիրութիւնք թէ հին

նախնի մատենագրաց , և թէ արդի ազգային և օտար ճանապարհորդաց՝ որոնք Ինճիճեան վարդապետին ժամանակ չկային : — Հին Հայաստանեայց ստորագրութենէն ետքը մասնաւոր տեղեկութիւն մըն ալ հարկաւոր սեպեցինք դնել փոքուն Հայոց գաւառացը վրայ , որոնք երկար ժամանակ Հայոց Թագաւորներուն իշխանութեան տակ մնալով և բազմաթիւ ազգայնոց այն կողմանցը բնակութեամբ իրաւամբ մասն սեպուած են Հայաստանեայց :

Չենք տարակուսիր որ մեր այս համառօտ երկասիրութիւնը իր վախճանին պիտի հասնի՝ ազգայնոց սրտին մէջ տղայ հասակէն սկսելով ազդել սէր և եռանդ մը այն երկրին վրայ՝ որ մեր ընդհանուր հայրենիքն ըլլալով՝ ամենուս ալ մասնաւոր մտադրութեանն արժանի է . և անով միայն կրնայ ստանալ իր նախնական վայելչութիւնը :

---

# ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ

---

## ԳԼՈՒԽ Ա.

*Հայաստանի անունը.*

1. Հայք կամ Հայաստան անուան ծագումը: — Հայք կամ Հայաստան անունը մեր Հայկ նահապետին անունէն եկած է, որ Նեբրովթայ յաղթելէն ետքը տիրելով այն երկրին, իր անունովը Հայք կոչեց: Այս անուան տեղ երբեմն մեր մատենագիրներն ուրիշ անուններ կը գործածեն, ինչպէս. Յաբեթեան նահանգ, Թորգոմեան աշխարհ, Արամեան նահանգ, Ասքանազեան աշխարհ. բայց աւելի սովորական ու գործածականն է Հայոց աշխարհ կամ Հայոց երկիր, Հայաստան աշխարհ կամ Հայաստան երկիր, կամ պարզ Հայաստան ըսելը:

2. Իսկ օտար ազգերէն վրացիք Սոմխէթ կ'անուանեն Հայաստանի այն մասն որ իրենց իշխանութեան տակ ինկած էր: Միւս

ազգերն ալ չզխտնալով Հայք կամ Հայաստան անունը, Արմենիա կ'ըսէին, Պարսիկք և Ասորիք կոչեցին Արմնիք կամ Արմէնիկք, Յոյները Արմէն, մեր Արամ նահապետին անուամբն, որ ինչպէս պատմութենէ գիտենք՝ իր մեծամեծ քաջութիւններովը բոլոր դրացի ազգաց առջև զարմանալի եղաւ: Ետքերը յունաց ու նաև ուրիշ ազգաց մէջ աւելի սովորական դարձաւ Արմենիա անունը. և ինչուան հիմա այս անունը կու տան Եւրոպացիք մեր երկրին: Ուստի սուտ է յունաց ըսածը թէ Արմէնիոս անունով Յասոնի ընկերներէն մէկը Արգոնաւորդաց պատերազմին ատեն Հայաստան գալով ու շատ շինութիւններ ընելով, երկիրն իր անունովը Արմէնիա կոչած ըլլայ:

3. Եւրոպացի հնախօսաց մէջ Պօշար և Կալմէ այլևայլ կարծիք ունեցան Արմենիա անուան վրայ: Պօշար՝ Նիկողայոս Դամասկացւոյն խօսքէն, որ կ'ըսէ թէ «Մինաս աշխարհէն վեր կայ մեծ լեռ մը Հայաստանի մէջ Վարիս անունով, ուր շատերը ազատած են կ'ըսեն ջրհեղեղէ», կը հետևցընէ, թէ Արմէնիա ելած է եբրայական Հար-Մինի անունէն, այսինքն լեռան Մինի, որով նախ Արարատ լեռը կը կոչէր կ'ըսէ. այս լերան անունէն՝ ետքը բոլոր աշխարհն ալ Արմէնիա ըսուեցաւ: Վասն զի ըստ լատինացւոց թարգմանութեան Երեմիայի մէջ կը յիշուի Միննի անունով գաւառ մը Հայաստանի մէջ, զոր նոյն կը համարի Պօ-

շար՝ Նիկողայոս Դամասկացւոյն յիշած Մինիաս անուան հետ։ Այս Մինիի գաւառը գաղղիացի Սէն Մարդէն աշխարհագիրը կը կարծէ թէ Տուրուբերանի մէջ Մանաւազեան ցեղին երկիրն ըլլայ։ Պոշարին կարծիքը կ'ընդունի ըստ ամենայնի նաև Կալմէ, որոյ սխալ ըլլալը յայտնի է մեր ազգային մատենագիրներէն։

4. Եբրայեցիք սուրբ գրոց մէջ մեր երկրին Արարատ անունը կու տան. զոր օրինակ. « Եւ հանգեաւ տապանն . . 'ի լերինս Արարադայ »։ Ուր լատին և ասորի թարգմանութիւնները հոս և ուրիշ տեղ նշանակութեանը նայելով կը դնեն Արմէնիա։ Աստուածաշունչ գրոց հեղինակներուն՝ Արմէնիա անուամբ զՀայաստան չկոչելուն գլխաւոր պատճառն այն է որ իրենց մէջ նոյն անուամբ կը կոչուի Ասորւոց երկիրը. վասն զի Ասորւոց նախահայրն ալ էր ուրիշ Արամ մը, Սեմայ որդին. այս բանիս համար ուր սուրբ գրոց եբրայականին մէջ գրուած է «'ի միջագետս Արամայ»[1], մեր թարգմանիչք իմաստին նայելով դրած են, «'ի միջագետս Ասորւոց»։ Ի սուրբ գիրս երբեմն ընդհանուր առմամբ մեր աշխարհն իր սահմանակցօքը կը կոչուի Արևելք, Հրէաստանի Արևելեան հիւսիսային կողմը լինալուն համար։ Ուստի Մովսէս ալ գրախտին տեղն որոշելու համար կ'ըսէ ընդ

1 Ծնունդք, ԻԲ. 2։

արևելք ։ Նոյնպէս Ջրհեղեղէն ետև երբոր մարդիկ Հայաստանի մէջ շատնալով սկը-սան ցրուիլ, կ'ըսէ սուրբ գիրքը. «Եւ 'ի խաղալ նոցա յարևելից». որ նոյնպէս Հայաստանէն եղաւ, ինչպէս ցուցըցինք Հնախօսութեան մէջ։

5. Մեր մատենագիրները Արարատ, Այ-րարատ կամ Արարատեան աշխարհ ըսելով կ'իմանան բուն Արարատ նահանգը, կամ անոր մէջ գաւառ մը. բայց տեղ տեղ, ինչ-պէս Խորենացւոյն ու Բուզանդին մէջ, բո-լոր Հայոց երկրին անուանն ալ գործածած կայ։

6. Խնդիր է թէ արդեօք օտարազգիք մեր Արամ նահապետէն առաջ ինչ անուն կու-տային Հայաստանի։ — Որովհետև Հայք անունն անծանօթ էր իրենց, ուստի հաւա-նական կ'երևի թէ Սկիւթիա և Կովկասային երկիր ըսելով կ'իմանային նաև մեր աշ-խարհն ալ. վասն զի Յունաց հին մատենա-գիրները Ջրհեղեղէն ետև եղած նահապե-տաց շատերուն տեղերը, զորոնք յայտնի գիտենք թէ Հայաստանի մէջ են, կը դնեն Սկիւթիա և Կովկասական լեռներու մէջ։

7. Հայաստանի գաւառաց մէջ կան քա-նի մը կողմանք որ օտար ազգաց անուամբն ալ կը կոչուին. ինչպէս.

ա. Վրաց անունով երբեմն մեր մատե-նագիրները կ'անուանեն Հայաստանի հիւ-սիսային կողմը, մանաւանդ Գուգարք նա-հանգը. որովհետև երկայն ատեն Վրաց ձեռքն էր այս նահանգը։

բ. Աղուանից աշխարհ կ՚ըսուէր շատ տեղ մեր Ուտի նահանգը հինգերորդ դարէն ՚ի վեր. Արցախ և Փայտակարան նահանգները տասներորդ դարէն ետքը։

գ. Սահմանք ասորւոց կ՚ըսուէին երբեմն չորրորդ Հայքն ու փոքր Հայոց հարաւային կողմերը, շրջակայ գաւառներով մէկտեղ. նաև Պլինիոս Հայաստանի Ծոփք նահանգը Ասորւոց մէջ կը դնէ։

դ. Ատրպատականաց կողմն կ՚ըսուէին Աղձնիք նահանգը, և Կորճէից նահանգին Տմորիք գաւառը։

ե. Շատ տեղ օտարազգի մատենագրաց մէջ Մարաց անունով կոչուած է մեր երկիրը, մանաւանդ անոր սահմանակից կողմերը, ինչպէս են Փայտակարան, Կորդուք, և այլն. իսկ մեր մատենագիրներուն մէջ շատ տեղ Փայտակարան նահանգը Մարաց անունով յիշուած է։

զ. Տեղ տեղ արտաքին պատմիչները Հայաստանը Պարթևաց անունով կը կոչեն, ինչպէս նաև Ափրիկանոս և Կեդրենոս Արարատ լեռը Պարթևաց երկրին մէջ կը դնեն։

է. Խորենացին Պարսից անունով Հայաստանի տասնըհինգ նահանգներէն մէկը Պարսկահայք կ՚անուանէ, Պարսից ձեռքն ըլլալուն համար. իսկ օտարազգիք Բերսարմենիա կամ Պարսկահայք կ՚անուանեն Հայաստանի այն մասը որ Պարսից բաժին ինկած էր։

*ը․ Ատրպատական անունով կը կոչուի երբեմն ազգային և արտաքին պատմիչներէն մեր Փայտակարան նահանգը։*

## ԳԼՈՒԽ Բ․

### *Հայաստանի բնական նկարագիրը․*

8․ *Հին Հայաստանի սահմանը։ — Հին Հայաստանի սահմանն է հիւսիսէն Եգերացւոց աշխարհը, և Վրաց և Աղուանից աշխարհքներն որ Կուր գետով Հայաստանէն կը բաժնուին․ արևելքէն՝ Աղուանք, Կազբից ծովը և Ատրպատական․ հարաւէն Մարք, Ասորեստան և Տօրոս լեռները՝ որով Հայաստան Միջագետքէն և յԱսորւոց կը բաժնուի, արևմուտքէն ալ Կապադովկիա և փոքր Ասիա։*

9․ *Հայաստանի տարածութիւնը։ — Մեր նախնեացմէ ոչ ոք Հայաստանի տարածութեան չափը յիշած է․ իսկ արտաքին աշխարհագիրներէն ոմանք այլ և այլ չափ գրուցած են երկայնութեանն և լայնութեանն, որ ստոյգ չերևար․ իսկ հիմակուան աշխարհագրաց հաշուին նայելով մեծ և փոքր Հայոց մեծութիւնը մէկտեղ* 150,000 *քառակուսի մղոնի չափ կ'ըլլայ։*

10․ *Հին ատեն Հայաստանի կլիմային վրայ յիշատակութիւնք։ — Հնուցմէ ճանչ-*

ցուեր էր Հայաստանին օդը ամառուան մէջ բարեխառն և երկինքը պայծառ և մաքուր . անոր համար երբոր Շամիրամ Ասորես-տանէն Հայաստան եկաւ , օդոյն բարե-խառնութեանն և գեղեցկութեանը շատ հա-նելով , ուզեց Վան քաղաքը շինել , որպէս զի տարւոյն ամռուան եղանակը զուարճու-թեամբ Հայաստանի մէջ անցընէ ։ Բայց ձմեռուան ցուրտը անտանելի է . և ձիւնն ալ անպակաս , որ ինչուան մարդաչափ կը բարձրանայ , և անցուորներուն շատ վը-տանգներ կը հասցընէ , անոր համար Տա-կիտոս Հռովմայեցի պատմիչը դժնդակ կ՚ա-նուանէ Հայաստանի ձմեռը , և Արատիոս բանաստեղծը Նպատ լեռը սառնկապատոյց կը կոչէ ։ Ստրաբոն կը գրուցէ թէ ճամ-բորդները ձմեռուան մէջ ճամբայ ընելու ատեն կ՚առնուին հետերնին բարձրկեկ գա-ւազան մը , որ դէպ ՚ի վեր կը բռնէին , որ-պէս զի եթէ ձեան տակ թաղուելու ըլլան , անով կարենան կամ ծակ մը բանալ , կամ ուրիշ ճամբորդներու նշան թողուլ որ ազա-տեն զիրենք ։ Բնակիչքն այսպիսի դժնդակ ցրտի մը սաստկութենէն պատսպարուելու համար միակ հնարք գտած են՝ բլրոց և ձո-րերու քով գետնափոր կամ կէս ստորերկ-րեայ տներ շինել . որոնց յիշատակութիւնը կ՚ընէ Ցունաց պատմիչ զօրավարը Քսենո-փոն , որ Քրիստոսէ գրեթէ 400 տարի ա-ռաջ սառնամանեաց ժամանակ Հայաստա-նէն անցաւ ։ Բարձր Հայոց մէջ ամենէն

ունելի յերկարատև է ձմեռը. վասն զի եօթը ութ ամիս միակերպ ձիւն կու գայ. անկէ վերջը Այրարատայ ու Երևանի կողմերը, և աստիճանաբար 'ի Վան, 'ի Կորդիս, և այլն : Աւելի բարեխառն են Գանձակայ կողմանքը, ուր Հայոց Թագաւորաց ձմերոցքն էին, յՈւտի և այլն :

## ՅՕԴՈՒԱԾ Ա.

### Հայաստանի լեռներն.

11. Հայաստանի երկրին կերպարանքը : — Հայաստան լեռնոտ երկիր է, անոր համար ալ ամէն կողմը միակերպ նոյն արգաւանդութիւնը չունի. բայց կան գաւառներ ալ որ դուրան ըլլալով բարեբեր են, ինչպէս կը վկայեն հին և նոր հեղինակք, մանաւանդ հովիտներուն ու ձորերուն բարեբերութեանը վրայ, որոնք Հայաստանի մէջ խիստ շատ են. անոր համար շատ գաւառներ կան որոնց անունը հովիտ, ձոր, և փոր բառերով ածանցած են. ինչպէս Աղիովիտ, Արգաստովիտ, Արճիշահովիտ, Բալահովիտ, Առուենից ձոր, Ագնուաց ձոր, Բերձոր, Կողբոփոր, Ծոբոփոր, Գարտիգացփոր և այլն : — Լերանց մէջ գլխաւորներն են Արարատեանք կամ Մասիս, Տօրոս, Կովկաս, Կորդուաց լերինք, և այլ շատ առանձին լերինք, զոր վերջը կը յիշենք :

## Մասիս.

12. Մասիս լերան անուանը վրայ գիտելիք: — Մասիս լեռն որ մեր աշխարհին պարծանքը մըն է, առած է իր անունը մեր Ամասիա նահապետին անունէն[1]: Ոմանք չգիտնալով զայս՝ սխալմամբ կ՚ըսեն թէ Սեմայ Մոսոք թոռան անունէն եկած է: Օտարազգիք Մասիս լեռան աւելի Այրարատեան լեառն կ՚ըսեն, իսկ մեր մատենագիրներուն մէջ խիստ քիչ կը գործածուի Մասիս լեռան տեղ՝ Արարատ անունը: Ուստի սխալ է մեկնիչներէն ու աշխարհագիրներէն ոմանց ըսածը, որ Մասիս լեռան բուն անունը Արարատ կը համարին և այս լեռան անունովն աշխարհն ալ Արարատ ըսուած. վասն զի Արարատ անունը՝ բուն գաւառին անունն էր, որ եօթը չրջակայ գաւառներուն հետ միանալով Հայաստանի տասնըհինգ նահանգներէն մէկն եղաւ: Եւ որովհետև այս նահանգը Հայոց թագաւորանիստ տեղն էր, զոր Խորենացին կալուած արքայի կ՚անուանէ, անոր համար Հայոց աշխարհը՝ օտար մատենագիրներէն, մանաւանդ սուրբ գրքին մէջ, Արարատ ըսուեցաւ: Ուստի ուր որ սուրբ գրքին եբրայեցերէնին մէջ լերինք Արարատայ կ՚ըսէ, Արարատ անունը պէտք չէ իբրև լեռան անուն

1 Խոր. Պատմ. Հայոց. Ա. 12:

իմանալ, Հապա աշխարհէն, թերեւ թէ ըսէր չերիեք Այրարատեան աշխարհին այսինքն Հայոց։

13. Ազգային և օտար մատենագիրներէն Մասիս լեռան տրուած այլեայլ անունները։ — Օտարազգի մատենագիրները մանաւանդ Ասորիք և Արաբացիք Մասիս լեռը Կորդուաց լեռան և իրենց լեզուով Քարտու և կամ Ջուտի անուանեցին, Մասիս լեռը Կորդուաց լեռներուն հետ միացած սեպելնուն համար, և անոնց վրայ կարծեցին նաև Նոյի տապանը. Սուրբն Հերոնիմոս՝ Մասիս լեռան Տօրոս անունը կու տայ, որ կը ձգուի կ'ըսէ ինչուան Արարատ նահանգին մէջ, Ստրաբոնին ստորագրութեանը հետևելով, և Նոյի տապանը չէ թէ Հայաստանի լեռան վրայ կեցաւ կ'ըսէ, հապա Տօրոսի բարձր լեռներուն։ Իսկ մեր ազգային մատենագիրներէն, Բուզանդ Սարարադ լեառն կամ Սարարադեան լեառն կ'անուանէ Մասիսը. որ կ'երևի թէ առջի բերան Սար Արարատեան ըսուելով այսինքն լեառն Արարատեան, ետքերը համառօտելով ու փոխուելով այսպէս ըսուեր է։ Իսկ Խորենացին Մասիսը տեղ տեղ Լեառն մեծ կ'անուանէ, և ազատ մակդիրը կու տայ անոր, որ կը յիշուի Գողթան գաւառին երգոցն մէջ յորում կը յիշատակէր Արտաշէս Բին իր Արտաւազդ որդւոյն անիծանելը. Նոյնպէս, երբոր կը պատմէ Մարաց գերութիւնը, զոր մեծն Տիգրան բնակեցուց Մասիս լեռան շրջակայ գաւառները։

14. Մասիս լեռան ազատ մակդիրը տըրուելուն պատճառը։ — Որովհետև Մարաց գերիներուն մէջ կային նաև Աժդահակայ տունէն, նոյնպէս և իրեն Անուշ կինն և ուրիշ ազատ ու ազնուական մարդիկ, անոր համար Գողթան գաւառին երգիչներն անոնց բնակութեան տեղը Ազատ անուանեցին, իբրև ազնուական մարդկանց բնակարան, անկէց Մասիս լերին ալ տըրուեցաւ այս անունը։

15. Մասիս լեռան դիրքը։ — Մասիս լեռը մեր Արարատեան նահանգին մէջ կ'իյնայ. և ատոր ապացոյց է Մասեաց ոտն ըսուած գաւառն որ Արարատ նահանգին մէջն է։ Արտաքին պատմիչներէն ոմանք սխալմամբ Փռիւգիայի մէջ կը դնեն Մասիսը, ոմանք Միջագետաց մէջ, ինչպէս Ստրաբոն և Պլինիոս, հոն ալ Մասիոս անունով լեռ մը ըլլալուն համար։ Աֆրիկանոս կը դնէ Պարթևաց մէջ. սուրբն Եպիփան՝ Հայոց ու Կորդուաց մէջ. վասն զի կ'ըսէ թէ Ջրհեղեղէն ետև Նոյի տապանը կեցաւ Արարադայ լեռներուն վրայ որ կ'իյնայ Հայոց ու Կորդուաց մէջ, Լուբառ լերին վրայ։ Կրնայ կարծուիլ թէ Լուբառ ըսածը մեր լեռան բառէն ելած ըլլայ, և թէ հին ատեն Մասիսին պարզ լեռան անունն կու տային, Հայաստանի ամենէն անուանի լեռն ըլլալուն համար։

16. Մասիս լեռը զօտևոր է թէ անզօտի։ — Այս խնդրոյս մէջ պէտք է զանա֊

զանել Մասիսը յԱրարատայ. Մասիս լեռը անզօտի լեռ է և երկու կը բաժնուի Մեծ և փոքր Մասիս, և տնկուած կեցած է ընդարձակ դաշտի մը մէջ։ Իսկ Արարատեան լերինք են զօտևոր լեռներ և շատ տեղ յոգնակի կը գործածուին։ Այս պատճառաւ է որ օտարազգի մատենագիրները, և մեր մատենագիրներն ալ, Նոյի տապանը Հայաստանի այլևայլ տեղերն իջած կ'ըսեն։ Ոմանք Արարատեան նահանգին մէջ կը դնեն, որ է ստոյգը. այլք՝ ինչպէս Բուզանդ, Տմորոքերանի Ապահունեաց գաւառին մէջ, և ուրիշ տեղ՝ Կորդուաց գաւառին մէջ. Թովմաս Արծրունի կը դնէ Վասպուրականի մէջ և այլն։ — Այս լերին վրայօք բնական գիտելիքն տես Նոր Հայաստանի մէջ։

## Տօրոս.

17. Տօրոս լերին անուանը վրայ գիտելիք։ — Այս լերին անուանը պատճառն որոշ չգիտցուիր. կրնայինք ըսել թէ մեր Տարօն գաւառին անունէն եկած ըլլայ, որուն մօտի լեռներն Տօրոս կ'անուանին մեր մատենագիրներէն. բայց աւելի հաւանական է թէ Արամայեցւոց Դուր բառէն եկած ըլլայ, որ լեռ կը նշանակէ. և 'ի Յունաց Դաւրուս փոխուեր է, որ Յոյն ըսել է, և մեր լեզուին մէջ անկէ ետքը սովորութիւն եղեր է տառադարձութեամբ Տաւրոս կամ Տօրոս ըսե-

լը, և նաև Ցուլ ըսել թարգմանելով[1]: Հռովմայեցիք Հայաստանի տիրելէն ետև, ուզելով երկրին անունով դրամ կոխել այլաբանելով, դրամին վրայ փորեցին ցուլ մը վրան մարդ նստած ու երկու եղջիւրներէն բըռնած. և անոր չորս կողմը լատիններէն գրած Հայաստան նուաճեալ, Տօրոս լեռը ամբողջ Հայաստանի նշանակութեամբ առնլով, Հայաստանի գլխաւոր լեռներէն մէկն ըլլալուն համար:

18. Տօրոս լերին դիրքը: — Տօրոս լեռը հին ատենէն 'ի վեր մեծ գօտևոր լեռներէն մէկն ճանչցուած էր: Ստրաբոն կ'ըսէ թէ կ'անցնի ամբողջ Հայաստանէն, Պարթևաց ու Մարաց երկիրներէն, և հարաւային կողմով Հայաստան 'ի Միջագետաց կը զատէ. նոյնը կը հաստատէ նաև Խորենացին: Այս լերին մասն կը դնէ Ստրաբոն նաև Կորդուաց լեռները, Նպատ լեռը, և Մծբնայ մօտիկ եղած Միջագետքի Մասիօս լեռը, և այս Տօրոս լերին հիւսիսային կողմէն կը բխի կ'ըսէ Եփրատ գետն ու հարաւային կողմէն Տիգրիսը: Մեր մատենագիրները Տօրոս լեռն աւելի Հայաստանի հա-

1 Ասանկ Բուզանդ՝ իր Պատմութեան գրոցը մէջ. սրբոյն Դանիէլի վրայ խօսելուն ատենը (Գ. 14). "Եւ յաճախ (գնայր) յակն աղբերն'ի ներքոյ սարաբարձր մեհենատեղւոյն Հերակլայ, որ կայ դէմ յանդիման լերինն մեծի որում Ցուլն անուանեալ կարդան": Մերթ աւնոյն լերան Ցլուգլուխ անունը կու տայ:

րաւային կողմերը կը գնեն, այսինքն Միջագետաց, Աղձնեաց, Մոկաց աշխարհներուն, և մասնաւոր կերպով Տարօնին մէջ իբրև իրեն սեպհական տեղը: Իսկ Ստրաբոն և Պրակոպիոս Հայաստանի հիւսիսային արևմտեան կողմէն ալ կը ձգեն ինչուան գրեթէ Կապադովկիա:

### Կովկաս.

19. Կովկաս լերին դիրքը և անուանը վրայ գիտելիք: — Կովկաս կամ Կաւկաս լերին անունն եղած է Հայկին Կովկաս եղբօրն անունէն, որ այն կողմերը գնաց բընակեցաւ: Այս լեռը բուն Հայաստանի լեռներուն կարգը չէ, բայց այն սահմաններուն մէջ կ'իյնայ, ուր մեր աշխարհակալ թագաւորներն իրենց տէրութիւնը ընդարձակեցին, այսինքն Սև ու Կասպից ծովերուն մէջ Վրաց ու Աղուանից հիւսիսային կողմը, որով Վիրք և Աղուանք Սարմատիայէն կը բաժնուին: Կովկասու լեռներուն մէկ մասը կը սեպուին նաև Գուգարք ու Տայք նահանգներուն հիւսիսային կողմի լեռները՝ Ստորին Կովկաս ըսուելով:

### Կորդուաց լերինք.

20. Կորդուաց լեռներուն դիրքն և անուանը վրայ գիտելիք:—Կորդուաց լեռներուն անունն եղած է Կորդուք գաւառին ա-

նունէն, որ Կորճէից նահանգին մէջ կ'իյնայ։ Կորդուաց լերանց վրայ և անոր շըրջակայ քաղքըներն որովհետև Քիւրտ կոչուած ազգը կը բնակի, ոմանք կարծեցին թէ այս ազգին անուամբը կոչուած ըլլան նաև լերինքը։ Բայց այս կարծիքն անտեղի է. որովհետև Քուրդք՝ այնչափ հին ազգ չեն, ու Մարաց և Հայոց խառնուրդք. և իրենց անուանակոչութեանը պատճառը՝ նոյն լերանց քով բնակելնէն եղած է։ Յոյն մատենագիրք, որոնց ժամանակ դեռ Քըրդաց ազգը չէր ձևացած, իրենց գրոց մէջ Կորդուք կ'անուանեն այս լերինքը։ — Կորդուաց լեռները զօտևոր են, որոց Արարացիք Ճուտի կ'ըսեն, և կը ձգուին Կորճէից նահանգէն ինչուան Մոկաց նահանգը, և Տիգրիս գետոյն քովէն ինչուան Միջագետաց մէջ։

Պարխար լերինք.

ԻԱ. Պարխար լեռներուն դիրքը։ — Պարխար լեռները՝ որոնց մէկ մասին օտարազգիք Բարիատրեան կ'ըսեն, կ'իյնան մեծին Հայոց և բուն անոր Տայք նահանգին արևմտեան հիւսիսային կողմը, և կ'երթան ինչուան փոքր Հայք, և սահմանակից են Կողքիսին։

## Մոսքիքեան լերինք.

22. **Մոսքիքեան լեռներուն դիրքը։** — Մոսքիքեան լեռներն որ Մոսքական ալ կ'ըսուին, ելած են Յաբեթին եօթներորդ որդւոյն Մոսոքին անունէն՝ և կ'իյնան Կապադովկիոյ, Պոնտոսի, Կողքիսի, Վրաց ու Հայոց մէջ, և Հայաստանը անոնցմէ կը բաժնեն։

23. **Հայաստանի մէջ յիշուած ուրիշ լեռները կամ լեռնակները։**—Հայաստանի մէջ'ի նախնեաց յիշեալ լեռներն ասոնք են, այբուբենի կարգով դնելով։ — Ականեաց լեռ, Վասպուրականի Աղբակ գաւառին մէջ։

Աղոռ լեռ Տուրուբերանի Աղիովիտ գաւառին մէջ։

Անտիտաւրոս որ Տաւրոս լերին մէկ գօտին է. կ'իյնայ փոքր Ասիային մէջ, ու առաջին և երկրորդ Հայոց մէջէն անցնելով կ'երթայ ինչուան Ծոփաց աշխարհքը։

Առիւծ լեռ, բարձր Հայոց Եկեղեաց գաւառին մէջ։

Աւոս լեռ, լատին հնչմամբ Ապոս կամ Ապա, ուսկից կը բղխին, կ'ըսէ Ստրաբոն, Երասխ ու Եփրատ գետերը. այսպէս կը դնեն նաև ուրիշ օտարազգի հին աշխարհագիրները. Ստրաբոն այս լեռը Տօրոսին մէկ մասը կը դնէ, և իր խօսքերէն կ'երևի թէ գօտևոր է, և Պինկէօլ լեռները սեպելու է։

Արագած լեռ, որ Հայկայ որդւոյն Արամանեակին անունովը կոչուած է. և կ'իյնայ Այրարատայ Արագածոտն գաւառին մէջ։

Արայի լեռ, Երևանայ մօտերն է, ասոր քով Արայ նահապետն բանակած և ընկած ըլլալուն՝ իր անունն առաւ. դիմացի լեռն ալ Շամիրամայ անուամբը կը կոչուի։

Բարդող լեռ, որ վերջերը ըսուեցաւ Թուկայրոս լեռ. կ'իյնայ Արարատայ Ճակատք գաւառին մէջ Երասխայ հարաւային կողմը։

Գառրուայ լեռ, Ագուլիս և Որդվատ քաղաքներուն մօտ Սիւնեաց մէջ։

Գեղամայ կամ Գեղայ լեռ, որ Սիւնեաց Գեղարքունիք գաւառին մէջ կ'իյնայ, անոր ծովակին արևմտեան կողմը. Գեղամ նահապետին անունովը կոչուած է։

Գրգուռ լեռ, որ կ'իյնայ Բաղէշի մօտ Տուրուբերան նահանգին մէջ, և անունն առած է Պարսից Վախտանկ զօրավարին Գուէգուռ որդւոյն անունէն։ Այս լեռը Հայաստանի բարձր լեռներէն մէկը կարծուելուն համար, տեղացիք յարմարցուցած են այս աւանդութիւնս որ ինչուան հիմա մնացած է, իբրև թէ Նոյի տապանը նախ այս լեռն եկեր է ըսելով «Գրգուռ առ զիս». լեռն ալ պատասխան տուեր է. «Գնա 'ի Մասիս, զի բարձր է քան զիս»։ Այս լեռան քովն է նաև Նեբրովթայ լեռը, Նեբրովթայ անունէն, որ մեր Հայկին ձեռքով ինկաւ։

Դիզափայտու լեռ, որ կ'իյնայ Արցախու մէջ, և անունն առած է այս դիպուածէս։

Անգամ մը Հոնաց զօրքը վազելով այն կող-
մի քրիստոնէից վրայ, որ այս լեռն ապա-
ւիններ էին, սպաննեցին զերենք, ու ետքն
իրենց մարմինը մէկտեղ դիզելով փայտով
այրեցին, անկէ լեռան անունը Դիզափայտ
ըսուեցաւ։

Ընձաքիսար լեռ, որ կ'ըսուի նաև Կապու-
տողն, կ'իյնայ Վանայ ծովուն հարաւային
կողմը, և ունի երկաթի հանք։ Ընձաքիսար
լեռը՝ Աղձնեաց և Ռշտունեաց երկիրները
իրարմէ կը բաժնէ։ Երբոր Ռշտունեաց իշ-
խանը Մանաճիհր՝ սրբոյն Յակոբայ Մծբնա-
ցւոյ սարկաւագունքն անիրաւութեամբ ըս-
պաննել հրամայեց, սուրբ հայրապետն այս
լերին վրայ ելլելով անիծեց բոլոր Ռշտու-
նեաց երկիրը։

Խոյթ լեռ, որ Աղձնեաց նահանգը Տարօ-
նէն կը բաժնէ ու Սասունքի սահմանն է։

Ծաղկէ կամ Ծաղկաց կամ Ծաղկոց լեռ,
կ'իյնայ Այրարատայ Ծաղկոտն գաւառին
մէջ. և այսպէս կոչուած է վրան շատ ծաղիկ
գտնուելուն համար։ Կը կոչուի նաև Ծմա-
կային, Ջրաբուխ ու զուարճալի լեռ ըլլա-
լուն համար. կ'ըսուի և Ոսկի, Ոսկեանց քա-
հանաներուն անունովն որ հոն բնակեցան։
Մէկ ճիւղն ալ Շահապիվան, ուր շատ որ-
սոյ կենդանիներ կային։ Այս լեռնէն կը
բխի Եփրատ գետին մէկ մասը, որ Մու-
րատ կ'ըսուի հիմայ։

Ծիրանեաց լեռ, Այրարատայ Բասեան
գաւառին մէջ։

Կանգարք կամ Մրխե լեռ, Հայոց ու Վրաց սահմանակից, Գուգարք նահանգին մէջ։

Կանգուառ լեռներ, Վասպուրականի Անձևացեաց գաւառին մէջ։

Կողարջք լեռներ, որոց օտարազգիք կ'ըսեն Քոտանեան, Իւնիւքեան, կամ Հենիւքեան լեռներ, և Հայաստանը Վրաստանէն կը զատեն։ Գուգարաց և Տայոց մէջն կ'իյնան այս լերինքը, և իրենցմէ կը ելնէ Կուր գետոյն մէկ բերանը։

Կոգովիտ լեռ, Այրարատայ Կոգովիտ գաւառին մէջ։

Կոհեր, Ձորփորդ Հայոց մէջ։

Մաղարրայ լեռ, Հին Ջուղայէն մօտ, Մասիս լերին արևելեան կողմը։

Մանիաս լեռ, որ Տօրոս լերին մէկ մասն է, կ'իյնայ Հայոց Միջագետաց մէջ, Մըծբին քաղաքին հիւսիսային արևմտեան գին։

Մարաք լեռ, կ'իյնայ Աղձնեաց Սասուն գաւառը, և Խոյթ լերին մէկ մասն է։

Մեծրեոյ լեռ, Տայոց մէջ։

Մշկունեաց լեռ, որոյ վրայ կային շատ մշկապտուղ վայրի այծեր, տեղը Մոկաց և Ռշտունեաց մէջ կ'երևայ։

Նպատ լեռ, Այրարատայ Բագրևանդ գաւառին մէջ։ Ցոյն աշխարհագիրք Նպատայ անուամբ կ'իմանան Հայաստանի մէջ Տօրոսի մասը։

Պախր կամ Պարխ, բարձր Հայոց Մանանաղի գաւառին մէջ։

Սիմ լեռ, որ կոչուած է Սեմ նահապետին անունովն որ նախ հոն բնակեցաւ. կ'իյնայ Աղձնեաց Սասուն գաւառին մէջ Խոյթ լերին մօտ: Այս Սիմ լեռը՝ գաւառին անունովն ետքերը Սասուն ըսուեցաւ:

Սուկաւ կամ Սուկաւէտ լեռ, կ'իյնայ Այրարատայ Բագրեւանդ գաւառը, և Սուքիասեանց անունովը կոչուած է՝ սուրբ վկայից հոս բնակելուն համար: Առջի անունն էր Ջրաբաշխ:

Սպերայ լեռ, կ'իյնայ բարձր Հայոց մէջ:

Վարագ լեռ, Այրարատայ Բագրեւանդ գաւառին մէջ:

Վարագ լեռ, անուանի վանքերով, կ'իյնայ Վասպուրականի Տոսպ գաւառը:

Քարքէ կամ Քարքէոյ լեռ, կ'իյնայ Տուրուբերանի Տարօն գաւառին մէջ Տաւրոս լերին մօտիկ, և այլն:

24. Հին ատեն յիշուած Հրաբուխք և Սասանութիւնք: — Այսչափ լերանց մէջ հին ատեն շատ հրաբուղխներ եղած ըլլալը՝ հիմայ յայտնի է իրենց թողուցած նշաններովը. բայց նախնիք միայն անոնց քանի մը մեծ սասանութիւնները յիշելով կ'իմացընեն անոնց բնութիւնն ալ: Ամենէն անուանին է Մասիս լեռը, որ շատ հին ատեն բռնկած և պատռած ըլլայ կը վկայէ նաև Խորենացին. այս լեռը 1840ին ալ հրաբխի զօրութեամբ շարժեցաւ, և մասամբ մը փլաւ և շատ շէնքեր փլուց թէ իր ստորոտքն եղածներն և թէ Այրարատայ

մէջ։ — Անուանի է նախնեաց յիշատակներուն մէջ Սիւնեաց Վայոց–ձոր գաւառին շարժումը 40 օր'ի սկիզբն Ը դարու։ — Դըւնայ շարժն և կործանումը Թ դարուն վերջն. — Զօրրորդ Հայոց շարժը Ժ դարուն վերջերը. — Գանձակայ շարժը և կործանումը 1140ին. — Երզնկայ շարժերն և կործանմունքը շատ անգամ'. — Ներքովթայ լերին քանդիլն և շարժիլը 1441ին. — Սիւնեաց մէջ Տաթևոյ կողմերու մեծ շարժը. — Երևանայ շարժը 1679ին, և այլն։

## ԳՕԴՈՒԱԾ Բ.

### Գետք Հայաստանի.

25. Հայաստանի ջրոց առատութիւնը։ — Հայաստան աշխարհը ջրաբղխ երկիրներէն մէկն է, և մէջէն շատ մեծ գետեր ու աղբիւրներ կըբղխին, ու աւելի շատ գետեր և գետակներ կ'անցնին. ասոնց ամենուն գլխաւորներն են դրախտի չորս գետերն, որ են Եփրատ, Տիգրիս, Երասխ, ու Ճորոխ, որոնց վրայ խօսինք նախ, և ետքը ուրիշ գետերուն վրայ։

## Եփրատ.

26. Եփրատ գետոյն բխման տեղը: — Եփրատ կամ Եփրատէս գետը՝ զոր սուրբ գիրքը մեծ գետ կ'անուանեն, երկու զատ տեղերէ կը բխի, մէկը Կարնոյ լեռներէն որ կ'իյնայ Հայաստանի հիւսիսային կողմը բարձր Հայոց մէջ. մէկալը Ծաղկէոյ կամ Ծաղկաց լեռնէն, որ կ'իյնայ Այրարատ նահանգին մէջ: Այս երկրորդ ճիւղը, այսինքն Ծաղկէոյ լեռնէն բխածը, կ'ըսուի նաև Արսածանի, Արածանի կամ Արծնի գետին անուանովը որոյ քովէն կ'անցնի: Մէկալ ճիւղն ալ երբոր ասոր հետ կը միանայ, կ'ըսուի երբեմն Արածանի, որուն օտարազգիք կ'ըսեն Արսանիա. և երկու ճիւղը մէկտեղ կ'անցնին Բաբելոնի մէջէն, ու կ'երթան կը թափին Պարսից ծոցը:

27. Եփրատայ յորդութեանը վրայ գիտելիք: — Կ'ըսէ Ստրաբոն թէ ամառուան ատեն Հայաստանի լեռներուն ձիւները հալելով, Եփրատ գետը շատ կը բարձրանայ ու Ասորեստանի կողմերը կը կոխէ. այս վնասէն ազատելու համար, Եգիպտոսի Նեղոս գետոյն համար շինած ջրամբարներուն պէս հոն ալ շինած են, ուր կը թողուն Եփրատ գետն երբոր չափէն աւելի բարձրանայ, որպէս զի երկրին վնաս մը չընէ: Դարձեալ կ'ըսէ, թէ Պարսիկք Ա-

սորեստանի կողմերը կամօք սահանքներ շինեցին Եփրատ գետոյն վրայ, որպէս զի թշնամիք չկարենան անկէց նաւարկել ։ Այն սահանքները մեծն Աղեքսանդր որչափ կըրցաւ քակել տուաւ ու շտկեցուց ։

28 . Եփրատայ վրայ շինուած կամուրջները ։ — Եփրատ գետոյն վրայ շատ կամուրջներ շինուած էին հին ատեն . որոց մէջ երևելի են երկըթէ շղթաներով շինած մեծին Աղեքսանդրի կամուրջը, և հռովմայեցւոց Պարթևաց դէմ երթալու ատեն շինած կամուրջը ։

## Տիգրիս .

29 . Տիգրիս գետոյն աղբիւրը և անունը ։ — Տիգրիս գետոյն անունը հաւանականաբար եկած է մեր տէգ բառէն, սաստիկ երագընթացութեանը համար ։ Այս գետը կ՚ըսուի նաև Դկղաթ, որոյ մէկ ճիւղը կը բխի Կորդուաց լեռներէն Շատախ գաւառին մօտ, որ կ՚ըսուէր հին ատեն Ջերմաձոր գաւառ, Մոկաց նահանգին մէջ ։ Ուրիշ ճիւղ մ՚ալ, որ կը բխի չորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին մէջ Ոլորայ գեղէն ։ Ստրաբոն և Պլինիոս կ՚ըսեն թէ Տիգրիս գետը վազելու ատեն Տաւրոսի լեռներուն հանդիպելով կ՚անցնի լեռան տակէն, ու նորէն դուրս կ՚ելլէ 25 մղոն հեռու, Կորդուաց լեռներուն մօտ ։ Այս երկրորդ անգամ բխելը՝

կորդուաց լեռներէն ելած աղբիւրը իմանալու է։

30. Տիգրիսին յորդութիւնը։ — Տիգրիս գետը թէպէտ Եփրատայ պէս շատ չբարձրանար, սակայն անվտանգ նաւարկութիւն կ՚ըլլայ։ Պարսիկք ինչպէս Եփրատայ վրայ, ասանկ ալ Տիգրիսին սահանքներ շինեցին թշնամիները արգիլելու համար. և մեծն Աղեքսանդր քակել տուաւ։ Բայց Պարսիկք վախնալով ծովի կողմի թշնամիներէն, նորէն շինեցին այն սահանքները. որ ինչուան Յուլիանոսի ատեն կային, ու ետքը բոլորովին քակուեցան, որով համարձակ նաւարկելի գետ մը եղաւ։

Երասխ.

31. Երասխ գետոյն անունը։ — Երասխ գետը կոչեցաւ մեր Արմայիս նահապետին թոռանը Արաստին անունովը[1]։ Օտարազգի մատենագիրները Արաքսիս կամ Արաս կը կոչեն, իսկ Արաբացիք կրճատելով կ՚ըսեն Ռաս կամ Ռօս։ Մովսէս մարգարէն այս գետոյն Գեհոն անուն կու տայ, որ երբայեցերէն սաստիկ յորձանքներով վազող ըսել է, անշուշտ ընթացիցը բռնութեան և սահանացը համար։ Գիտնալու է, որ հին ատեն Երասխ անունով ուրիշ գետեր ալ

1 Խոր. Ա. 12։

կը կոչուին Պարսից և Պարթևաց երկիրնե֊րուն մէջ, ինչպէս է Ոքսոսն ալ։

31. Երասխ գետոյն աղբիւրը։ — Երասխ գետը կը բղխի Հայաստանի բարձր Հայոց Մանանաղի գաւառին կողմերը՝ Կարնոյ լեռներէն, և կ՚երթայ Այրարատ նահանգը, ու Արցախ և Ուտի նահանգներուն քովէն, և Սիւնեաց, Վասպուրականի և Փայտակա֊րան նահանգներուն մէջէն անցնելով, Կուր գետոյն հետ կը խառնուի, և երկուքը մէկ֊տեղ կը թափին Կասպից ծովը, բոլոր իր ընթացքը Հայաստանի մէջ կատարելով։

32. Երասխ գետոյն ընթացքն ու կա֊մուրջներն։ — Երասխ գետը զառ ՚ի վայր երկրի վրայ երթալով տեղ տեղ սաստիկ շու֊տով կը վազէ. ու սահանքներ կամ քարա֊վազներ կ՚ընէ, անուանի է Սիւնեաց երկ֊րին մէջ Երասխայ քարավազը։ Հին ատեն այս գետոյն վրայ այլևայլ կամուրջներ շի֊նուած էին, ինչպէս Վաղարշապատու քով Մեծամօրի կամուրջը, Արտաշատայ քով Ցափերն կամուրջը։ Այս գետոյն վրայ մեծն Աղեքսանդր ալ քարաշէն կամուրջ մը շինեց, բայց ջուրերուն սաստկութենէն կործանե֊ցաւ, նոյնպէս հռովմայեցւոց շինածներն ալ, անոր համար կամուրջի չի համբերող անուանեցին Երասխը[1]։ Հիմայ անուանի է Ջօպան քէօփրիւսիւ ըսուած եօթն կա֊

1 Ինչպէս Վիրգիլիոս իր Էնէականին մէջ. Գիրք Ը։

մարով քարաշէն կամուրջը, որ կ'իյնայ Բա-
սենոյ Ցուստինիանուպոլիս կամ Հասան-
ղալա քաղքին մօտ, ուր չէին կրնար կա-
մուրջ շինել սրընթացութեանը համար, և
կ'ըսեն թէ հովիւ մը հնարքը գտաւ շինելու,
և անոր համար այդ անունն առած է։

33. Երասխայ վրայ շինուած քաղաքնե-
րը։ — Այս գետոյս վրայ շինուած էին ե-
րևելի քաղաքներ, ինչպէս են Վաղարշաւան,
Երուանդաշատ, Արտաշատ և Արմաւիր,
որ ամէնքն ալ կ'իյնան Այրարատայ մէջ։
Երասխայ քով շինուած էր նաև Վասպու-
րականի Նախճաւան քաղաքը։

### Ճորոխ.

34. Ճորոխ գետոյն անուան ծագումը։
— Ճորոխ կամ Ծորոխ անունը չյիշուիր
սուրբ գրոց և արտաքին մատենագիրներու
մէջ, և եկած է Ծոր ողխ բառերէն, ուղխո-
րէն ծորելուն կամ վազելուն ու սաստիկ
աճելուն համար, որուն Մովսէս մարգարէ
խորհրդածութեամբ դրաւ Փիսոն կամ Փի-
սոն անունը, որ եբրայեցերէն աճիլ, գե-
ղուլ ըսել է։ Արտաքին հեղինակք ասոր
Վոհ կամ Փասիս կ'ըսեն,

35. Ճորոխ գետոյն աղբիւրը։ — Ճորոխ
գետը կը բղխի Բարձր Հայոց Սպեր գաւա-
ռէն, ու անցնելով Խաղտեաց ու Կողքիսին
մէջէն՝ կը թափի Սեւ ծովը, Լազիկիա գա-
ւառին մէջ։ Ստրաբոն և Պլինիոս կ'աւան-

դեն թէ վրան 120 կանգուն կայ, և մէջը նաւարկութիւն ալ կ՚ըլլայ: Ճորոխին մօտկան ոսկւոյ և արծըթի շատ հանքեր, և գետոյն աւազն ալ մանր ոսկւոյ հատիկներով խառն է, մանաւանդ Կողքիսի մէջ, ուսկից ելած է Արգոնաւորդաց ոսկի գեղման առասպելեալ պատմութիւնը:

### Դրուխտրին գետերէն զատ Հայաստանի ուրիշ գետերը:

36. Կուր գետոյն վրայ գիտելիք: — Կուր գետոյն անունը մեծին Կիւրոսի անունովը կոչուած է, վասն զի յոյնք և հռովմայեցիք Կուր գետոյն Կիւրոս կ՚ըսեն. իր աղբիւրն է Տայոց Կող գաւառին մէջ, որ հիմայ Քէօլէ կ՚ըսուի. անկէ երթալով 'ի Գուգարս՝ մեծին Հայոց հիւսիսային կողմէն կ՚անցնի, և կը բաժնէ Հայաստանը Վրաստանէն ու Աղուանքէն. ու Վրաստանի Կորի և Տփղիս քաղքըններուն քովէն անցնելէն ետև, դէպ 'ի հարաւ և արևելք կ՚իջնայ, ու Երասխայ հետ միանալով՝ կը թափի Կասպից ծովը:

37. Հայաստանի մէջ յիշուած ուրիշ մանր գետերը: — Հայաստանի մէջ յիշուած ուրիշ մանր գետերն են

Ազատ գետ, որ Երասխայ մէկ վտակն է, կ՚անցնի Այրարատ նահանգին հիւսիսային կողմէն, և կը բխի Գեղամայ լեռներէն. կ՚ըսուի նաև Գառնոյ ջուր, Գառնի քաղքին քովէն անցնելուն համար, և կը թափի Ե-

րասխ գետոյն մէջ։ Ազատ գետոյն ջուրն աւելի առողջարար է քան թէ Քասաղ և Հրազդան գետերուն ջուրերը ։

Ախուրեան գետ, նոյնպէս Երասխայ մէկ վտակն է, Այրարատ նահանգին Շիրակ գաւառին մէջ. կը բխի Գառնոյ (Արփա-կէօլ) լճէն, և կ'անցնի Անի քաղքին և Բագարան ամրոցին մէջէն, և կը միանայ Երասխայ հետ Երուանդաշատ քաղքին առջև ։

Աղստևոյ գետ, Ուտի նահանգին ծայրը, կը թափի Կուր գետը ։

Ապսար գետ, որ կը բխի ըստ նախնեաց՝ Պարխար լեռներէն, և կը թափի Սև ծովը, և կը բաժնէ մեծ Հայքը փոքր Հայքէն ։

Առեստ գետ, Վասպուրականի մէջ, կը թափի Բզնունեաց ծովը ։

Գայլ գետ, որուն Յոյները կ'ըսեն Լիքոս, կ'ելլէ 'ի փոքր Հայոց, և կ'անցնի Բարձր Հայոց Եկեղեաց ու Դարանաղեաց գաւառները, և կը միանայ Եփրատայ հետ ։ Կայ ուրիշ Գայլ գետ մ'ալ Չորրորդ Հայոց մէջ ։

Ջաւգետ, որ Կորճէից երկրէն կ'անցնի. ասիկայ է Քիւրտիստանի Ջապ գետը՝ որուն կը խառնուի Ջերպիս, որ հիմա կ'ըսուի մեծ Ջապ, և ասոնք 'ի Տիգրիս կը թափին ։

Թուխ գետ, որ կ'ելլէ Աղձնեաց նահանգին մէջէն, և կը թափի Բզնունեաց ծովը, և կոչուած է Թուղխ գեղին անունովը ։

Լոփնաս գետ, Ուտի նահանգին մէջ ։

Կարմիր գետ, որ Երասխայ մէկ վտակն

է, կ'իյնայ Վասպուրականի Ճուաշ գաւառին մէջ։

Հրազդան գետ, որ կ'ելլէ Գեղամայ ծովէն, և կ'անցնի Այրարատ նահանգին մէջ Երևան քաղաքին քովէն, և կը միանայ Երասխ գետոյն հետ։

Մամռուշեղ գետ, Տայք նահանգին մէջ։

Մանանաղի գետ, Եփրատայ մէկ վտակն է, Բարձր Հայոց մէջ։

Մարմետ գետ, կը թափի Բզնունեաց ծովը։

Մեծամօր գետ, Այրարատայ Արագածոտն գաւառին մէջ, և կը բխի Կուաշ գեղին մօտ. Ջուրը սև, ծանր և անախորժ է, և ընդունելով իր մէջը Քասաղ գետը, կը թափի Երասխ գետոյն մէջ։

Մուրց գետ, Երասխայ մէկ վտակը, Այրարատայ Բասեան գաւառին մէջ։

Որոտան գետ, կ'անցնի Սիւնեաց Բաղք գաւառին մէջէն, և կը թափի յԵրասխ։

Ուահ գետ, Այրարատայ Արագածոտն գաւառին մէջ Վաղարշապատի մօտերը, և կ'երթայ կը միանայ Ախուրեան գետոյն հետ։

Քասաղ գետ, Երասխայ մէկ վտակը Վաղարշապատի մօտ, որ կը բխի Արագած լեռնէն, և կ'ըսուի նաև կարբւոյ ջուր։

## ՅՕԴՈՒԱԾ Գ.

### Լճերու կամ Ծովակներու վրայ:

38. Լճերու վրայ ընդհանուր դիտելիք: — Մեր նախնեաց մէջ սովորութիւն է լճերուն ծովակ անունը տալ, և աւելի մեծերուն՝ ծով անունը. ինչպէս Բզնունեաց ծով, Գեղամայ ծով, Կապուտան ծով, որ Հայաստանի ամենէն մեծ լճերն են. մանր լճեր կամ ծովակներ ալ շատ կան:

39. Բզնունեաց ծովը կոչեցաւ մեր Բազ նահապետին անունովը[1] որ առաջ կ'ըսուէր Աղի ծով, Ջուրն աղի ըլլալուն համար: Իսկ Բուզանդ կ'անուանէ ծով Ռշտունեաց, Ռըշտունիք գաւառին անունովը որ այս ծովուն քով կ'իյնայ: Վերջի մատենագիրները կ'ըսեն աւելի ծով Վասպուրականի, Վասպուրական նահանգին անունովը որոյ մէջն է Ռշտունի գաւառը. կ'ըսուի նաև ծով Տոսպայ, Տոսբ գաւառին անունովը: Այս ծովը կ'ըսուի հիմա Վանայ կամ Աղթամարայ ծով, ուսկից կ'ելլէ տառեխ կոչուած պզտիկ ձուկը, և մէջը կան չորս կղզի. Աղթամար, Առտէր, Կտուց, Լիմ: Այս ծովուն մօտ եղաւ Հայկայ Բելին հետ ըրած պատերազմը, ու յաղթութիւնը:

1 Խորենացի Ա. 12:

40. Գեղամայ ծով: — Այս լիճը մեր Գեղամ նահապետին անունովը կոչեցաւ Գեղամայ ծով, որ կ'ըսուի նաև Գեղարքունի լիճ կամ ծով, և կ'իյնայ Սիւնեաց Գեղաքունի գաւառը: Գեղամայ ծովուն մէջն է Սեւան կղզին. որոյ անունովը կ'ըսուի հիմա Սեւանայ լիճ, և ջուրն անոյշ է:

41. Կապուտան ծով: — Այս լիճը որ կ'ըսուի ծով Կապուտան կամ Կապուտակ, մէկ կողմէն կ'իյնայ Կորճայք նահանգին մէջ, մէկալ կողմէն Պարսկահայոց, իսկ ուրիշ կողմերը՝ Ատրպատականի մէջ, և չորս դին լեռներով պատած է, որոնցմէ այլևայլ մանր գետեր կ'ընդունի: Այս ծովակին Ստրաբոն կ'ըսէ Մատիանեք, որ կապոյտ ըսել է. Արաբացիք ծով Թելայ կը կոչեն այս լիճը՝ մէջի Թելա կղզւոյն անունովը, ուր Հուլաւուն Թաթարներուն խանը ամուր բերդ շինեց, իր գանձերը պահելու համար, և հիմա աւերակ է: Մաղաքիա աբեղայ այս լճին ծով աղի կ'ըսէ, ջուրը աղի ըլլալուն համար. և հիմա կը կոչուի ծով Ուրմեայ և ծով Դավրիժու:

42. Հայաստանի մէջ յիշուած ուրիշ ծովեր: — Ծով Գայլատոյ կամ Գայլատուոյ Այրարատայ մէջ, մէջէն կ'ելլէ Պալըգ-չայ կոչուած գետը:

Ծով Կարնոյ, Կարին քաղքին մօտ, անոր հիւսիսային կողմը, որ կ'ըսուի նաև Ծամք կամ Մօր Կարնոյ, ուր շատ ձկներ ու Թռչուններ կ'ըլլան:

Պաղակացիս ծովակ, կամ ռամկօրէն փաղար, մէջի փալաթ կղզւոյն անունովը, և կ'իյնայ Տայոց և Այրարատայ մօտերը:

Ծովակ հիւսիսոյ, Այրարատ նահանգին հիւսիսային կողմերը, որ հիմա կ'ըսուի փառավան, ուսկից կը բխի վտակ մը Կուր գետին:

Ծովակ Ցըմբեայ, Վասպուրականի մէջ, որուն Սորաբոն կ'ըսէ Որբիև:

Տզրկածով, Գուզարք կամ Ուտի նահանգին մէջ:

Այղեւոյ ծովակ, Արղն քաղքին քով, և այլն:

43. Հայաստանի մէջ յիշուած Մօրք և Ճահիճք:—Մեր նախնիք մօր ըսելով կ'իմանան ճահիճ, այսինքն տղմուտ և եղեգնուտ տեղեր, ուր շատ վայրի կենդանիներ կը գտնուին: Ասոնց մէջ անուանի է Մեծամօր կամ Մեծ մօր ըսուածը, որ կ'ըսուի նաև ծովակ Մեծամօրի, և կ'իյնայ Այրարատ նահանգին մէջ, Արտաշատ քաղքին ու Երասխ գետոյն մօտ, որուն հետ նաև հաղորդակցութիւն ալ ունի վտակի մը ձեռքով, որ նոյնպէս Մեծամօր կ'ըսուի: Կը յիշուին նաև Տարօնոյ և Շիրակայ մօրերը, և այլն:

## ՅՕԴՈՒԱԾ Դ.

### Հայաստանի բերքերուն վրայ.

44. Հայաստանի բարեբերութիւնը: — Թէպէտ և ընդհանուր Հայաստանի բարեբերութեանը վրայ յիշատակութիւն մը չկայ հին ատեն, բայց մասնաւոր նահանգներ ու գաւառներն խիստ բարեբեր կը վկայուին, ինչպէս է Այրարատ նահանգը ամբողջ, և մանաւանդ անոր Վանանդ և Շիրակ գաւառները. Գուգարք նահանգը, Ռշտունեաց երկիրը, Կարնոյ գաւառը, Տարօնոյ երկիրը, Հաշտեանք գաւառը, և այլն:

45. Հայաստանի մէջ յանուանէ յիշուած բերքերը: — Կը յիշուին 'ի հնուց՝ ցորեն, հաճար, գարի, վուշ, բամբակ, թուզ, սերկևիլ, նուռ, պխտակ, շագանակ, նուշ, վարունգ, գղթոր, գազպէ [1], մեղր, ձի-

[1] Գազպէն մեղրի պէս նիւթ մի է, շատերը կը կարծեն թէ մանանայի պէս գիշեր ատեն երկընքէն կ'իջնայ. բայց որովհետև ամէն տեղ ու ամէն բուսոց տերևներուն վրայ չըլլար՝ քննելով իմացան բնաբանք որ նոյն տունկերէ վազած նիւթն է, և ըստ ոմանց մանր մանր որդուկներ են, որ գիշերուան օդոյն հետ թաղադրուելով, կը ձևանայ. վասն զի գազ, կաղնի ու մափո-փոխ ըստուած տունկերուն վրայ կ'իջնայ: Գազը փշոտ պզտի

թենի, խաչնգեղ, յասմիկ, մուրտ, տօսախ, կինամոմոն՝ որուն օտարազգիք կ'ըսեն ամոմում, և լօշտակ ըսուած բոյսը՝ որոյ արմատը մարդու ձև ունի, անոր համար մարդատակ ալ կ'ըսուի, և կը գործածուի դեղի մէջ։ Անուանի է Հայաստանի գինին, մանաւանդ Գողթն գաւառինը, ու Այրարատ և Ուտի նահանգացը։ Անուանի է նաև Հայաստանի ծիրանը, ուսկից Եւրոպա մտած է, և անոր համար արմենիագա կամ արմէնիենոյ կը կոչուի իրենցմէ։ Կ'ելլեն Հայաստանէն նաև տեսակ տեսակ խնկեր, ինչպէս են քարախունկ և պըտղախունկ ըսուածները։

46 . Հայաստանի մէջ յիշուած ընտանի կենդանիները։ — Կը յիշուին 'ի հնուց ամէն տեսակ որսոյ վայրի կենդանիներ որ կը կոչուին երէ, մանաւանդ բարձր Հայոց, Չորրորդ Հայոց, Այրարատ ու Սիւնեաց նահանգներուն մէջ. և յանուանէ կը յիշուին եղջերու, եղն, վարազ, վայրի այծ՝ որոյ մէկ տեսակն է մշկապորտ այծեամն ըսուածը, որ կը գտնուէր Մշկունիք ըսուած

Թուփ մ'է, ուսկից ելած կը կարծուի Գազպէ անունը։ Գազպին մայր ծառոյն մէկ տեսակն է, իսկ մասուրտակը տեսակ մը խոտ է։ Գազպէն յունիսի ու յուլիսի մէջ միայն կու գայ Կարնոյ կողմէն ինչուան Մուշի ու Սասունի կողմերը, գոյնն է ձերմակ, հոտը անուշ մեղրի նման, Թանձրութիւնն ալ սովորաբար մեղրի պէս կ'ըլլայ, զոր կը ժողվեն ու այլևայլ տեղ տանելով կը ծախեն։

լերին վրայ . ցիւ՝ այս ինքն վայրի էշ, հասարակ էշ, ջորի : Կը գտնուէին նաև ամենայն տեսակ ընտանի կենդանիներ, ինչպէս ոչխար, այծ, կով, եզն և այլն : Խիստ անուանի է Հայաստանի ձին թէ գեղեցկութեան և թէ ուժեղութեան կողմանէ . աստ մէկ տեսակն է նժոյգ[1] ըսուածը, զոր թագաւորները և իշխանները կը գործածէին, և աւելի յաղթանդամ ու գեղեցիկ է, և երագութեամբ կը վազէ : Կ՚ըսէ Ստրաբոն թէ Հայք ամէն տարի 20,000 ձի կու տային Պարսից թագաւորին իբրև տուրք : — Պիտանի կենդանեաց և բերոց կարգը դնելու է նաև Որդան կարմիր ըսուած մանր միջատը, որոյ գոյնովը ծիրանի կը ներկեն . աստ Տաճկերները կ՚ըսեն Ջիչէք, աղջի բերան ծաղիկ կարծուելուն համար, որովհետև ծառի տերևներուն վրայ կպած կը գտնուի :

47 . Հայաստանի մէջ յիշուած գազաններն ու թռչունները : — Գազաններու ցեղէն կը յիշուին առիւծ, ինձ, վագր, անալութ, ընձուղտ, գայլ, բորենի, և այլն : Իսկ

1 Նժոյգ ձիոյն անունը՝ որուն Մարք և Պարսք Նեզէյճ կ՚ըսեն և Յոյնք Նիսէա, ըստ Հերոդոտոսի, Ստրաբոնի և Պլինիոսի ծագած է ընդարձակ խոտաւէտ դաշտի մը անունէն, որ կ՚իյնար Մարաց երկիրը՝ և կ՚ըսուէր Նիսէա յունաց հնչմունքով, որ շատ յարմար էր կ՚ըսեն ձիեր արածելու : Այս տեսակ ձիերուն Տաճկերները Քէհէյլան կ՚ըսեն, և Հայաստանի մէջ Խնուսի կողմերը շատ կը գտնուի :

թռչնոց ցեղէն ագռաւ, կաքաւ, սագ, բադ, փոր կամ կարապ, և ուրիշ տեսակ տեսակ թռչուններ. մանաւանդ Այրարատայ, Բարձր Հայոց ու Զորրորդ Հայոց մէջ. իսկ ձկներու ցեղէն անուանի են տառեխ ձուկը և կարմրախայտը ։

48. Հայաստանի մէջ յիշուած հանքերը ։ —Հայաստանի գետինը շատ տեսակ հանքեր ունի, յորոց շատը հիմա անգործ մնացած են ։ Իսկ հին ատեն յանուանէ կը յիշուին Աղահանքեր, որ հիմայ ալ շատ կան. և ասոր ապացոյց է Բարձր Հայոց Դարանաղի, Մանանաղի ըսուած գաւառները, և Տուրուբերանի Աղիովիտ գաւառը ։ Բաց յ՚աղէն կը յիշուին նաև պաղլեղ, նաւթ, կուպր, կաւ հայկեան՝ որ կը գործածուի թիւրակէսի մէջ, և գոյնն է կարմրագոյն. ասոր օտար ազգք մեր ազգին անունը կու տան ։ Կը գտնուի Հայաստանի մէջ նաև երկաթ, կապար, պղինձ, զառիկ, արծաթ՝ որ կ՚ելլէր Կապան ըսուած տեղէն Եփրատայ մօտ, և Բարձր Հայոց Սպեր գաւառէն. և ոսկի՝ որ կ՚ելլէր Այրարատ նահանգին ու Աղձնեաց Արզն կամ Արղն գաւառին մէջէն ։

49. Հայաստանի մէջ յիշուած գոհարեղէն քարեր ։ — Ղազար Փարպեցի առանց անունը տալու կը յիշէ Այրարատ նահանգին մէջ շատ տեսակ պատուական քարեր՝ որոնցմով թագաւորներուն պսակները և թագերը կը զարդարէին ։ Իսկ օտարազգի

մատենագիրներ կը յիշեն այս քարերս, բիւրեղ կամ սառնատեսակ, եղընգնաքար կամ սարդիոն, ամեթիստոս, շափիւղ, զմրուխտ, ակատ, սև սաթ. քուղին՝ չեչաքարի նման, բայց անոր ազնիւ տեսակը, որ մարմարիոնէ արձանները շտկելու ու գոհարները փայլեցընելու կը գործածուէր. Արմէնիում որ Հայաստանէն ելլելուն համար այսպէս կոչուած է, գոյնն է կանաչ երկնագոյն, ու ներկի կը գործածուէր: Կ'երևի թէ Հայաստանէն կ'ելլէր նաև մարմարիոն, իսկ հասարակ կիճեր և գոյնզգոյն հրաբղխի քարեր խիստ շատ են:

Կը պատմէ Գիոդոր Սիկիլիացի թէ Շամիրամ Ասորեստանեայց թագուհին Հայաստանի լեռներէն կտրել տուաւ 130 ոտնաչափ երկայն ու 25 ոտնաչափ լայն և թանձր քար մը, և տարաւ Եփրատայ մէջէն Բաբելոն քաղաքը, և հոն հրապարակին մէջը կանգնել տուաւ իբրև կոթող մը, որ աշխարհքիս եօթն հրաշալեաց կարգը անցաւ:

# ԳԼՈՒԽ Գ.

## *Հայաստանի բազմամարդութեանը ու նորէն բնակչաց նուազելուն վրայ.*

50. *Հայաստանի բազմամարդութեանը վրայ գիտելիք: — Հայաստան հին ատեն բազմամարդ աշխարհքներէն մէկն էր. և մարդիկ ինչուան Փաղէկ նահապետին ատեն՝ հոս նախ շատցան, ու ետքը ասկէց ելան ցրուեցան աշխարհքիս չորս կողմը: Երբոր Հայկ Բաբելոնի աշտարակին կործանմանէն ետև իր մարդիկներովը՝ որ 300 հոգիէն աւելի էին, Հայաստան դարձաւ, ետևէ եղաւ հոն տեղի բնակչաց թիւը շատցնելու. վասն զի բազմաց Սենաարայ դաշտը երթալուն համար՝ Հայաստանի բնակչաց թիւը մեծապէս պակսած էր: Իր յաջորդներուն մէջ առաջին կը համարուի Արամ նահապետը, որ հեռու երկիրներէն Հայաստան մարդիկ բերելով, շատ անբնակ երկիրներ բնակչօք լեցուց: Նոյնպէս շատ բազմամարդացուցին զՀայաստան մեծն Տիգրան, Վաղարշակ Ա, Տիգրան Բ, և Արտաշէս Բ:*

51. *Հայաստան եղած գաղթականները: — Հայաստանի ժողովրդեան բազմանալուն մէկ պատճառն ալ այլևայլ ժամանակ հոն եկած գաղթականներն են. ինչպէս մեր Սուր*

նահապետին ժամանակ Քանանացւոց երկրէն Քանանիդասին առաջնորդութեամբը, Հրաչեայի ժամանակ Հրէից երկրէն Շամբաթայ առաջնորդութեամբը, մեծն Տիգրանայ ժամանակ Մարաց երկրէն՝ որ կոչեցան Վիշապազունք, Արշակ առաջնոյն ժամանակ Բուլղարներէն՝ իրենց Վղընդուր Վունդին առաջնորդութեամբը, Տիգրան Բին ժամանակ Կապադովկացւոց երկրէն և Հրէաստանէն, Արտաշէս Բի ատեն Ալանաց երկրէն, Տրդատայ ժամանակ Ճենաց երկրէն՝ Մամգուն իշխանին առաջնորդութեամբը, և այլն: Այս ամէն գաղթականներէն այլեայլ նախարարական ցեղեր ելան, որոց մէջ գլխաւորներն են Բագրատունեացը և Մամիկոնեանցը:

52. Այս գաղթականներէն զատ Հայաստանի մէջ բնակող օտար ազգերը: — Բաց 'ի այս գաղթականներէն կը բնակէին հին ատեն 'ի Հայաստան, նաև հիմայ ալ կը բնակին օտար ազգեր, որ են Քիւրտ, Թիւրքմէն, Քիլտանի և Տաճիկ, և ուրիշ մէկ քանի ցեղեր: Այս ամէն օտարազգի գաղթականներով յայտնի է որ Հայաստանի բնակչաց թիւը շատցաւ: Սակայն ետքերը՝ եկածէն տասնպատիկ աւելի պակսեցաւ:

53. Հայաստանի բազմամարդ քաղաքները: — Թէպէտ և մեր գրոց մէջ որոշ յիշուած չեն թէ որ քաղաքները աւելի բազմամարդ էին, բայց քանի մը պատմական պարագաներէ բազմամարդ քաղաքներու

կարգը կը սեպուին հետեւեալք, Վաղարշապատ, Տիգրանակերտ, Վան, Զարեհաւան, Արտաշատ, Զարիշատ, Դուին, Երուանդաշատ, Անի, Արծն, Գանձակ, Մանազկերտ, Եզնկա, և այլն։

54. Հայաստանի բնակչաց քիչնալուն պատճառները։ — Հայաստանի տկարութեան ատեն գաղթականով և գերութեամբ շատ մարդ դուրս ելեր է, ինչպէս այլևայլ ատեն 'ի Պարսկաստան, երբեմն գերութեամբ՝ Արտաշիր Սասանեանին, Շապուհ Բ և Յազկերտ Բ Պարսից թագաւորներուն ատեն, որք Հայաստան տակնուվրայ ընելէն զատ, անթիւ գերիներ ալ տարին։ Իսկ գաղթելով գնացին Պարսից Խոսրով Բ թագաւորին ատեն եօթներորդ դարուն սկիզբը. և մանաւանդ Ա. Շահաբասայ ատեն 1600ին, որ շատ Հայեր Ասպահան տարաւ, ու Նոր Ջուղա ըսուած աւանը բնակեցուց։ Ետքէն Պարսկաստանէն անցան ոմանք Հնդկաստան և Պենկալա։ Նոյնպէս շատ հոգի գնացին գերութեամբ Ասորեստան, Խուժաստան, Սագաստան և Դամասկոս քաղաքը, տաճկաց ամիրապետներուն և ամիրաներուն ձեռքովը։

55. Յունաց երկիրը գնացած գաղթականները։ — Հինգերորդ դարուն ատեն մէկ քանի նախարարներ գաղթական գնացին Յունաց երկիրը. նոյնպէս նաև ութերորդ դարուն մէջ 12,000 հոգի, Արաբացւոց հարստահարութենէն ազատ մնալու

համար ։ Այն ատեն գնացին նաև գաղթականներ Բուլղարաց երկիրը, ուր մէկ քանի հոգի Հայոց ազգէն թագաւոր ալ նըստած են. նոյնպէս Կոստանդնուպոլսոյ մէջ ալ քանի մը հայազգի կայսր նստած են, ինչպէս են Լեւոն իմաստասէր, Լեւոն Խաւրացին, Զմշկիկ և այլն ։

56. Անի քաղքէն ելած գաղթականները ։ — Մետասաներորդ դարուն երբոր Անի քաղաքը Յունաց ձեռքը անցաւ, Բագրատունեաց թագաւորութիւնը վերջացաւ, և Ալփասլան Տուղրիլի յաջորդը վազեց Հայաստանի վրայ ու տակնուվրայ ըրաւ և առաւ Անի քաղաքը Յունաց ձեռքէն, այն ատենները շատ հոգի ելան Հայաստանէն ու Անի քաղքէն, և գնացին Վրաստան, Միջագետք, Կիլիկիա, Եգիպտոս, Յունաստան, Իտալիա, և աւելի Լեհաստանի կողմերը, ուր շատ ազատութիւններ ունեցան Լեհաց տէրութենէն ։

Դարձեալ, 1239ին երբոր Չարմաղան Թաթարաց խանը վերջին անգամ առաւ Անի քաղաքը, այն ատեն շատ հոգի Անիէն գնացին Ճուղայ կամ Ջուղա քաղաքը, ոմանք Վան, Աժտէրխան, և շատերը անցան Ղրիմ և բնակեցան հոն, մանաւանդ Ղրիմու Քէֆէ կամ Թէոդոսիա քաղքին մէջ ։

Երեք այլևայլ ատեն Հայք գաղթական գնացած են 'ի Լեհաստան. և բոլոր Լեհաստան գնացող գաղթականներուն թիւը

ոմանք 40,000 տուն կը դնեն, ուր հիմա ռուզիներին համեմատութեամբ քիչ մնացած են։

57. Ռուսիներանց տէրութիւնը վերցուելէն ետքը, և անկէ վերջը Հայաստանէն ելած գաղթականները։ — Ռուսիներանց տէրութիւնը վերցուելէն ետև շատ մարդիկ անցան Եւրոպայի կողմը, Գաղղիա, Հոլանտա և Իտալիայի այլևայլ քաղաքները, և Վենետիկ՝ ուր մեծատաններորդ դարուն մէջ ալ գաղթական եկած էր։ — Հայաստանի բնակչաց վերջին ցրումը եղաւ 1600ին ատեն, երբ շատ հոգի ելան գնացին Պարսկաստան, Վրաստան, Ռումէլի, Կոստանդնուպոլիս, Զմիւռնիա, Պուղտան, Լեհաստան, և այլն։ — Այսչափ գաղթականներէն ու հատուածներէն ետքն հիմայ կամ երկու միլիոն կամ՝ միլիոն ու կէսի չափ Հայաստանի մէջ դեռ հայ բնակիչ կը գտնուի։

58. Հայաստանի բնակչաց քիչնալուն գլխաւոր պատճառները։ — Առաջին և գլխաւոր պատճառն է Հայոց աստիս անդին գաղթական երթալը, ինչպէս որ վերը յիշեցինք։

Բ. Օտար ազգերէն կրած սաստիկ կոտորածներն ու գերութիւնները. ինչպէս Պարսիկներէն Արտաշրի, Բ Շապհոյ, Բ Յազկերտի, Տուղրիլեանց և Շահաբասայ ատենները, որք Հայաստանի մէջ չարաչար կոտորած ընելէն ետև, անթիւ բազմութիւն ալ գերելով Պարսկաստան անցուցին։

Արաբացիներէն կամ Տաճիկներէն՝ Բուղայի և Յուսփայ ոստիկաններուն առեն եղած գերութիւններն ու կոտորածները. Թաթարներէն՝ Չարմաղանի և Լէնկթիմուրին առեն եղածները, որ արիւնլուայ ըրաւ, ու գերեց գերփեց Հայաստանը։

Գ. Օտար ազգաց զՀայերը բռնադատելով իրենց հաւատքը դարձընելը, ինչպէս են Պարսիկք, Հագարացիք և Յոյնք. որով կամաց կամաց իրենց հայրենի լեզուն մոռնալով՝ հայութիւննին ալ կը մոռնային։

Դ. Օտար ազգերու հետ խառնուիլը, և անոնց լեզուն ու հաւատքը ընդունիլը. ինչպէս հին ատեն Փայտակարան նահանգին բնակիչները, ասանկ ալ հիմա Կորճայք, Պարսկահայք, Հեր, Զարևանդ, Աղձնիք, Տուրուբերան, Վասպուրական աշխարհներուն մէջի Հայոց մէկ մասը քիւրտ եղած են, ոմանք քիչ մը քրիստոնէական հաւատքի նշան պահելով. իսկ ուրիշները Քիւրտերուն պէս մահմէտական են, և անոնց պէս աւազակ։ Այս պատճառաւ յԵւրոպա քրիստոնէից երկրի մէջ գտնուողք՝ անոնց սովորութիւնը, լեզուն և ազգութիւնը առած խառնուած են. որով Լեհաստան, Դրանսիլվանիա և Իտալիա եկած Հայերէն՝ հիմա առջի բազմութեանը համեմատելով խիստ քիչ կը գտնուին։

## ԳԼՈՒԽ Դ.

*Հայաստանի աշխարհագրական բաժանումը.*

59. Արամ Նահապետին և Մօրիկ կայսեր ըրած բաժանմունքը։ — Արամ Նահապետը իր տէրութիւնը ինչուան Միջերկրական ծովն ու Սեւ ծովը ընդարձակելով, ու անբնակ տեղերը բնակչօք լեցընելով, նոր առած երկիրները Առաջին, Երկրորդ, Երրորդ ու Չորրորդ Հայք անուանեց, որք չորսը մէկտեղ անուանեցան փոքր Հայք. այս ինքն Կապադովկիայէն ինչուան Պոնտոսի տէրութիւնը, Կապադովկիան մէկտեղ առնլով անուանեց Առաջին Հայք. Պոնտոսէն ինչուան Մելիտինէի սահմանը՝ Երկրորդ Հայք. Մելիտինէէն ինչուան Ծոփաց երկիրը Երրորդ Հայք. Ծոփաց երկրէն ինչուան 'ի Նփրկերտ և Աղձնեաց աշխարհքը՝ անուանեց Չորրորդ Հայք. իսկ բուն տէրութեան ընդարձակ սահմանը անուանեցաւ Մեծ Հայք։

Մեծին Արամայ դրած բաժանմունքը փոխեց Մօրիկ Յունաց կայսրը՝ վեցերորդ դարուն մէջ. և Առաջին Հայքը կոչեց Երկրորդ Հայք, որոյ մէջն է Սեբաստիա մայրաքաղաքը։ Պոնտոսէն ինչուան Մելիտինէի սահմանը որ առաջ Երկրորդ Հայք կ'անուանէր, Մօրիկ անուանեց Երրորդ Հայք.

իսկ Մելիտինէէն ինչուան Ծոփաց երկիրը որ առաջ Երրորդ Հայք կ՚անուանէր՝ ինքը Առաջին Հայք անուանեց. և Պոնտոսը՝ որոյ մայրաքաղաքն է Տրապիզոն, Մեծ Հայոց մասն սեպեց. Չորրորդ ըսուած Հայքը, որոյ մայրաքաղաք է Նփրկերտ՝ անուանեց Յուստինեանոս նիստ. Տայոց կողմը՝ Խորագոյն Հայք, և Գուգին քաղաքին կողմը Ներքագոյն Հայք: Գիտնալու բան մըն է որ Յոյնք ետքերը որչափ որ Մեծ Հայքէն երկիր կ՚առնուին, ամէնքն ալ Չորրորդ Հայոց մասն կը սեպէին, որով նաև Բարձր Հայոց մէկ մասն ալ: — Անկէ առաջ չորրորդ դարուն վերջերը (387ին) Յունաց Արկադէոս կայսրը և Շապուհ Բ Պարսից թագաւորը Հայաստանը մէջերնին երկու մաս բաժներ էին. Մեծ Հայք՝ Պարսից մասն էր, որուն Յոյնք կ՚ըսէին Պարսկահայք. իսկ Փոքր Հայք Յունաց մասն ընկաւ, հանդերձ արևմտեան մասամբ Մեծ Հայոց:

60. Մեծ Հայոց այլևայլ նահանգները: — Մեծ Հայք տասնըհինգ նահանգ[1] կը բաժնուէր որ են Բարձր Հայք, Չորրորդ Հայք, Աղձնիք, Տուրուբերան, Մոկք, Կորճայք, Պարսկահայք, Վասպուրական, Սիւնիք, Արցախ, Փայտակարան, Ուտի, Գուգարք, Տայք և Այրարատ: Այս նահանգները բոլոր

[1] Խորենացին իր աշխարհագրութեանը մէջ նահանգ բառին տեղ փոքր աշխարհ կ՚ըսէ, և զանոնք այլևայլ գաւառներ կը բաժնէ:

բոլոր 190 գաւառ կը բաժնուին . իսկ Պլի-նիոս 120 կը դնէ , և մեր Զենոբ Գլակը 620 գաւառ , որ կ'երևի թէ սխալ մնացած է գը-րուածքին մէջ . վասն զի Աղուանից ու Վը-րաց երկիրները ու Փոքր Հայքն ալ մէկտեղ առնլով' դարձեալ 620 գաւառ շատ կ'ըլլայ ։

61 . Մեր ժամանակագրաց Հայաստանի այլևայլ մասերուն սովորականէն զատ տը-ւած անունները ։ — Ա . Միջնաշխարհ կամ Միջոց աշխարհի ըսելով կ'իմանան Այրա-րատ նահանգը ։

Բ . Վերնագաւառ կամ Վերին Հայք , Հայ-աստանի հիւսիսային կողմերը ։

Գ . Խորին Հայք , Վաղարշապատու կողմը ։ Իսկ Յոյները Խորագոյն Հայք ըսելով կ'իմա-նային Տայք նահանգին կողմերը ։

Դ . Ներքագոյն Հայք , Դուին քաղքին կողմերը ։

Ե . Ստորին Հայք , կ'երևի թէ Յոյներէն կոչուած է իրենց բաժնին հարաւային կող-մը ։

Զ . Միջերկրեայ , Պոնտոս ծովուն և Միջ-երկրականին մէջ եղած երկիրը , ուր է Փոքր Հայք , նաև Մեծին Հայոց արևմտեան մէկ մասը ։

Է . Միջագետք , Եփրատ ու Տիգրիս գե-տերուն մէջ ինկած Մեծին Հայոց մէկ մա-սը , այսինքն Չորրորդ Հայք և Աղձնիք ։

Ը . Դրուցյ աշխարհ , որ կ'իմացուէր Բագ-րատունեաց ատեն Մեծին Հայոց այն մասը որ մնացեր էր Հայոց ձեռքը Շիրակ գաւա-ռէն դուրս ։

Թ. Հռոմոց աշխարհ կամ երկիր. այսպէս կ'անուանէր Իկոնիոյ սուլդանը Փոքր Հայքն ու Մեծին Հայոց արևմտեան մասը՝ որ առաջ Հռոմոց, այս ինքն Յունաց, ձեռքն էր, և ինքը պատերազմով առաւ անոնց ձեռքէն. նոյնպէս նաև Կարին քաղաքը, որ ըսուեցաւ Արզրում, այս ինքն Հռոմներու երկիր: Հռոմոց աշխարհքին տեղ երբեմն պարզ Հռոմք ալ ըսուած կայ:

Ժ. Արևելք կամ արևելից աշխարհք կը կոչէին Մեծ Հայքը Ռուբինեաց ատեն Կիլիկիայի ու Փոքր Հայոց մէջ բնակող Հայերը. ինչպէս նաև Մեծին Հայոց մէջ բնակողները՝ Կիլիկիային մէջինները Արևմտեան կողմն կը կոչէին, որ յայտնի կ'երևի Շնորհալւոյն ընդհանրական Թղթոյն մէջ, ուր կ'ըսէ «Որք յարևելս'ի սեպհական աշխարհդ հայաստանեայց բնակեալք, և որ յարևմտեան կողմանն սահեալք նշդեհութեամբ»:

# ԳԼՈՒԽ Ե.

## Ա. Բարձր Հայք.

62. Բարձր Հայոց դիրքն ու սահմանը ։ — Այս նահանգին դիրքը Հայաստանի ամէն նահանգներէն աւելի բարձր ըլլալուն համար՝ անունն ալ Բարձր Հայք դրուած է, որ այնչափ չյիշուիր մեր վերջի մատենագիրներուն մէջ, և անոր տեղ Կարնոյ քաղքին և գաւառին անունովը շատ տեղ Կարին կ'անուանի կամ Կարնոյ աշխարհ ։ Իրեն արևելքէն սահմանն է Այրարատ նահանգը, արևմտքէն Եփրատ գետը և Փոքր Հայք, հիւսիսէն Տայոց աշխարհքը և Կողքիս, հարաւէն Տուրուբերան և Չորրորդ Հայք ։

63. Բարձր Հայոց լեռներն ու գետերը և բերքերը ։ — Բարձր Հայոց երկիրը ունի շատ լեռներ, ուսկից կը բխեն Եփրատ գետոյն մէկ ճիւղը, Երասխ գետը և Ճորոխ կամ Փասիս գետը ։ Բաց 'ի այս գետերէն Բարձր Հայոց չորս կողմէն կը բխին ուրիշ պզտի գետեր, աղբիւրներ. ուստի խիստ շատաջուր ըլլալուն համար երկիրն ալ շատ բարեբեր է, թէպէտ և ամէն կողմը հաւասար չէ ։ Ունի դաշտեր ալ, ինչպէս Կարնոյ և Երզնկայ դաշտերը, և այլն ։ Ունի շատ տեսակ վայրի կենդանիներ, թռչուններ ու ձկներ, դարձեալ աղի հանքեր ու

ջերմուկներ, և տեսակ տեսակ ծաղիկներ ու բոյսեր։

64. Բարձր Հայոց գաւառները։ — Բարձր Հայք ինն գաւառ կը բաժնուէր, որ են Դարանաղի, Արիւծ, Մնձուր, Եկեղիք, Մանանաղի, Դերջան, Սպեր, Շաղգոմք կամ Շաղագոմք և Կարին[1]։

## Ա. Դարանաղի.

65. Դարանաղի գաւառին վրայ գիտելիք։ — Այս գաւառը սահմանակից է Եկեղեաց գաւառին. երկիրը ծաղկաւէտ ու ջրարբի, և մէջը աղի հանքեր շատ ըլլալուն, անունն ալ դարան աղի ըսուած է, զոր Կաղանկատուացին կը կոչէ նաև Աղեաց գաւառ։ Աստ բնակիչները հին ատեն դիւթութեանց ու կախարդութեանց ետևէ շատ կ'ըլլային. և ուղղափառ հաւատքը ընդունեցան Գրիգոր Լուսաւորչի քարոզութեամբը ու մեծամեծ հրաշքներով։

66. Սեպուհ լերին վրայ գիտելիք։ — Այս լեռը Դարանաղի ու Եկեղեաց գաւառներուն մէջ կ'իյնայ, և կը կոչի նաև Մանեայ այրք, Մանէ կոյսը որ Հռիփսիմեանց ընկերներէն մէկն էր, այս լերին վրայ այրի

1 Այս աշխարհագրութեանս մէջ միայն այն գաւառներուն վրայ կը խօսինք, որոց վրայ մասնաւոր տեղեկութիւն մը կայ, և կամ որոց մէջ երևելի քաղաքներ կը գտնուին։

մը մէջ ճգնելուն համար, ուր ետքը սուրբն Գրիգոր Լուսաւորիչ ալ ատեն ատեն կու գար ճգնութիւն կ'ընէր: Այս լերին վրայ զանազան ուխտատեղիներ կային, որոց մէկն է Բարեհամ աղբիւրն, որոյ աղի ջուրը Գրիգոր Լուսաւորիչ հրաշքով անուշցուցեր էր. և անոր մօտ Դարակը, ուր հովիւները առանց ճանչնալու թաղեցին Գրիգոր Լուսաւորչի մարմինը: Այս լերին խոռոչներուն ու այրերուն մէջ իններորդ դարուն շատ խստակրօն ճգնաւորներ կային, հիմայ ալ կան քանի մը վանքեր, ինչպէս Աշագ վանքը[1]:

67. Դարանաղեաց գաւառին գլխաւոր տեղերը: — Դարանաղեաց գաւառին մէջ որ հիմայ կ'ըսուի Կամախ, կ'իյնայ Թորդան աւանը կամ գեղը՝ Եփրատայ արեւ-

1 Վարդան աշխարհագիրը կը պատմէ թէ Տրդատ թագաւորը Գրիգոր Լուսաւորիչը փնտռելու համար երբոր Սեպուհ լեռը գնաց, Գրիգոր Լուսաւորիչ շատ մարգարէական խօսքերէն ետեւ առաւ Տրդատայ Հաւհալունի ըսուած թուրը, ու խաչաձեւ օծելով օդոյն մէջ կախեց, ըսելով թէ արքական ազգին այսինքն Փռանկաց կամ Դաղձիացւոց ելլելուն ատեն այս նշանն ալ երկինքը պիտի երեւի: Եւ այս նշանը զգալի աչքով Յովհաննէս Եզնկացին կամ Պլուզ վարդապետը երեքտասաներորդ դարուն՝ լերին ծայրը տեսնելով, շինեց Լէրինք ամենայն ըսուած Լուսաւորչի շարականը: Այս բանս միայն Վարդան աշխարհագիրը կը պատմէ:

լեան կողմը ։ Հոս էր Ասորւոց Բարշամ կուռքին արձանը փղոսկրէ ու բիւրեղէ շինած և արծըթով պատած ։ Այս արձանը Միջագետքէն միջին Տիգրանը հոս բերած էր, զոր սուրբն Գրիգոր կործանեց ու մեհեանը եկեղեցի շինեց ։ Ատեն անցնելէն ետքը Սեպուհ լեռնէն հոս փոխադրեցաւ Գրիգոր Լուսաւորչի մարմինը Գառնուկ ճգնաւորին ձեռքովը ։ Այս գեղիս մէջ թաղուած են Գրիգոր Լուսաւորչայ որդիքն և թոռներն ։

68 . Անի բերդին վրայ դիտելիք ։ — Դարանաղի գաւառին մէջ կ'իյնայ Անի կամ Կամախ ըսուած անուանի ու ամուր բերդը, որոյ շինողը և շինութեան ժամանակը յայտնի չէ ։ Արտաշէս առաջինին ատենէն սկսեալ հոս կը պահուէր թագաւորական գանձը տեղւոյն ամրութեանը համար ։ Հոս կը թաղուէին արշակունի թագաւորները, անոր համար անունն ալ ըսուած է Կամախ որ կմախք բառէն ելած կ'երևնայ ։ Հոս կը պահուէին մեհենական պատմութիւնները . և հոս էր Արտաշէս առաջինին Յունաստանէն բերած Արամազդայ կամ Դիոսի ոսկեզօծ արձանը, զոր սուրբն Գրիգոր կործանեց, ու մեհեանն ալ եկեղեցի շինեց ։ Պարսից Շապուհ երկրորդին ատեն ուրացեալն Մերուժան այս բերդը մեր Նախարարներուն օգնութեամբը առնլով, կործանեց անոր պարիսպը, ու թալլեց մէջը դիզուած թագաւորական գան-

ձերը․ ու հանեց գերեզմաններէն Արշակունի թագաւորներուն ոսկորները․ միայն Սանատրուկ թագաւորին գերեզմանը չկրցաւ քակել իր ամուր ու հսկայաձև շինուածքին համար ։

## Բ․ Եկեղիք․

69․ Եկեղեաց գաւառին վրայ գիտելիք ։ — Եկեղեաց գաւառը որ վերջերը Եզնկայ ըսուեցաւ, փոքր Հայոց սահմանակից է, ու մէջէն կ'անցնին Եփրատ ու Գայլ գետերը ։ Այս գաւառը կ'ըսուի նաև Լուսաւորչի գաւառ, հօս Գրիգոր Լուսաւորիչը չարչարուելուն, կամ թէ այս գաւառին Թիլն աւանը իրեն կալուածն ըլլալուն համար ։ Պլինիոս այս գաւառը կը կոչէ Անահտական երկիր, Անահտայ տաճարներով լեցուն ըլլալուն համար, մանաւանդ Երիզա քաղքին փառաւոր տաճարին համար, ուր էր Անահտայ ոսկիէ արձանը ։

70․ Եկեղեաց գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը ։ — Այս գաւառիս մէջ անուանի է Երիզա կամ Երէզ ըսուած աւանը, որ կոչեցաւ նաև Յուստինիանուպոլիս, և ետքերը ըսուեցաւ Եզնկա, որ Գայլ գետոյն քով շինուած է ։ Հօս էր Անահտայ անուանի մեհեանը, զոր միջին Տիգրան շինել տուաւ, և իր հօրը Արտաշէսին Յունաստանէն բերած Անահտայ ոսկիէ արձանը

հոս փոխադրել տուաւ, որ առաջ Անի բեր-դին մէջ դրուած էր: Այս մեհեանը սուրբն Գրիգոր Լուսաւորիչ հրաշքով կործանեց ու անոր տեղը եկեղեցիներ շինեց: Այս քաղաքը որ հին ատեն շատ ծաղկած էր կռապաշտութեամբ, նոյնպէս քրիստոնէու-թեան ատեն ալ շատ ծաղկեցաւ, եկեղեցի-ներով և վանքերով, որոց մէջ անուանի է Տիրաշէն, Տիրան Թագաւորէն շինուած: — Երիզա քաղաքը շատ անգամ երկրաշար-ժով աւրուեցաւ, որ տասնևվեց անգամէն աւելի կը յիշուին 'ի պատմչաց. 1060ին ա-տենները առին Պարսիկք Երիզա քաղա-քը, և մէջը շատ ջարդ ընելէն ետև՝ քաղ-քին մէկ մասին ալ կրակ տուին:

71. Եկեղեաց գաւառին մէջ ուրիշ նշա-նաւոր տեղուանք: — Թիլն աւանն ալ Ե-րիզային պէս մեհենագարդ էր, որոյ մէջ միջին Տիգրան փառաւոր տաճար մը շինե-լով, Յունաստանէն բերած Աթենասայ ար-ձանը կանգնեց: Այս արձանն ալ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ կործանեց, ու տա-ճարին մէջի գանձն ալ եկեղեցւոյ սպասնե-րու գործածեց: Այս քաղքիս եկեղեցինե-րուն մէջ անուանի էր կաթողիկէն, զոր Մեծն Ներսէս շինեց, ուր և թաղեցաւ. բայց երբոր Տաճկըները աւըրշտըկեցին այս եկեղեցին, սրբոյն Ներսեսի մարմինն ալ անյայտ եղաւ, և 1275ին նորէն յայտնե-ցաւ. և Եզնկայի Սարգիս եպիսկոպոսը Տաճկըներէն վախնալով, Եզնկա փոխա-

դրեց մարմինը ։ Թիլն աւանին մէջ թաղուած էր սուրբն Արիստակէս ալ ։ — Չըրմէս աւան, որ Տիրան առաջնոյն ատեն արքայանիստ եղաւ ։ — Խախ գեղ, ուր Պապ սպաննեց Թունով զՄեծն Ներսէս ։ — Վասակերտ, զոր շինեց Արշակ Թագաւորին Վասակ սպարապետը ։ — Սեղեմկուտ ձոր, ուր նահատակեցաւ և թաղեցաւ Սուրէն հայ նախարարին Թէոդորոս որդին իր հօրը ձեռքովը, քրիստոսական հաւատքը ընդունելուն համար․ ատոր գերեզմանին վըրայ սուրբն Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցի ու վանք մը շինեց ։ — Այս գաւառիս մէջ անուանի էին նաև Կորեր աւանը և Պարբենից դղեակը, և այլն ։

## Դ․ Մանանաղի․

72․ Մանանաղի գաւառին դիրքը և նշանաւոր տեղուանքը ։ — Մանանաղի սահմանակից է Եկեղեաց ու Կարնոյ գաւառներուն․ ու անունը առած է մէջէն ազնիւ աղ ելլելուն համար ։ — Այս գաւառիս մէջ է անմատչելի քարայր մը, ուր Արշակ Գին գանձը յափշտակող երեք նախարարները փախան ամրացան ։ Գլխաւոր տեղերը կը յիշուին Սմբատաբերդ, Սմբատ Թագաւորին շինածը, զոր 1050ին ատեններն առին Պարսիկք, ու մէջը ապաւինած մարդիկը թրէ անցուցին ։ — Շիրենի բերդաքաղաք, Ջերմայ գիւղաքաղաք, Բագմաղբիւր կամ Խաչ

տուան, Թուղայլ տուան, որոյ բնակիչները կ'ըսուէին Թուղայլեցիք, և Ժ դարուն մէջ Թոնդրակեցւոց աղանդը ընդունեցան։

## Դ. Դերջան.

73. Դերջան գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։ — Դերջան գաւառը կ'իյնայ Եկեղեաց գաւառին արևելեան կողմը, և մէջը անուանի է Բագառինչ կամ Բագայառիճ գեղը, ուր կանգնեց միջին Տիգրան Արտաշէս Աին Յունաստանէն բերած Հեփեստոսի արձանը մեհենի մը մէջ, և դիմացն ալ կրակի բագին մը շինեց։ Այս մեհեանը Ագաթանգեղոս Միհրական մեհեան կ'անուանէ, Պարսից Միհր աստուծոյն անունովը, որ է արև և կրակ։

## Ե. Սպեր.

74. Սպեր գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։ — Սպեր գաւառը որոյ մէջ ազնիւ ու առատ ոսկւոյ հանք կար, սահմանակից է Խաղտիք նահանգին։ Այս գաւառը Արշակունեաց ատեն Բագրատունեաց ցեղին սեպհական երկիրն էր, և մէջը անուանի էր Սպեր քաղաքը որ Ճորոխ գետոյն վրայ շինուած է։ — Սմբատաւան բերդը, զոր շինեց քաջն Սմբատ Բիւրատեան Արտաշէս երկրորդին սպարապետը։ — Բայբերդ կամ Բաբերդ ամուր բերդաքաղա-

քը Ճորոխ գետոյն վրայ շինած, որոյ մօտ է Վաճառաշէն աւանը և վանքը. այս քաղաքը Խաղտեաց նահանգին գլխաւոր քաղաքը կը սեպուէր ետքերը, որ Մեծին Հայոց հնգետասան նահանգներուն մէջ չէ։

## Զ. Կարին.

75. Կարնոյ գաւառին վրայ գիտելիք։ — Կարնոյ գաւառը խիստ բարձր երկիր է և բարեբեր, ունի ընդարձակ դաշտ մը ու լիճ մը որ Ծովակ Կարնոյ կ'ըսուի, որոյ մէջ շատ ձկներ կը գտնուին։ Կարնոյ լեռներէն կը բխի Եփրատ գետոյն մէկ ճիւղը։

76. Կարնոյ գաւառին մայրաքաղաքը։ — Այս գաւառիս մէջ երևելի է Կարին քաղաքը, զոր Յունաց փոքր Թէոդոս կայսրը շինել տուաւ հինգերորդ դարուն սկիզբը իր Անատոլիս զօրավարին ձեռքովը, և իր անունովը կոչեցաւ Թէոդոսուպոլիս։ Դիրքն է դաշտին մէջ լերին ստորոտը, ուսկից շատ աղբիւրներ կը բխին ու հանքային ջուրեր, ուր Անատոլիս զօրավարը ջերմուկներ շինել տուաւ[1]։ Այս քաղաքը Թէոդոս ամուր պարիսպներով պատելէն ետև, պարսպին չորս դին խրամներ բացաւ, քաղաքը թշնամիներէն անառիկ ընելու համար, և ը-

1 Մեր Վարդան աշխարհագիրը կը զրուցէ թէ Մովսէս Խորենացի ու Դաւիթ Անյաղթ Անատոլիս զօրավարէն վերակացու գրուած էին քաղքին շինութեանը ատեն, որ շատ հաւանական չերևար։

րաւ իրեն զօրանիստ քաղաք, Թշնամիներուն ձեռքէն Հայաստանը պաշտպանելու ։ Այս բերդաքաղաքը Անաստաս և Յուստինիանոս կայսերք ալ շատ ամրացուցին. վերջը 650ին ատենները Տաճկըներուն ձեռքը անցնելով կոչեցին Արզիրում, այսինքն Հոռոմներու երկիր ։ — Թէպէտև Յոյները ատեն ատեն առին Տաճկըներուն ձեռքէն այս քաղաքը, ու պարիսպն ալ կործանեցաւ Թշնամեաց յարձակմունքներէն, բայց նորէն Տաճկաց ձեռքը անցաւ ու պարիսպն ալ նորոգեցաւ ։

77. Կարնոյ գաւառին ուրիշ երևելի տեղերը ։ — Արծն աւանը, որ շատ վաճառաշահ քաղաք էր, որոյ մէջ 800 եկեղեցի կար կ՚ըսեն ։ Այս քաղաքը մետասաներորդ դարուն՝ Տուղրիլ սուլթանին ատեն Թուրքերն ու Պարսիկները առին, ու մէջը հարիւր յիսուն հազար հոգի ջարդելով, քաղաքն ալ կործանեցին որ պարիսպ չունէր. և Կեդրենոս յոյն մատենագիրը կ՚ըսէ Թէ մէջի բնակիչները իրենց քաջութեանը վրայ վստահացած, կամաւ պարսպով չէին ամրցուցած ։

Կարնոյ գաւառին մէջ կ՚իյնան նաև Լաստիվերտ գեղը Արծն քաղաքին մօտ, ուսկից էր Արիստակէս Լաստիվերտցի պատմիչը ։ — Մարագացւոց գեղը, ուսկից էր Խադ եպիսկոպոսը մեծին Ներսեսի փոխանորդը ։ — Արծաթի գեղ, Հնձուց գեղ, Խաղտոյ առիճ բերդը, և այլն ։

## ԳԼՈՒԽ Զ.

### Բ. Չորրորդ Հայք.

78. Չորրորդ Հայոց վրայ գիտելիք: — Այս նահանգը մեր մատենագրաց մէջ Ծոփք կամ Ծոփաց աշխարհ կը կոչի. երբոր Փոքր Ասիային մէջ Հայոց ձեռքը եղած երկիրները առաջին, երկրորդ, երրորդ Հայք բաժանեցան, այս Ծոփք նահանգն ալ Չորրորդ Հայք ըսուեցաւ:

Այս նահանգը կ'իյնայ Բարձր Հայոց հարաւային դին, և իրեն արևմտեան կողմէն կ'անցնի Եփրատ գետը՝ որ Մեծ Հայքը Փոքր Հայքէն կը զատէ: Մէջէն կ'անցնի Արածանի գետը՝ որ Ծաղկէոյ լեռնէն կը բղխի, նոյնպէս ասկէ կը բղխի Տիգրիս գետը, որով կ'ըլլայ Չորրորդ Հայք Միջագետաց գլուխը: — Իններորդ դարուն սկիզբը Թէոփիլոս կայսրը առեց ու անապատ դարձուց այս նահանգը: Իսկ Քրիստոսի 995 թուականին սաստիկ երկրաշարժէ բոլորովին աւերակ դարձաւ, ու ինչպէս կը պատմէ Ասողիկ, կործանեցան իրեն Հաշտեանք, Խորձեան, Ծոփք, Բալու և Պաղնատուն գաւառներուն մէջ շատ տեղեր: — Չորրորդ Հայոց մէջ բաց 'ի ուրիշ բերքերէն կը յիշուին 'ի հնուց որսոյ կենդանիներ, ձկներ, թռչուններ, առիւծ. և 'ի հանքաց՝ բիւրեղ:

79 . Չորրորդ Հայոց գաւառներն ։ — Չորրորդ Հայք կը բաժնուի ութ գաւառ , որ են Խորձեան , Հաշտեանք , Պաղնատուն , Բալահովիտ , Ծոփք , Հանձիթ , Գորէք և Դէգիք :

## Ա . Խորձեան .

80 . Խորձեան գաւառին վրայ գիտելիք ։ — Այս գաւառը լեռնոտ անտառային ու բերդերով ամրցուցած գաւառ մըն է Եփրատ գետոյն մօտ , որ վերջերը Կերի բռնեցաւ համանուն քաղաքին անունովը ։ — Կը յիշուին մէջը նաև Մորմրանս գեղը և Արքախ բերդը . սոոր անունով ալ հիմայ գատ վիճակ մը կայ ։

## Բ . Հաշտեանք .

81 . Հաշտեանք գաւառին վրայ գիտելիք ։ — Հաշտեանք գաւառը սահմանակից է Տարոնոյ . ունի ձորահովիտ մը՝ որուն մէջ կը բնակէին Հայոց թագաւորներուն այն զաւակները , որոնք որ պիտի չթագաւորէին ։ Այս սովորութիւնը սկսաւ Վաղարշակ Պարթևէն , որ շատ զաւկըներ ունենալով , և չուզելով որ ամէնքն ալ իր քովը Մծբին քաղքին մէջ կենան , միայն իր անդրանիկ որդին Արշակը քովը պահեց , ու մէկալները Հաշտեանք գաւառը խաւրեց , ուր եղբերը շատցած և աւելի ընդարձակեցին իրենց սահմանը , Աղիովիտ ու

Աւբերանի գաւառներուն մէջ ալ երթալով։

Երկիրը խիստ բարեբեր ու զուարճալի ըլլալուն, Թագաւորազուններու բնակարան ընտրեցաւ։ Աստ մէջէն կը բխի Տիգրիս գետը Ողորայ գեղէն։ Անուանի է այս գաւառին մէջ Կրասիձ քաղաքը, որ ընդարձակ ու ամուր բերդ ունի, և շինել տըւաւ Յուստինիանոս կայսրը։

## Գ. Պաղնատուն.

82. Պաղնատուն գաւառին գլխաւոր տեղերը։ — Պաղնատուն գաւառին մէջ կար Պաղին անունով բերդ մը, որ թերևս շինողին անունովը կոչուած է, անկէց գաւառն ալ Պաղնայ տուն, որոյ մէջն էր նաև Թըլպաղտ բերդը։ Կ'երևի թէ այս գաւառին մէջ կ'իյնայ Արկնի կամ Արքնի և կամ Արղնի ամուր բերդը, հիմա Արղանա, որոյ մօտերը ոսկւոյ հանքը կայ, և Թլխում ամուր բերդաքաղաքը, որ իրեն սահմանակից երկրովը պզտի գաւառ մըն է, բարեբեր և հարուստ. ԺԱ դարուն Տուղրիլ այս երկրին մեծ մասը այրեց անապատ դարձուց, բնակիչներն ալ գերի տարաւ։

### Դ. Բալահովիտ.

83. Բալահովիտ գաւառին վրայ գիտե-լիք: — Բալահովիտ գաւառին անունը ե-լած է Բալու բերդին անունէն, և մէջը ըն-դարձակ ու բարեբեր հովիտ ըլլալուն հա-մար ըսուեր է Բալահովիտ կամ Բալախո-վիտ, իբր Բալուայ հովիտ: Բալու բերդաքա-ղաքէն զատ ունի Մեծկերտ բերդը և ուրիշ ամուր տեղուանք:

### Ե. Ծոփք.

84. Ծոփաց գաւառին վրայ գիտելիք: — Ծոփք գաւառը երկու մաս կը բաժնուէր, մէկը կ'ըսուէր Ծոփք Շահունեաց, Շահունի ցեղին անունովը որ այս գաւառիս մէջ կը բնակէր. մէկալը Մեծ Ծոփք, որոյ մէջն էր Բնաբեղ բերդը, և Անգղ ամուր բերդը՝ զոր Բուզանդ Անգեղտան գաւառին մէջ կը դնէ՝ որ նոյն է Ծոփք գաւառին հետ, ուր կը բնակէր Անգեղտուն ըսուած երևելի նա-խարարութիւնը: Այս բերդին մէջ, որ նոյն է Դէգիք գաւառին մէջ յիշուած Անկղ բեր-դին հետ, կը պահուէին Թագաւորական գանձք, և գերեզմանք:

85. Ծոփաց գաւառին մայրաքաղաքը: — Այս գաւառիս մէջ երևելի է Մարտիրո-սաց քաղաքը կամ Նփրկերտ, զոր Մարու-թա եպիսկոպոսը՝ որ մօր կողմանէ Հայոց

նախարարներու ցեղէն էր, փոքր Թէոդոս կայսրէն խնդրելով պարսպով ամրացուց. ու մէջը փառաւոր տաճար մը շինեց, ուր զանազան աշխարհներէ սրբոց մասունք հաւաքեց, 280,000ի չափ. այս պատճառաւ քաղքին անունն ալ Մարտիրոսաց քաղաք ըսուեցաւ։

Այս քաղաքս Յուստինիանոս կայսրը աւելի ամրցուց առջի պարսպէն չորս ոտնաչափ հեռու ուրիշ պարիսպ մ'ալ շինելով, որ հին պարսպին պէս 4 ոտնաչափ թանձր ու 20 ոտնաչափ բարձրութիւն ունէր, և այս երկու պարիսպներուն մէջ տեղը քարով և կրով լեցուց։ Այս Նորոգութեանս համար քաղքին անունն ալ Յուստինիանուպոլիս անուանեց, ու բոլոր Ծոփաց աշխարհին մայրաքաղաքը ըրաւ։ Հուլաւուն խանը (1260) առաւ այս քաղաքս և մէջը շատ ջարդ ըրաւ, բայց մասունքներուն ու եկեղեցիներուն վնաս մը չհասցուց. հիմա Մուֆարղին կ'ըսուի այս քաղաքը։

86. Ծոփաց ուրիշ յիշուած քաղաքները։ — Խոզան գիւղաքաղաքը, զոր Մատթէոս պատմիչ իր շրջակայ սահմանովը Խոզնայ գաւառ կ'անուանէ, և անոր մէջ կը դնէ Չմշկածագ քաղաքը որ Յունաց Չմշկիկ կայսեր անունովը կոչուած է, որ ազգաւ հայ էր Խոզնայ գաւառին քաղքէն, և իր անունովը այսպէս կոչուած է. վասն զի քաղքին առջի անունը Յերապոլիս էր, որ սրբազան քաղաք կը նշանակէ։

Ծոփաց գաւառին մէջ կը դնէ Ստրաբոն Կարկաթիոկերտ անունով քաղաք մը, և կ'ըսէ թէ ասիկա էր Ծոփաց մայրաքաղաքը, որոյ վրայ ամենևին յիշատակութիւն մը չկայ մեր մատենագիրներուն մէջ. և թերևս Խարբերդ քաղաքին համար ըսած ըլլայ, ոմանք ալ Տիգրանակերտ կամ Ամիդ քաղաքը կը կարծեն:

## Զ. Հանձիթ.

87. Հանձիթ գաւառին մէջ յիշուած տեղերը: — Հանձիթ գաւառին մէջ երևելի է Խարբերդ կամ Կարբերդ ամրոցը. Ճապաղաջուր կամ Ճապղջուր բերդը, Հարաւ քաղաքը, և Էկիլ ամրոցը: Որոնք հիմայ ամէնքն ալ մէյմէկ վիճակի գլխաւոր քաղաք կամ աւան են:

Խարբերդի մօտիկ կայ Ծովակ մը, որոյ մէջն է Ծովք ըսուած դղեակը, որ երկոտասաներորդ դարուն մէջ քիչ մը ատեն Հայոց կաթողիկոսարան եղաւ: Խարբերդի մօտ է նաև Կապան աւանը, ուր արծաթի հանք կայ:

# ԳԼՈՒԽ Է.

## Գ. Աղձնիք.

88. Աղձնեաց նահանգին վրայ աշխարհագրական գիտելիք: — Աղձնիք նահանգը կը կոչուի երբեմն Արձն, իր Արձն գաւառին անունովը. կը կոչուի նաև կողմն Ասորեստանի, Ասորեստանի սահմանակից ըլլալուն համար, և կամ Ասորեստանեայց Սենեքերիմ Թագաւորին Սանասար որդւոյն հոս բնակելուն ու հոս բազմանալուն համար. և կ'իյնայ Միջագետաց հիւսիսային կողմը Չորրորդ Հայոց սահմանակից:

Մէջէն կ'անցնի Տիգրիս գետը, և ունի Թուխ անունով գետ մ'ալ, որ կը թափի Բզնունեաց ծովը: — Բերքերէն կը յիշուին յանուանէ երկաթի ու կապարի առատ հանք, նաւթ, գխտոր, և դեղհուկ թռչունը:

89. Աղձնեաց վրայ պատմական գիտելիք: — Այս նահանգը թէպէտ և մեր Սկայորդի հայկազուն նահապետը Սանասարի ցեղին տուած էր, բայց ետքէն, ինչպէս որ կը պատմէ Թովմա Արծրունի, Արծրունեաց ցեղին անցաւ մեծին Տիգրանայ ատեն: Վաղարշակ Ա. այս նախարարութիւնը բդեշխութիւն ըրաւ, և Տրդատ Թագաւորը իր տէրութեան ութը նախագահ իշխանաց մէկը, որոնք 400 իշխաններու

գլուխ էին, և Թագաւորին խորհրդակից : Այս բդեշխութիւնը Տրդատայ որդւոյն Խոսրով երկրորդին ատեն բաժնուեցաւ ՚ի Հայոց՝ Բակուր իշխանին ձեռքովը, ու Պարսից կողմը անցաւ :

90. Աղձնեաց գաւառներն : — Աղձնիք նահանգը տասն գաւառ կը բաժնուի, որ են Արզն կամ Արձն, Նփրկերտ, Քեղ, Կեթիկ, Տատիկ, Աղեստաձոր կամ Աղեստաց ձոր, Խերխեռք, Գզեղ, Սալնոյ ձոր կամ Սալնաձոր և Սասուն :

### Ա. Արզն : — Բ. Նփրկերտ.

91. Արզն և Նփրկերտ գաւառներուն վրայ դիտելիք : — Արզն գաւառին անունը ըսուած կայ նաև Արձն, և մէջի գլխաւոր քաղաքն է Արզուն, որոյ անունովը գաւառը Արզն ըսուած է :

Իսկ Նփրկերտ գաւառը Խորենացին Թէպէտ և այս նահանգին մէջ կը դնէ, բայց նոյն անունով մայրաքաղաքը ազգային ու արտաքին մատենագիրները Չորրորդ Հայոց կամ Ծոփաց աշխարհին մէջ կը դնեն, ինչպէս մենք ալ հոն յիշեցինք :

### Գ. Սասուն.

92. Սասուն գաւառին վրայ դիտելիք : — Կ՚երևի Թէ Սասուն անունը Սանասունի առուածն է, որ եղած է Սանասարին անու-

նէն, որ Սիմ լեռան վրայ բնակեցաւ, երբ որ իր եղբօրը Ադրամելէքին հետ մէկտեղ իրենց Սենեքերիմ հայրը սպաննելէն ետև Ասորեստանէն ՚ի Հայաստան փախան, ու Աղձնեաց կողմերը բնակեցան։ Սասունի բնակիչները կը կոչուին երբեմն Տօրոսի բնակիչներ, Տօրոսի մէկ ցռւկին որ է Սիմ լեռը՝ այս գաւառին մէջէն անցնելուն համար։ Սիմ լերին անունը հիմա կը կոչուի Սասուն։ Այս գաւառին բնակիչները որ կ՚ըսուին Սանասանք, լեռնաբնակ ըլլալուն համար, բնութեամբ կտրիճ և անարուեստ մարդիկ են, սակայն հիւրասէր և զուրիչը պատուող. լեզունին թանձր ու խոշորաձայն։ Այս գաւառին մէջ անուանի է Թուաձեան բերդը։

93. Աղձնեաց մէջ յիշուած ուրիշ տեղեր։ — Այս նահանգին մէջ կը յիշուին մէկ քանի քաղաքներ ալ, որոնց գաւառը յայտնի չեն։

Տիգրանակերտ քաղաք, զոր մեծն Տիգրան շինեց Քրիստոսէ գրեթէ 560 տարի առաջ Տիգրիս գետոյն վրայ, Միջագետաց մօտիկ, ասով արտաքին մատենագիրներէն շատերը Միջագետաց մէջ կը դնեն այս քաղաքը։ Չորրորդ ու հինգերորդ դարերուն մէջ սկսան օտարազգի մատենագիրները Ամիդ կոչել այս քաղաքը. ասով մեր մատենագրաց մէջ ալ նոյն սովորութիւնը մըտաւ երբեմն Տիգրանակերտ ու երբեմն Ամիդ ըսելը։ Այս քաղաքը միջին Տիգրան

Նորոգեց ու շատ ճոխացուց, և մէջը թատրոն մը շինեց, և Կապադովկիայէն շատ գերի բերելով բազմամարդացուց քաղաքը[1]։ Մեծին Տիգրանայ ատենէն 'ի վեր երևելի եղած և անառիկ սեպուած է Տիգրանակերտ, որոյ պարիսպները Կոստանդ կայսրը (339ին) Նորոգեց և ամրցուց, զորոնք ետքէն մեծն Թէոդոս ալ Նորոգեց։ Երկու անգամ այս քաղաքը Պարսիկներէն առնուեցաւ. մէյմը Շապուհ Բին ատեն, որ մեծին Տիգրանայ շինած պարիսպները տեղ տեղ կործանելով, մէջէն 40,000 տուն գերի տարաւ. երկրորդ Կաւատ Թագաւորին ժամանակ (515ին) որ մէջը 80,000 հոգի ջարդեց։

Աղձնեաց նահանգին մէջ կը յիշուին նաև Բառաւէջ աւանը, Բեղոռ գեղը, Սեղմ բերդը, Գալի, Կոտոմ և Կաղբայոյ գեղերը, և Կղեսուր ըսուած լերանց նեղ անցք կամ կապան մը։

1 Ստրաբոն յոյն աշխարհագիրը կը զրուցէ թէ Փոքր Ասիոյ մէջ Յունաց տասներկու քաղաքները կործանելով, անոնց բնակիչները բերաւ Տիգրանակերտին մէջ բնակեցուց։

# ԳԼՈՒԽ Ը.

## Դ. Տուրուբերան.

94. Տուրուբերան նահանգին վրայ դիտելիք: — Տուրուբերան կամ Տարուբերան[1] նահանգը կ'իյնայ Չորրորդ Հայոց արեւելեան կողմը: Օդը առողջարար, և երկիրն ալ խիստ բարեբեր է, և մէջը յանուանէ կը յիշուին 'ի նախնեաց՝ գազպէ, մեղր, պիստակ, երկաթ և նաւթ: — Այս նահանգին արեւելեան կողմը կ'իյնայ Բզնունեաց ծովը, ուսկից շատ տառեխ ձուկ կ'ելլէ, զոր կ'աղան ու հեռու տեղեր կը տանին: Այս ծովակին մէջ, որ ըստ Խորենացւոյ 100 մղոն երկայնութիւն և 60 մղոն լայնութիւն ունի, կան չորս կղզի, Աղթամար, Առտեր, Կտուց, Լիմ:

95. Տուրուբերան նահանգին գաւառներն: — Տուրուբերան նահանգը տասնուվեց գաւառ կը բաժնուէր, որ են Խոյթ, Ասպակունիք, Տարօն, Աշմունիք կամ Արշամունիք, Մարդաղի, Դասնաւորք, Տուարածատափ, Դալար, Հարք, Վարաժնունիք, Բզնունիք, Երիվարք, Աղիովիտ, Ապահունիք, Կորի, և Խորխոռունիք:

1 Աշխարհագրութեան օրինակի մը մէջ Տուրուբերան անուան տեղ գրուած կայ Ջուր առ Բէրան:

## Ա. Խոյթ.

96. Խոյթ գաւառին անուանը վրայ գիտելիք: — Այս գաւառին անունը եկած է բնակչաց բարուցը և լեզուներնուն կոշտութենէն, ինչպէս որ կ'ըսէ Թովմա Արծրունի. և Խոյր լեռը որ Տօրոսի մէկ մասն է, այս գաւառին անունովը կոչուած է:

## Բ. Տարօն.

97. Տարօն գաւառին անուան ծագումը: — Խորենացին Ոլոմպիոդորոս փիլիսոփային բանէն առնլով կը պատմէ թէ Նոյի թոռներէն մէկը Տարբան անունով երեսուն մանչ զաւակով ու տասնըհինգ աղջիկ զաւակով, և իրեն մարդիկներովը հօրմէն բաժնուելով գնաց բնակեցաւ Եփրատ գետոյն մէկ ճիւղին քով, և իր անունովը բնակած տեղը Տարօն կոչեց. իսկ ուսկէց որ իր զաւակները իրմէն բաժնուեցան Ցրօնք անուանեց:

98. Տարօնոյ վրայ պատմական գիտելիք: — Այս գաւառը որ Տուրուբերանի մէկալ գաւառներէն ընդարձակ է, ու երբերը անոր մեծ մասը կը բովանդակէր, առջի բերան Սլկունեաց ցեղին կալուածն էր, բայց երբոր անոնց նահապետը Տրդատայ ատենն ապստամբեցաւ ու Պարսից Շապուհ թագաւորին հետ միաբանեցաւ, Տրդատ

խոստացաւ իր իշխաններուն՝ որ ով որ Սըլկունեաց նահապետը բռնէ և իրեն բերէ, անոր երկիրը որդւոց որդի իրեն ժառանգութիւն կը թողու : Այս բանս կատարեց Մամգուն՝ Մամիկոնեան ցեղին նահապետը, և թագաւորական հրովարտակաւ որդւոց որդի Տարօն գաւառին տիրեց : Տարօնոյ գաւառին մէջ կը բնակէին նաև Դեմետր ու Գիսանէ իշխանները, իրենց Հնդկաստանէն բերած գաղթականքին հետ մէկտեղ :

99. Տարօնոյ երկրին բարեբերութիւնը : — Տարօնոյ երկիրը խիստ բարեբեր և ջրոտ է, մանաւանդ Իննակնեան (Մշու Ս. Կարապետ) վանքին կողմերը, օդը առողջարար և մաքուր : Մէջէն կ'ելլէ գազպէ՝ որ մանանայի պէս նիւթ մի է : Տարօն գաւառը սահմանակից է Չորրորդ Հայոց Հաշտեանք գաւառին, և երկուքին մէջ տեղէն կ'անցնի Արածանի գետը :

100. Աշտիշատ քաղքին վրայ գիտելիք : — Տարօնոյ մէջ երևելի էր Աշտիշատ կամ Յաշտիշատ քաղաքը ; որ ըսել է զոհից քաղաք, մէջի Վահէվահեան ըսուած անուանի ու հարուստ մեհենին համար, որ Միջին Տիգրանէն առաջ շինուած էր, բայց Միջին Տիգրան բոլորովին նորոգեց : Այս մեհեանը իրեք զատ մեհեաններ բաժնուած էր . առջինն էր Վահէվահեան մեհեան, որոյ անունով ամբողջ իրեքն ալ մէկտեղ առնլով Վահէվահեան կ'ըսուէր ; որոյ մէջն էր Հերակ-

լեայ պղնձէ ոսկեզօծ արձանը. երկրորդ մեհեանն էր Սնահտայ, երրորդը Աստղկան կամ Ափրոդիտեայ։ Աշտիշատ քաղաքը՝ որ գեղ և աւան ալ կոչուած է, շինուած է Քարքէ լերին վրայ, Եփրատ գետոյն մօտ, և առաջ Վահունեաց ձեռքն էր, բայց Միջին Տիգրան իրենց նեղանալով Հերակլեայ արձանը Արմաւիրէն հոս փոխադրելնուն համար, առաւ իրենց ձեռքէն, որ ետքը Տարօն գաւառին հետ մէկտեղ անցաւ Մամիկոնեանց ցեղին։ Այս քաղաքը ինչպէս կռապաշտութեան ատեն հեթանոսութեան բոյն էր, քրիստոնէութեան ատեն ալ շատ ծաղկեցաւ։ Հոս շինեց Գրիգոր Լուսաւորիչ Հայաստանի առջի եկեղեցին, որ և ըսուեցաւ բոլոր Հայաստանի մայր եկեղեցի։ Հոս թաղուեցաւ նաև սուրբն Սահակ Պարթև, ու դերեզմանին վրայ փառաւոր ժամ մը շինուեցաւ, քովն ալ կրօնաւորաց վանք մը։

Անուանի է Աշտիշատին քով Մատրավանք մենաստանը, որոյ մէջ Գրիգոր Լուսաւորիչ հրեշտակի յայտնութեամբ մատուռ մը շինելուն ու մէջը Յովհաննու Մըկըրտչի ու Աթանագինեայ նշխարներէն մաս մը ամփոփելուն համար այսպէս կոչուեցաւ. ուր սովորութիւն կար հին ատեն, կաթողիկոսը թագաւորով ու նախարարներով մէկտեղ տարին եօթն անգամ կը ժողվէին, հանդիսիւ տօնը կատարելու համար։

101 . Տարօն գաւառին մէջ յիշուած ու-
րիշ գլխաւոր տեղերը . — Մուշ քաղաք , ո-
րոյ մէջ երևելի էր Սուրբ Փրկիչ ժամը և ի-
րեն մօտիկ Ղազարու վանքը , ուր Գրիգոր
Լուսաւորիչ հրեշտակի յայտնութեամբ զե-
տեղեց Պետրոս առաքելոյն նշխարը ու Ան-
դրէաս առաքելոյն աջ ձեռքը , զորոնք Հռո-
մէն դառնալու ատեն Պապէն ու Կոստան-
դիանոս կայսրէն ընծայ առած էր . անոր
համար ետքերը Ղազարու վանքը կոչեցաւ
Սուրբ առաքելոց : Այս քաղաքը Մամիկո-
նեան ցեղին գլխաւոր քաղաքն էր :

Հացեկաց կամ Հացեաց գեղ , ուսկից էր
սուրբն Մեսրոպ կամ Մաշթոց :

Հոռոմեսու վանք , զոր շինեց Հնդկաստա-
նէն եկած Դեմետրեայ ու Գիսանեայ իշխան-
ներուն որդւոց մէկն Հոռեան անունով :

Օձ քաղաք , որոյ մուտքը խիստ նեղ ըլ-
լալուն այսպէս կոչուած է :

Գարհար բերդ և Գրգռու աւան որոց եր-
կուքն ալ Վախտանկ Պարսից սպարապետը
շինած է :

Վահանովիտ , զոր շինեց Պալունեան Վա-
հան իշխանը :

Աստղաբերդ կամ Աստեղօնք ամրոց . Ե-
ղանց կամ Եղնուտ բերդ . Ողական բերդ .
Թիլ գեղ . Վիշապ քաղաք . Ջիւնկերտ քա-
ղաք , որ ետքերը ըսուեցաւ Պորպէս . Մա-
հոս ագարակ բլուր , ուր Գայլ Վահան Թըշ-
նամեաց մարմինները թաղեց , և հիմա կ'ը-
սուի Մահացրակ , և գեղ մի է , և այլն :

102 . Գլակայ վանքին վրայ գիտելիք ։ — Այս վանքը Ջենոբ Գլակ Ասորւոյն անունովը կոչուեցաւ . վասն զի ինքն եղաւ առաջին վանահայրը Լուսաւորչէն դրուելով, և ինքը շինեց լմընցուց ասոր եկեղեցին, որոյ հիմը Գրիգոր Լուսաւորիչ դրած էր ։ Գլակայ վանքը կ'ըսուի նաև սուրբ Կարապետի վանք, մէջի եկեղեցին սուրբ Կարապետի անունով ըլլալուն, ուր և իրեն մասունքը կը պահուին, անոր համար մեծ ուխտատեղի էր և է ինչուան հիմայ ։ Գլակայ վանքը կ'ըսուի նաև Իննակնեան վանք տեղւոյն անունովը, ուսկից որ ինը անոյշ ջրի աղբիւրներ կը բխէին ։ Առաջուց հոս Քարքէլերին ուր կային Գեմետրեայ ու Գիսանեայ արձանները ու բագինները, զորոնք սուրբն Գրիգոր կործանեց, ու անոնց տեղ սուրբ Կարապետի եկեղեցին հիմնեց, և քովը վանքը, ուր 44 կրօնաւոր ժողվեց . բայց ետքէն Թովիկ վանահայրը եօթնեբորդ դարուն բազմացուց հոն անապատականներուն թիւն որ ինչուան 400 եղան ։ Արգիլած էր սուրբ Կարապետի եկեղեցւոյն մէջ կանանց մտնելը Գրիգոր Լուսաւորչի ատենէն'ի վեր, նոյնպէս արգիլած էր ձիով գիմացէն անցնիլը ։ Այս եկեղեցին երկրաշարժէ կործանեցաւ մի անգամ, բայց Մուշեղ իշխանը նորէն շինել տուաւ Զ դարուն վերջերը, ինքն ալ հոն մօտ թաղուեցաւ . Թաղուեցան նոյնպէս և Վարդ պատրիկ իշխանը, Գայլ Վահան՝ և ուրիշ իշխաններ ։

10. Գլակայ վանքին կալուածները: — Գրիգոր Լուսաւորիչ Գլակայ վանքին տասնուերկու գեղ կալուած թողուց. որոնցմէ եօթնին անունը կը յիշէ Զենոբ Գլակ, որ են[1].

Կուառս, Պալունեաց երկրին մէջ, զոր շինեց Վաղարշակի ատեն Հնդկաստանէն եկած Գեմետր ու Գիսանէ իշխաններուն Կուառս որդին, որոյ մէջ 3010 տուն բնակիչ կար, ու 3700 զինուոր, հեծեալ և հետեւակ:

Մեղտի, զոր շինեց Գեմետր ու Գիսանէ իշխաններուն Մեղտէս որդին. ունէր 2080 տուն բնակիչ ու 2000 զինուոր:

Խորտում, որ ունէր 900 տուն բնակիչ և 400 հեծեալ:

Խորնի, որ ունէր 1900 տուն բնակիչ և 1700 զինուոր. հոն ծնաւ սուրբն Մովսէս Խորենացի:

Պարխս, որ ունէր 1680 տուն բնակիչ, և 1400 զինուոր:

Կեղտեք, որ ունէր 1600 տուն բնակիչ, ու 1400 զինուոր:

Բազում, որ ունէր 3200 տուն բնակիչ,

1 Այս գեղերուն բնակչաց թիւը ու զօրքը ուզեցինք զատ զատ գնել, ուսկից կրնայ մարդ մակաբերել Հայաստանի քաղաքներուն ու գեղերուն բազմամարդութիւնը. վասն զի ուրիշ տեղ ասանկ որոշ յիշատակութիւն չկայ մեր նախնեաց մէջ գեղերուն և քաղաքներուն բնակչաց թուոյն վրայ:

ու 2600 զինուոր։ Ասոնց վրայ Վարդ պատրիկ Արծրունին աւելցուց երկու գեղ ալ Վասպուրական նահանգէն։ Նոյնպէս Գայլ Վահան տասնըութը գեղ։

104. Արճուց երկրին վրայ գիտելիք։ — Արճէք կամ Արճուց երկիր անունով պզտիկ վիճակ մը կար Տարոնոյ հարաւային կողմերը, որ եղբը Գորգ չատախօս իշխանին մականունէն Շատախ ըսուեցաւ, որոյ մէջն էր Ծիծառնէ աւանը. և տարբեր է Մոկաց նահանգին մէջ եղած Շատախ գաւառէն։

## Գ. Աշմունիք.

105. Աշմունիք գաւառին դիրքը և մէջի գլխաւոր քաղաքները։ — Աշմունիք կամ Արշամունիք գաւառը Հաշտեանք գաւառին մօտիկ է. երևելի են մէջը Աշմուշատ քաղաքը որ Արշամաշատ անուան ալ ունի, և կ՚երևի թէ Արգարու հայրը Արշամ թագաւորը շինած է, և կ՚իյնայ Արածանի գետոյն հիւսիսային կողմը։

Երկզ քաղաք, Ծախնոտ գեղ՝ ուսկից էր Յովհան Մանդակունին. Ոզին և Շիրմաց գեղերը, և այլն։

## Դ. Հարք.

106. Հարք գաւառին անուան ծագումը։ — Հայկ երբոր աշտարակին կործանմանէն

ետև Հայաստան դարձաւ, Նախ այս գաւառը բնակեցաւ, որոյ անունը ինքը դրաւ իր Նախնեաց յիշատակը պահելու և իմացընելու համար թէ ինքը իր հօրը Թորգոմին երկրին մէջ բնակած է, և ինքն ալ ազգին հայրն պիտի սեպուի: Այս գաւառը ետքէն ժառանգութիւն ընկաւ Հայկայ Մանաւազ որդւոյն, և անկէ Մանաւազեան ցեղին:

Այս գաւառին եկեղեցին ու եպիսկոպոսարանը հիմնեց Գրիգոր Լուսաւորիչ, որոյ եպիսկոպոսները անոր գլխաւոր քաղքին անունովը կը կոչին Մանազկերտոյ եպիսկոպոսք:

107. Հարք գաւառին գլխաւոր քաղաքները: — Հարք գաւառին մէջ երևելի է Մանազկերտ կամ Մածկերտ քաղաք, իբր Մանաւազակերտ, զոր շինեց Հայկայ Մանաւազ որդին, և կ'իյնայ Հարք գաւառին ծայրը Ապահունեաց սահմանակից, Արածանի գետոյն վրայ. անոր համար այս քաղաքը երբեմն Ապահունիք գաւառին մէջ ալ կը դնեն: Այս քաղաքը Հայաստանի երևելի ու ամուր քաղաքներէն մէկն էր, որ առաջուց աւան մի էր, ու ետքը ընդարձակելով և ամրանալով անառիկ քաղաք եղաւ, իրեք ամուր պարիսպներով պատած: Մանազկերտ քաղաքը 1050ին ատենները Տուղրիլ Պարսից Թագաւորը երկու ամիս պաշարեց, բայց չկրցաւ առնուլ, ամէն օր երկու անգամ քաղքին հետ կռուելով. ետքէն առաւ Ալփասլան Տուղրիլի եղբայրը,

տառանց պահապանի գտնելով, ու մէջը չարաչար կոտորած ըրաւ։

Հարք գաւառին մէջ երևելի են նաև Հայկաշէն գեղը, զոր Հայկ նահապետը շինեց և իր անունովը կոչեց։

Հերեք կամ Հերևան գեղ, ուսկից էր Դաւիթ Անյաղթ։

Մանկանցում գիւղաքաղաք։ Արածանի գեղ՝ որոյ անունովը կոչուած է Եփրատայ մէկ ճիւղը որ կը բղխի Ծաղկոտն լեռնէն։

### Ե. Բզնունիք.

108. Բզնունիք գաւառին անուան ծագումը։ — Այս գաւառին անունը եկած է Հայկայ Բազ թոռան անունէն, որ Մանաւազին որդին էր, և բնակեցաւ Աղի ծովուն արևմտեան հիւսիսային կողմը, որոյ անունովը այս ծովն ալ Բզնունեաց ծով կոչեցաւ։ Երևելի էր այս գաւառիս եպիսկոպոսարանը զոր Գրիգոր Լուսաւորիչ հաստատեց։

109. Բզնունեաց գլխաւոր քաղաքները։ — Երևելի է այս գաւառիս մէջ Խլաթ բազմամարդ ու ամուր քաղաքը, որ զօրաւոր բերդ ունէր, և չորս կողմն ալ պարսպով պատած էր։ 1230ին ատենները Մողոլ Թաթարները այս քաղքիս տիրելով, շատ աւերմունք ըրին, ու ետքը 1550ին Դահմազ Ղուլի խանը առնլով, բոլորովին կործանեց բերդը։ Բայց սուլդան Սիւլէյման երբոր առաւ քաղաքը, ուրիշ բերդ մը շի-

նել տուաւ առջինէն հեռու Բզնունեաց ծո-
վուն մօտ։

Արծկէ քաղաք, որ ամուր և անառիկ բերդ ունէր։

Բաղէշ, որ վաճառաշահ քաղաք է։

Երևելի են նաև Հիզան քաղաք, Աղուանից բերդ, Դատուան գեղ, Ծղաք գեղ, և այլն։

## Զ. Աղիովիտ.

110. Աղիովիտ գաւառին վրայ գիտելիք։ — Առջի բերան այս գաւառը Գնունեաց ձեռքն էր, բայց ետքէն Հաշտեանք գաւառը Թագաւորազուններու բնակութեան չբաւելով, այս Աղիովիտ գաւառն ալ Առբերանի գաւառին հետ մէկտեղ անոնց բնակութեան տեղ եղաւ. բայց կ'երևի թէ Աղիովիտ գաւառին մէկ մասը միայն Գնունեաց ձեռքը։

111. Աղիովիտ գաւառին գլխաւոր քաղաքները։ — Զարիշատ քաղաք, զոր Պարսիկք մեր Արշակ երկրորդին ատեն առնլով մէջէն 10,000 տուն Հայ ու 1000 տուն Հրեայ գերի տարին ու քաղաքն ալ կործանեցին, բայց ետքէն նորէն շինուեցաւ։

Արճէշ քաղաք, որոյ անունէն եկած է Վասպուրականի Արճիշակովիտ գաւառին անունը։ Այս քաղքիս մօտ է Մեծոբայ անուանի ուխտը, ուսկից էր Թովմաս Մեծոփեցի պատմիչը. այս վանքին մէջ կը բնակէր ատեն մը Գրիգոր Տաթևացին ևս.

աշկերտներովը : Թովմաս Մեծոփեցին ու Վարդան աշխարհագիրը այս քաղաքը իրեն ընդարձակ սահմանովը մէկտեղ Բաղքերուճի կամ Արճէշու երկիր կը կոչեն, ուսկից յայտնի է թէ Քաջբերունի ըսուած ցեղը այս կողմերը կը բնակէր :

Արճէշու մօտ են Մաշառոց, Երիշատ կամ Գերիշատ և Աղի գեղերը, և Խառնապատոյ գեղը, ուր նոյն անունով հռչակաւոր վանք մը կայ :

## Է. Ապահունիք.

112. Ապահունեաց գաւառին վրայ գիտելիք : — Վաղարշակ Ա, Մանաւազեան և Բզնունեան ցեղերուն հետ մէկտեղ այս Ապահունեաց ցեղն ալ՝ որ կոչուած է երկրին անունովը՝ նախարարութեանց կարգը անցուց, որ հարուստ ցեղեր էին ու Հայկայ ժամանակէն սկսած : Ապահունեաց երևելի տեղերն էին, Խարձունք գեղը, Դաշարիս գեղը, որ ետքը կոչեցաւ Ածող, որոյ մէջ Շապուհ Պարսից թագաւորը մեր Տիրան թագաւորին աչքը տաքցուցած երկաթով կուրցընել տուաւ, և երկաթը ածուխի վրայ տաքցընելուն պատճառաւ, Տիրան գեղին անունը Ածող կոչել տուաւ :

Թոնդրակս աւանը, որոյ բնակիչները կ'ըսուին Թոնդրակեցիք կամ Թոնդրակք, որոնք իններորդ դարուն մէջ Նորահնար ա-

ղանդ մը հնարեցին, զորս Գրիգոր Մագիստրոս ԺԱ. դարուն վերցուց:

### Ը. Խորխոռունիք.

113: Խորխոռունիք կամ Խոռխոռունիք գաւառին վրայ գիտելիք: — Խորխոռունիք գաւառին և մէջի բնակչաց անունը եղած է Հայկայ Խոռ որդւոյն անունէն: Այս ցեղը ետքը մեծ նախարարութեանց կարգը անցաւ, ու Վաղարշակ անկէ իրեն թիկնապահներ ընտրեց, որոց գլխաւորին անունը Մաղխազ ըլլալուն, անկեց ետքը թագաւորին թիկնապահները Մաղխազ ըսուեցան, Խորխոռունեաց ցեղն ալ Մաղխազունիք:

## ԳԼՈՒԽ Թ.

### Ա. Մոկք.

114. Մոկք նահանգին վրայ գիտելիք: Մոկք նահանգը կ'իյնայ Աղձնեաց արեւելեան կողմը. երկիրը խիստ լեռնոտ է, և Կորդուաց լեռները մէջէն կ'անցնին: Կ'ելլէ մէջէն մանրագոր կամ լոշտակ ըսուած տունկը, դաճրշակ ըսուած պտուղը, կաքաւ թռչունը, ինծ գազանը, նաև ընտիր էշեր. որոց անունով կոչուած են Իշայք,

միւս Իշայր ու Իշոց գաւառները։ Վաղարշակ Ա. Մոկաց մէջ գատ նախարարութիւն հաստատեց, որ ետքերը Բագրատունեաց Ա. Սմբատայ ատեն Վասպուրականի տէրութեան տակ ինկած էր։

115. Մոկաց Նահանգին գաւառները։ — Ինն գաւառ ունի Մոկաց Նահանգը, որ են Իշայր, միւս Իշայր, Իշոց գաւառ, Առուենից ձոր, Միջս, առանձնակ Մոկք, Արքայից գաւառ, Արգաստովիտ, և Ջերմաձոր: Այս ետքինս կ'անուանի նաև Շատախ, ուսկից կը բղխի Տիգրիս գետոյն մէկ ճիւղը. ասկէց կ'երևայ ամբողջ Տիգրիս գետոյն Շաղ ըսելը։

116. Մոկք Նահանգին մէջ յիշուած տեղերը։ — Շատ անծանօթ են մեզի Մոկաց Նահանգին շէնքերը, վասն զի խիստ քիչ յիշատակութիւն կայ վրանին 'ի գիրս. կը յիշուի Ապարանք գեղը, որոյ մէջ կը պահուէր Քրիստոսի խաչին մեծկակ կտոր մը, զոր Վասիլ ու Կոստանդ կայսերք (983ին) ընծայեցին Ապարանից վանքին Մոկաց Ստեփանոս եպիսկոպոսին, ոսկւով ու արծաթով պատած փառաւոր տապանակի մը մէջ դնելով, որոյ մէջ ամփոփած էր նաև սպունգին մէկ կտորը, որով Քրիստոս լեղին ճաշակեց. փշեղէն պսակին, բեւեռներուն, խանձարրոյն, զենջակին ու սուրբ Աստուածածնայ զգեստին մէկ մասը։ Այս Ապարանից խաչին պատմութիւնը սուրբն Գրիգոր Նարեկացի տեղն 'ի տեղը գրած է Ստեփանոս եպիսկոպոսին խնդրովը։

Ջերմաձոր գաւառին մէջ կայ Ջաղայր անունով բերդ մը ։

## ԳԼՈՒԽ Ժ.

### Զ. Կորճայք.

147. Կորճայք նահանգին վրայ դիտակներ ։ — Կորճայք նահանգը կ'իյնայ Մոկաց արեւելեան կողմը, Վասպուրականի ու Պարսկահայոց սահմանակից ։ Շատ անգամ Կորճայք նահանգին տեղ կ'ըսուի Կորդուաց աշխարհ, իր Կորդուք գաւառին անունովը, ուսկից ելած է նաեւ Կորդուաց լեռներուն անունը, որ այս նահանգին մէջէն կ'անցնին ։ Կ'ելլէ մէջէն գաւռիկ և շագանակ ։ Այս նահանգին մէջ Տիգրան վերջին՝ որ Վաղարշէն առաջ թագաւորեց, մասնաւոր նախարարութիւն հաստատեց ։

118. Կորճայք նահանգին գաւառները ։ — Տասնըմէկ գաւառ ունի, որ են Կորդուք, Կորդրիք վերին, Կորդրիք միջին, Կորդրիք ներքին, Այտուանք, Այգառք, Մորողանք, Որսիրանք, Կուարտունիք, Ճահուկ, փոքր Աղբակ ։

## Ա. Կորդուք.

119. Կորդուք գաւառին վրայ գիտելիք: — Կորդուաց իշխանը Տրդատ Թագաւորին ատեն ութը գահերէց իշխաններէն մէկն էր. Նոյնպէս նաև տէրութեան չորս հրամանատարներէն մէկը, արեւմտեան կողման վրայ իշխելով: Այս Կորդուք գաւառը, որով կ'իմացուի նաև ամբողջ Կորճայք նահանգն ալ, զանազան տէրութեանց ձեռքը անցաւ, անոր համար արտաքին մատենագիրներէն ոմանք Կորդուաց աշխարհը Պարթեւաց մէջ կը դնեն, ոմանք Մարաց մէջ, և ոմանք Պարսից: Ետքերը Կորդուք գաւառին բնակիչները Մարաց հետ խառնուելով, նոր ազգ մը ձեւացան, և հաւանական կ'երեւի թէ Քիւրտ անունը Կորդուք կամ Կորդրիք գաւառին անունէն ելած է:

120. Արտաքին պատմչաց Կորդուաց երկրին ու բնակիչներուն համար ըսածը: — Քսենոփոն կը գրուցէ թէ Կորդուաց երկիրը գինեւէտ ու բարեբեր երկիր էր, մէջի բնակիչները քաջասիրտ ու վարպետ նետ նետող, որոց նետերուն երկայնութիւնն էր երկու կանգուն, և աղեղներուն մեծութիւնը իրեք կանգուն. շատ վարպետ էին նաև պարսատիկ նետելու, ուրիշ պատերազմական զէնքեր և մեքենաներ շինելու ալ վարպետ էին, ինչպէս կը վկայեն ուրիշ պատմիչք ալ Կորճայք նահանգին բնակչաց համար:

## Բ. Կորդրիք.

121. Կորդրիք գաւառին վրայ գիտելիք։ — Կորդրիք գաւառը Խորենացիէն առաջ Տմորիք կ'ըսուէր, Տմորիք բերդին անունովը. բայց ետքերն ալ տեղ տեղ այս երկու անուններն զատ զատ կը յիշուին, իբրև իրարմէ զատ գաւառներ։ Տմորիք գաւառը Հայաստանի ամուր գաւառներէն մէկն է իր անմատչելի դիրքը համար. և մէջը կը յիշուի Ալկի աւանը, զոր շինեց Սմբատ Բիւրատեան Արտաշէս երկրորդին դայեակը, իր Ալիկա կնոջը անունովը։

122. Կործայք նահանգին մէջ յիշուած ուրիշ քաղաքները։ — Կը յիշուին Կորճէից մէջ նաև Սաղամաս քաղաք, որուն հիմա կ'ըսեն Սալմաստ, և կ'իյնայ Ուրմեայ ծովակին արևմտեան կողմը Պարսկահայոց Հեր գաւառին մօտ, անոր համար երբեմն այս գաւառին մէջ ալ կը դրուի։

Ուրմի քաղաք, Կապուտան ծովակին արևմտեան կողմը, որոյ անունովը ծովակը կոչուած է նաև Ուրմեայ ծով։ Այս քաղքին մէջ նահատակեցաւ առաքեալն Յուդա Յակոբեան, որ և Ղեբէոս։

Ըռուարաս կամ Ըռոստա քաղաք Ուրմի քաղքին մօտ, ուր վախճանեցաւ և թաղեցաւ Սիմոն Կանանացի կամ Շմաւոն Նախանձայոյզ, տասուերկու առաքելոց մէկը, Թադէոս առաքելոյն եղբայրը։

Կ'երևի թէ Կորճէից հիւսիսային կողմը կ'իյնայ Բոտկաց կամ Բոտոկաց ըսուած պզտի գաւառը Վասպուրականի սահմանակից ։

## ԳԼՈՒԽ ԺԱ․

### Է․ Պարսկահայք․

123․ Պարսկահայք նահանգին վրայ գիտելիք ։ — Պարսկահայք նահանգին անունը խիստ քիչ գործածուած է մեր մատենագիրներուն մէջ, և սովորաբար անոր Հեր և Զարեւանդ գաւառներուն անունովը՝ կ'իմանան բոլոր Պարսկահայք նահանգը, որ կ'իյնայ Կորճէից արեւելեան դին Ատրպատականի քով։ Միջին դարու ատեն Յունաց պատմիչները Պարսկահայք ըսելով կ'իմանային Հայաստանի այն մասը որ Պարսից ձեռքն էր․ ուստի պէտք չէ շփոթել անոնց ըսածը այս Պարսկահայք նահանգին հետ, որոյ անունը այսպէս կոչուած է Պարսից սահմանակից ըլլալուն, ու մէջը շատ պարսիկ գտնուելուն համար ։

Այս նահանգին քերթերուն կողմանէ մասնաւոր կերպով կը յիշուին վայրի էշ ու վայրի այծ և ուրիշ որսոյ կենդանիներ ։

124․ Պարսկահայք նահանգին գաւառներն ։ — Ինն գաւառ ունի, որ են․ Այլի

որ կ'ըսուին նաև Կորդուաց, Մարդի, Թորթումի, Աղստեւս, Ըսեռ, Տամբեր, Զարեհաւան, Զարեւանդ կամ Զարուանդ, և Հեր:

Ա. Բ. Զարուանդ և Հեր գաւառ.

125. Զարուանդ և Հեր գաւառաց վրայ գիտելիք: — Զարուանդ գաւառին անունը եկած է Սեմայ անունէն, որուն արեւելեան ազգերը Զրուան կ'ըսեն, որ բնակեցաւ նախ Սիմ լերին մօտիկ, ետքը անկէց այս գաւառը եկաւ բնակեցաւ: Իսկ Հեր գաւառին մէջ կը յիշուին Հեր կամ Խեր քաղաքը, որոյ անունով կոչուած է այս գաւառը, որ վերջը Խոյ ըսուեցաւ. — Նըշաւարակ ու Փետաւակ և Մալխազանի գեղերը:

ԳԼՈՒԽ ԺԲ.

Ը. Վասպուրական.

126. Վասպուրական նահանգին վրայ պատմական գիտելիք: — Վասպուրական նահանգը որ Հայաստանի ամէն նահանգներէն մեծ է, Արծրունեաց ցեղին բնակութեան տեղն էր: Վաղարշակ այս ցեղը նախարարութեանց կարգը անցուց, իր գիմացէն արծիւ կրելու պաշտօնը տալով, անոր համար կ'ըսուէին արծրունիք: Տրդատ

Թագաւորը Վասպուրականի նախարարը իր տէրութեան ութը գլխաւոր իշխաննե֊րուն մէկը ըրաւ ։ Այս նախարարութինը Ասորեստանեայց Սենեքերիմ Թագաւորին Ադրամելէք որդիէն եղած է ։ Իններորդ դարուն շատ ընդարձակեցաւ Վասպուրա֊կանի սահմանը Պարսկահայքէն ու Տու֊րուբերանէն այլեայլ կտորներ առնլով . և տասներորդ դարուն զատ Թագաւորութին եղաւ, որ 100 տարիէն աւելի տեեց , և վեր֊ջի Սենեքերիմ Թագաւորը 'ի Թուրքաց նե֊ղութին քաշելով , իր տէրութինը Յունաց Վասիլ կայսեր տուաւ (1021ին) , որոյ մէջ կար կ'ըսեն 72 բերդ , 4400 գեղ , և 10 քա֊ղաք , սահմանակից աշխարհներուն այլ և այլ մասերն ալ մէկտեղ սեպելով , որոց վը֊րայ որ կ'իշխէր . ինչպէս Պարսկահայոց մէջէն Զարեհաւան , Տամբեր , Ընոա գա֊ւառները . և Աղձնեաց ու Տուրուբերան նա֊հանգներէն Խլաթ , Խողց , Արճէշ , Մա֊նազկերտ , Հիզան քաղաքները , և այլն ։ Եւ այս ամէն երկիրներուն տեղ առաւ Յունաց երկրին մէջ Սեբաստիա քաղաքը իր շըր֊ջակայ սահմանովը մէկտեղ , որ իր տուած երկրին ամենևին համեմատութին չունէր , և հոն գնաց բնակեցաւ 400,000 հոգւով ու 14,000 ձիաւորով , և հետը տանելով իր ա֊մէն հարստութինները ։ Այն ժամանակը 900 վանք կը համրուի Վասպուրական աշ֊խարհին մէջ , որոնցմէ 115ը մեծամեծ վան֊քեր էին ։ Վասպուրական նահանգին այ֊

ևայլ գաւառներուն մէջ զատ զատ արքեպիսկոպոսներ ու եպիսկոպոսներ կային, շատերը անկախ իրարմէ:

127. Վասպուրական նահանգին գաւառներն: — Երեսուներվեց գաւառ ունէր Վասպուրական, որ են Ռշտունիք, Տոսպ, Բուզունիք, Արճիշակովիտ, Աղիովիտ, Կուղանովիտ, Առբերանի, Դարանի, Բուժունիք, Առնոյոտն, Անձեւացիք, Ատրպատունիք, Երուանդունիք, Մարդաստան, Արտազ, Ակէ, Աղբակ մեծ, Արճախաձոր, Թոռնաւան, Ճուաշռոտ, Կրճունիք, Մեծնունիք, Պալունիք, Գուկան, Աղուանդրոտ, Պատսպարունիք, Արտաշէսեան, Արտաւանեան, Բաքան, Գաբիթեան, Գազրիկան, Տանկրիայն, Վարաժնունիք, Գողթն, Նախճաւան, Մարանդ:

## Ա. Ռշտունիք.

128. Ռշտունիք կամ Ըռշտունիք գաւառին վրայ գիտելիք: — Ռշտունիք գաւառը կ'իյնայ Բզնունեաց ծովուն մօտ, որոյ անունովը կ'ըսուի նաև Ծով Ռշտունեաց: Բաշատ անունով իշխանէ մը ծագած է գաւառին անունը: Բնակիչքը Սիւնեաց երկրէն գաղթական եկած կը սեպուին, և Վաղարշակայ ատեն նախարարութեանց կարգը անցած: Այս երկիրը խիստ բարեբեր ու զուարճալի է, և երկաթի ու կապարի հանք ունի: — Ռշտունեաց երկրին մէջն է Ընձաքար կամ Ընձաքիսար լեռը Աղձնեաց սահ-

մանակից, որոյ վրայէն սուրբն Յակոբ անի-ծեց Ռշտունեաց երկիրը։ Ետքէն այս լե-րին ոտքը սուրբ Յակոբայ անունով եկե-ղեցի մը շինուեցաւ, ուր զրած էր սրբոյն ճկոյթ մատը, և ատեն անցնելէն ետև շի-նեցաւ քովը նաև փառաւոր վանք մը։ Այս Ընձաքիսար լեռը ետքերը բուսեցաւ կա-պուտողն։

129. Ռշտունեաց գլխաւոր քաղաքները։
— Ռշտունեաց մէջ երևելի էր Ոստան ա-ւանը Բզնունեաց ծովուն մօտիկ, զոր Գա-գիկ Արծրունի թագաւորը շատ զարդարեց ու բերդով ամրցուց։

Մանակերտ, որ Բզնունեաց ծովուն մօ-տիկ է. ուսկից Մանաճիհր Ռշտունի՝ սըր-բոյն Յակոբայ Մծբնայ թեմին մէջէն առած գերիները ծովը նետել տուաւ։

Պարծիս կամ Բծիծ գեղը, ուր է Թովմաս առաքելոյն մարմինը, զոր Հնդկաստանէն հոս բերին և վրան վանք շինեցին, որ կ՚ը-սուէր սուրբ Թովմայի վանք։

Նարեկ գեղը, ուր էր Նարեկայ վանքը որ շինեցաւ տասներորդ դարուն մէջ՝ի միոքը Հայոց հալածուած հայ կրօնաւորներուն ձեռքովը։ Այս վանքէն էր Գրիգոր Նարե-կացի։

130. Աղթամար կղզւոյն վրայ գիտելիք։
— Աղթամար կղզին Բզնունեաց ծովուն մէջն էր Ռշտունեաց ձեռքը։ Այս կղզւոյն մէջ Թէպէտ և Բարգափրան Ռշտունի մի-ջին Տիգրանայ սպարապետը և Դաւիթ Սա-

Հաստոմէ ու Թէոդորոս Ռշտունին շատ շինութիւններ ըրին, բայց ամենէն աւելի պարծանքը եղաւ Գագիկ Արծրունեաց առաջին թագաւորը, որ կղզւոյն չորս կողմը ծովուն յատակը խոշոր քարեր լեցընելով, կղզին ամուր պարսպով պատեց ու մէջը ապահով նաւահանգիստ մը շինեց։ Նոյնպէս գեղեցիկ պարտէզներով ու զուարճալի տեղերով զարդարեց կղզւոյն մէջի քաղաքը։ Անուանի էր մէջը իր շինած թագաւորական պալատը, ու սուրբ Խաչին եկեղեցին, զոր տեսակ տեսակ փորուածներով ու պատկերներով զարդարեց։ Այս եկեղեցւոյն մէջ կը պահուէր Գրիգոր Լուսաւորչին աթոռը, գօտին, գաւազանը և պատարագին սեղանը զոր իրեն հետ կը պտըտցընէր. հոս կը պահուէր նաև սրբոյն Հռիփսիմէի հողաթափն ու փողպատը, այսինքն լաչակը։ Թովմա Արծրունի այս մասունքները Գրիգոր Լուսաւորչին մատնիին հետ Ձորոյ վանքին Հռիփսիմեանց եկեղեցւոյն մէջ պահուած կ'ըսէ։

Աղթամար կղզւոյն արքեպիսկոպոսը տասներորդ դարէն անկախ կաթողիկոս եղաւ Էջմիածնի կաթողիկոսէն, որոյ յաջորդութիւնը ինչուան հիմա կը տևէ։

### Բ. Տոսպ.

131. Վան քաղքին վրայ դիտելիք։ — Տոսպ գաւառին մէջ երևելի է Վան քաղա-

քը որ աշխարհիս հին քաղաքներէն մէկն է, զոր շինեց Շամիրամ Ասորեստանեայց թագուհին, անոր համար իր անունովը Շամիրամակերտ կամ Շամիրամայ քաղաք ալ կ'ըսուի. այն երկրին օդոյն գեղեցկութեանը ու բարեխառնութեանը հաւնելով, ուզեց թագուհին իրեն ամառուան բնակարան մը շինել, որպէս զի ամէն տարի Նինուէէն հոս գայ ամառը անցընելու համար, և շինեց քաղաքը սեպաձև լերին մը ստորոտը, 12,000 գործաւոր ու 600 երևելի ճարտարապետներ աշխատցընելով, ու մէջը զարդարեց մեծամեծ շէնքերով ու պալատներով, և պարսպով պատեց. և նոյն լերին գագաթը շինեց անառիկ ու բոլոր աշխարհիս մէջ անուանի բերդ մը, լերին մէջ փորելով, որոյ պատերուն վրայ չորս կողմը սեպաձև գրերով բաներ գրած կան:—Այս քաղաքը որ առջի բերան Շամիրամակերտ կ'ըսուէր, ետքերը Վան ըսուեցաւ, թերևս հայկազուն Վան նահապետին անունովը, որ Վահէի Հայկազանց վերջի թագաւորին հայրն էր. կամ թէ առջի բերան թերևս աւան կ'ըսուէր, ու ետքերը կրճատուելով ըսուեցաւ վան, ինչպէս որ Շիրակայ աւանը կրճատուելով ըսուած է Շիրակվան: Վան քաղաքը որ առաջ Ռշտունեաց ձեռքն էր ու ետքը Արծրունեաց ձեռքը անցաւ, կ'ըսուի նաև Վանտուր, գաւառին անունը մէկտեղ խառնելով: Այս քաղաքը Վաղարշակ Ա. Նորոգել տուաւ. հոս Տիգրան

երկրորդին ատեն Բագրատիրան Ոչտունի սպարապետը Հրէաստանէն բերած գերի-ները բնակեցուց, որոնք այնչափ շատցան որ չորրորդ դարուն մէջ Շապուհ երկրոր-դին ատեն երբոր Պարսիկները այս քաղ-քին տիրեցին, մէջէն 14,000 տուն Հրէայ Պարսկաստան գերի տարին ։ Լէնկթիմուր Թաթարաց խանը 1392ին յարձակեցաւ այս քաղքին վրայ, ու քառասուն օր պա-շարելէն, ու իր զօրքերէն շատ հոգի ջար-դուելէն ետև, քաղաքացիք սովուն պատ-ճառաւ անձնատուր եղան. և Լէնկթիմուր հրաման տուաւ աղջիկները ու տղաքը գե-րի ընել, ու մնացածները պարիսպէն վար նետելով սպաննել ։ — 1648ին ահագին շարժ եղաւ Վանայ կողմերը, և շատ տու-ներ, եկեղեցիներ, վանքեր կործանեցան, և շատ մարդիկ աւերակներուն տակ թա-ղուած մեռան ։

132. Տոսբ գաւառին ուրիշ քաղաքնե-րը ։ — Արտամետ քաղաք, Վան քաղքին հարաւային դին զոր շինեց Արտաշէս Բ, երբոր Երուանդայ ձեռքէն Պարսկաստան փախչելու ատեն հոս հասաւ ։ Այս քաղա-քը եաքէն Արտաշէս երբոր Թագաւորու-թեան հասաւ, շատ զարդարեց ու բերդով ամրցուց, և իր Սաթինիկ կնոջը աշնանային բնակարան ըրաւ, և անունը դրաւ Արտա-մետ, որ կը նշանակէ Արտաշէսի եկք, ասոր մօտ է Անկղ ըսուած գեղը և վանքը ։

Անուանի են Տոսբ գաւառին մէջ նաև

Սղգայ պզտի գաւառը և բերդը, Կոխոզանեից և Անեստական գեղերը, Զօրափանք կամ Զօրավանք մենաստանը որ ետքերը ըսուեցաւ Սայնապատ, ուր սուրբն Գրիգոր Լուսաւորիչ Հռիփսիմեանց վկայարան մը շիներ էր և մէջը դրեր իր վարդապետական գաւազանը, մատնին ու գօտին։

133. Վարագ լերին վրայ գիւտեր։ — Վարագայ լեռը կ'իյնայ Վանայ արևելեան դին, ուր Հռիփսիմեանք ատեն մը ճգնեցան, և Վաղարշապատ չիգացած հոն թաղեցին Քրիստոսի սուրբ խաչին մէկ կտորը որ հետերնին բերած էին։ Ասիկա եօթներորդ դարուն մէջ Թոդիկ ճգնաւորին աղօթքովը գտնուեցաւ. որ գետնէն դուրս ելլելով ու թռչելով եկաւ մտաւ նոյն լերին վրայ շինած եկեղեցւոյն մէջ, զոր ետքը մեծցուցին ու քովն ալ Վարագ անունով կրօնաւորաց վանք մը շինեցին, ուր կը թաղուէին, կ'ըսէ Մատթէոս Ուռհայեցի, Արծրունեաց թագաւորները։ Այս խաչն է որ կը տօնենք Վարագայ խաչ անուանելով, զոր Սենեքերիմ Վասպուրականի թագաւորը (1020ին) երբոր իր Վասպուրական աշխարհը թողլով Սեբաստիա գնաց, տարաւ հետը նաև Վարագայ խաչը, և հոն Սեբաստիայի քով Սուրբ Նշանի վանքը շինեց, և խաչը հոն դրաւ։ Բայց ատեն անցնելէն ետև նորէն փոխադրուեցաւ Վարագայ լեռը, ուսկից ետքը այլազգեաց ձեռքը անցաւ, որոնք յարձակելով Վարագայ վանքին վը-

բայց՝ կողոպտեցին ամէն հարստութիւնները ու եկեղեցական սպասները, ու խաչն ալ գերի տարին: Այս բանս լսելով վանեցիք շատ ցաւեցան, ու սաստիկ տալով ազատեցին խաչը այլազգեաց ձեռքէն (1650ին), ու տարին Վան քաղաքը, ու ալ չդարձուցին Վարագայ լեռը:

## Գ. Աղբերանի.

134. Աղբերանի գաւառին վրայ գիտելիք: — Աղբերանի գաւառը կ'ըսուի նաև Բերկրացւոց գաւառ և Տարբերունի՝ որ անոր մէկ մասը կ'երևի: Երևելի է մէջը Բերկրի քաղաքը Վանայ ծովուն արևելեան հիւսիսային կողմը, որուն մօտ է Ամիւկ բերդն. — Երիկաս բերդը, Խոշաբերդ գեղը, ու Առեստ աւանը:

## Դ. Առնոյոտն.

135. Առնոյոտն գաւառին վրայ գիտելիք: — Այս գաւառին մէջ թաղուած է, կ'ըսեն, Նոյ նահապետը: Այս գաւառին և կամ Նախճաւան գաւառին մէջ կ'իյնան Տամբատ, Ոսկիողայ, Դաժգոյնք, Վրանջունիք կամ Վրէշունիք աւանները Երասխ գետոյն հարաւային դին. որոց մէջ մեծն Տիգրան բնակեցուց Աժդահակայ Անուշ կինը ու ընտանիքը և ուրիշ շատ գերիներ որ Մարաց երկրէն բերած էր 10,000ի չափ:

## Ե. Անձևացիք.

136. Անձևացիք կամ Անձաւացիք գաւառին վրայ գիտելիք: — Այս գաւառին անունը կ՚երևի թէ երկրին դիրքէն առնուած է, որ անձաւներով այսինքն քարայրերով, ծործորներով ու փոսերով լեցուն է, և բոլոր գաւառը կարծես թէ ապաստանարան է: Վաղարշակ Ա. հոս մասնաւոր նախարարութիւն հաստատեց, որ Բագրատունեաց ժամանակ Արծրունեաց ձեռքը անցած էր:

137. Անձևացեաց երկրին մէջ յիշուած տեղերը: — Անձևացեաց երկրին մէջ կը յիշուին Կանգուար ամուր բերդը, Նորաբերդ ամրոցը, Արճուակաց գեղը, Դարբնոց քար և Ագռաւաց քար ըսուած տեղերը Կանգուարին մօտ Տիգրիս գետոյն մէկ վտակին վրայ, ուր կուապաշտութեան ատեն կախարդաց տեղուանք կային. սուրբ Բարթողիմէոս առաքեալը հոն գալով, ջնջեց զանոնք և Անահտայ կուռքը կործանելով Ագռաւաց քարին տեղը սուրբ Աստուածածնայ պզտիկ եկեղեցի մը շինեց, և հոն դրաւ Յովհաննէս աւետարանչին կիպարիս փայտէ քաշած սուրբ Աստուածածնի պատկերը, զոր առաքեալները իրեն տուած էին. Բարթողիմէոս առաքեալ այս եկեղեցւոյն քով շինեց կուսաստան մ՚ ալ և անուանեց Հոգեաց վանք, և յանձնեց կոյսերուն սուրբ

Աստուածածնի պատկերը ։ — Վարդան աշխարհագիր Հոգւոց վանքին մէջն են կ'ըսէ Տրդատ Թագաւորին, Աշխէն տիկնոջը և Խոսրովիդխտոյ գերեզմանները ։

## Զ. Երուանդունիք.

138. Երուանդունիք գաւառին մէջ յիշուած տեղերը ։ — Երուանդունիք գաւառին մէջ կ'իյնայ Հայոց ձոր ըսուած պզտի գաւառը, որ Հայկ նահապետին անունովը կոչուած է, որոյ մէջն է Հայկաբերդ ըսուած տեղը, զոր մեր Հայկ նահապետը շինեց և Հայք անուանեց, ուր որ Բելայ դէմ ճակատեր էր ։ Ասոր մօտիկ է Աստուածաշէն գեղը, և Գերեզմանք ըսուած տեղը ուր Հայկ զԲէլը սպաննեց ։

## Է. Արտազ.

139. Արտազ գաւառին վրայ գիտելիք ։ — Այս գաւառը առաջ Շաւարշականի կամ Շաւարշան կ'ըսուէր իրեն Շաւարշան[1] գիւղաքաղաքին անունովը, ուր Թագաւորաց ամարանոց կար. բայց ետքէն մեր Արտա-

1 Այս գիւղաքաղաքը կ'երևի թէ մեր հայկազուն Շաւարշ նահապետը շինած է, որ Քրիստոսէ 1300 տարիի չափ առաջ կ'իյնայ, և իր անունովը կոչէր է Շաւարշաւան, որ ետքը կամաց կամաց Շաւարշան փոխուեր է ։

չէս երկրորդին առեն Ալանաց երկրին Արտազ գաւառէն հոս գերի գալով, այս գաւառին առջի անունը փոխեցին ու Արտազ դրին: Հոս է Մակու ըսուած գեղը և բերդը, որոյ մօտիկ է Թադէոս առաքելոյն վանքը, ուր նահատակեցաւ ինքը ու Սանդուխտ կոյսը, և հոն թաղուեցան: Այս վանքը ԺԳ դարուն մէջ կործանեցին թշնամիք, բայց ետքը նոյն դարուն մէջ նորէն շինուեցաւ, ուր արքեպիսկոպոս կը նստէր: Արտազ գաւառին մէջ կը յիշուին Եղինդ և Ներսեհապատ գեղերը, Աւարայր գեղը, որոյ քովի դաշտին մէջ եղաւ Վարդանանց պատերազմը ու նահատակութիւնը:

## Ը. Աղբակ մեծ.

140. Աղբակ գաւառին գլխաւոր քաղաքները: — Աղբակ գաւառին մէջ որ շատ անգամ Պարսկահայոց Աղբակ գաւառէն որոշելու համար կ'ըսուի Աղբակ մեծ, երևելի են Հադամակերտ քաղաքը որ Արծրունեաց ցեղին մայրաքաղաքն էր: — Օսխ գեղը, որոյ մէջն է Սուրբ խաչ ըսուած վանքը, ուր կը թաղուէին Արծրունեաց իշխանները թագաւորութենէն առաջ: — Որսիրանք գեղ, ուր նահատակեցան Ատովմեանք: — Արևբանոս կամ Ուրբանոս քաղաք, ուր նահատակեցաւ սուրբն Բարթուղիմէոս առաքեալ Սանատրուկ թագաւորին հրամանաւը:

### Թ. Թոռնաւան և Ճուաշռոտ.

141. Թոռնաւան և Ճուաշռոտ գաւառներուն մէջ յիշուած տեղերը։ — Թոռնաւան գաւառին մէջ կը յիշուի Նկան ըսուած ամուր և անմատչելի բերդը։ Իսկ Ճուաշռոտ կամ Ճուաշ գաւառին մէջ կը յիշուի Գետս աւանը, որ խիստ զուարճալի տեղ էր Երասխին մօտ, վայրի կենդանիներով լեցուն, ուր Գագիկ Ա. Արծրունեաց թագաւորը իրեն զբօսանաց տեղ ու ամարանոց շինեց։ — Մառակաճ աւանը Կարմիր գետոյն վրայ, որ Արծրունեաց ցեղին թագաւորական ձմեռոցն էր, ուր Գագիկ Ա. Արծրունեաց թագաւորը զանազան շէնքեր շինեց։ — Երևելի են նաև Շամիրամ և Բռակնար բերդերը։

### Ժ. Գողթն.

142. Գողթն գաւառին վրայ գիտելիք։ — Գողթն գաւառը կ՚իյնայ Երասխայ քով Սիւնեաց աշխարհին սահմանակից, ուսկից որ գաղթական եկած էին Գողթն գաւառին բնակիչները։ Այս գաւառին երկիրը խիստ բարեբեր է, մանաւանդ խաղողի կողմանէ, անոր համար ալ կ՚ըսուի Գողթն գինեւէտ. բնակիչները հանճարեղ ու բանաստեղծ, որոնք նուագարաններով կ՚երգէին Հայկազանց քաջութիւնները։ — Քրիստոնէու-

թիւնը մտաւ այս գաւառին մէջ Բարթուղիմէոս առաքելոյն քարոզութեամբը, ուր ինչուան Գրիգոր Լուսաւորչի ատեն տեղ տեղ մնացեր էր ծածուկ կերպով. բայց տեղ տեղ ալ դեռ հեթանոսութիւն կար, զոր սուրբն Մեսրոպ ջնջեց։ Այս գաւառիս եկեղեցական իշխանութիւնը Սիւնեաց ձեռքն էր, և անոնց կը հպատակէին եկեղեցական բաներու մէջ, անոր համար Ստեփաննոս Օրբելեան այս գաւառը Սիւնեաց կը համարի, որ վերջերը ութերորդ դարուն անոնց ձեռքը անցաւ, և անկէց ետև Սիւնեաց գաւառ կը համարուէր։ Այս գաւառին մէջ իններորդ և տասներորդ դարերուն հազարացի ամիրայ մը բռնացած կը տիրէր։

143. Գողթն գաւառին մէջ յիշուած տեղերը։—Ջուղա քաղաք, որոյ մօտիկ Երասխ գետոյն վրայ կամուրջ մը շինուած էր, որոյ պատճառաւ խիստ բանուկ վաճառականութիւն ունէր Պարսկաստանի հետ, և իրեն վաճառականութեանը համար շատ հարուստ ու բազմամարդ քաղաք եղաւ։ 1605ին Շահաբաս Պարսից թագաւորը բոլոր քաղաքը այրեց, ու բնակիչները որ 12,000 տուն կը համրուէին, իրեք օրուան մէջ իրենց քաղքէն հանելով անհնարին նեղութեամբ Պարսկաստան տանել տուաւ, որոնք հոն Սպահան քաղքին քով ընդարձակ աւան մը շինեցին, որ ըսուեցաւ Նոր Ջուղա, և առջինին պէս նորէն վաճառականութեան հետ եղան։

Երևելի են Գողթն գաւառին մէջ նաև Ստարփն քաղաքը, Որդվառ, Ագուլիս և Վանանդ գեղերը, Խրամ և Խոշակունիք աւաններ և այլն։

ԺԱ. Նախճաւան.

144. Նախճաւան կամ Նախիջևան գաւառին վրայ գիտելիք։ — Նախճաւան գաւառը կ'իյնայ Մասիս լերին մօտիկ, Երասխ գետոյն հիւսիսային դին Սիւնեաց սահմանակից, որ ութերորդ դարուն մէջ Սիւնեաց ձեռքը անցած էր Գողթն գաւառին հետ մէկտեղ։ Մէջը երևելի է Նախճաւան կամ Նախջաւան քաղաքը, ուր եղաւ ըստ աւանդութեան՝ Նոյ նահապետին առջի բնակութիւնը տապանէն ելլելէն ետև, և հոն ալ թաղուած է կ'ըսեն։ Այս քաղքին եկեղեցւոյն մէջ այրեցան 704ին կամ ոստիկանին առեն Հայաստանի նախարարներուն շատը իրենց մարդիկներովը մէկտեղ 800 հոգւոյ չափ։ Երեքտասաններորդ դարուն առին թաթարները այս քաղաքը և մէջի բնակիչները թրէ անցուցին։ Այս քաղքին եպիսկոպոսը մեծ պատիւ ունէր, և կ'ըսուէր Մարդպետական կամ Որսանի եպիսկոպոս, որոյ անունը կաթուղիկոսին անունէն անմիջապէս ետքը կը դրուէր։

Այս գաւառիս մէջ կը յիշուին նաև Հաշիճեաց ու Ճահուկ աւանները, Վարազկերտ և Կռուակք գեղերը, Աստապատ ա-

նուանի գիւղաքաղաքը, որոյ մօտ է կարմիր վանքը և շինուած է Երասխ գետոյն քով։

145. Հացիւնեաց խաչին վրայ գիտելիք։ — Հերակլ կայսր երբոր Պարսից դէմ պատերազմի կ'երթար, Հայաստանէն անցնելու ժամանակ Սիւնեաց Բիւրեղ տիկինը դիմացը ելաւ այլևայլ ընծաներով։ Կայսրը երբոր Պարսից Խոսրով թագաւորին յաղթեց ու Քրիստոսի խաչը գերութենէն ազատեց, Բիւրեղ տիկինը շատ ընծաներով նորէն գնաց կայսրը տեսնելու. և շատ աղաչանքով առաւ կայսրէն Քրիստոսի խաչէն կտոր մը, ու երբոր իր երկիրը կը դառնար, ջորին հասնելով Հացիւնեաց դաշտը՝ որ Սիւնեաց երկրին մօտ է, կանգ առաւ ու ալ առաջ չգնաց. և իմանալով Աստուծոյ կամքը, հոն խաչի ժամ ու վանք մը շինեց, որ ըսուեցաւ Հացիւնեաց նշանի վանք, և հոն դրաւ Քրիստոսի խաչը։

## ԺԹ. Մարանդ.

146. Մարանդ գաւառին մէջ յիշուած տեղերը։ — Երևելի է այս գաւառիս մէջ Մարանդ քաղաքը, ուր թաղուած է կ'ըսեն Նոյեմզար Նոյ նահապետին կինը, անոր համար ալ անունը Մարանդ ըսուած է, և անկէց բոլոր գաւառին անունը։ Այս քաղքիս մէջ թաղուած են Տուղրիլեանց Պարսից շահերը։ — Այս գաւառին մէջ կ'իյնայ նաև Բակուրակերտ աւանը։

## ԳԼՈՒԽ ԺԳ.

### Թ. Սիւնիք կամ Սիսական.

147. Սիւնեաց նահանգին անունը ։ — Այս նահանգը Գեղամ նահապետին Սիսակ որդւոյն անունովը կոչուած է Սիւնիք, որուն պարսիկները Սիսական կ՚ըսեն, որ մեր գրոց մէջ ալ կը գործածուի․ իսկ բնակիչները կ՚ըսուին Սիւնի, և քիչ անգամ Սիւնեցի ։ — Սիւնեաց աշխարհը կ՚իյնայ Արարատ նահանգին արևելեան կողմը, Արցախու ու Երասխ գետոյն միջոցը ։ Բերքերուն մէջ կը յիշուի 'ի հնուց մուրտ և նուռ ։ Բնակիչները կտրիճ, զօրաւոր, և ուսման խիստ յարմար, որով երևելի և ուսումնական մարդիկ շատ ելած են այս աշխարհին մէջէն ։

148. Սիւնեաց աշխարհին վրայ պատմական գիտելիք ։ — Վաղարշակ այս նահանգին մէջ մեծ նախարարութիւն հաստատեց, Թէպէտև իրմէ առաջ ալ կար․ ու Հայաստանի արևելեան կողմին կուսակալ դրաւ․ իսկ Տրդատ նոյն կուսակալութեան պաշտօնը պահելով, Սիւնեաց նախարարը իր տէրութեան գլխաւոր ութը իշխաններէն մէկն ըրաւ ։ Այս աշխարհին բնակիչները երկու ցեղ բաժնուած էին մէկը աւե-

լի պատուաւոր, որոյ իշխանը սովորաբար Մեծ, Գահնագլուխ, Գահերէց բառերով մեկալէն կ'որոշուէր, և որ հաւանական կ'երևի թէ Վաղարշակայ ատենը հաստատուած էր. իսկ մեկալը կ'ըսուէր Հայկազուն իշխան, որ կը բնակէր Գեղաքունի գաւառին մէջ Գեղամայ ծովուն մօտ. և այս ցեղը բուն Սիսակէն ելած էր։ Առջի գլխաւոր ցեղը Քրիստոսի 970 թուին ատենը զատ թագաւորութիւն ունեցաւ, որ 196 տարի քշեց և Սիւնեաց այլևայլ գաւառներուն անունովը կ'ըսուէր Բաղաց և Կապանի թագաւորութիւն։

149. Սիւնեաց մէջ Քրիստոնէութիւն մտնելը։ — Քրիստոնէութիւնը այս երկրիս մէջ նախ մտաւ Բարթուղիմէոս առաքելոյն քարոզութեամբը, ետքը Գրիգոր Լուսաւորչին ձեռքովը, բայց անկէ ետքն ալ դեռ տեղ տեղ մնացած էր կռապաշտութիւնը, զոր սուրբն Մեսրոպ բոլորովին ջնջեց։ Այս նահանգին եպիսկոպոսը մեծ պատիւ ունէր, որ ետքը մետրապօլիտ եղաւ, երբոր Նախճաւանու Թէոդորոս մետրապօլիտը հպարտացած կ'ուզէր կաթողիկոսին պէս իր ձեռքին տակը եպիսկոպոսներ ունենալ, առին իրմէ մետրապօլիտի պատիւը ու Սիւնեաց եպիսկոպոսին տուին, որ իր իշխանութեանը մէջ տասուերկու եպիսկոպոս ունէր, և իրեն առանձին նշանն էր ոսկիէ գունտ մը վրան խաչ, պատուանունն ալ Աստուածապատիւ և հոգևոր տէր, որ շատ ան-

գամ կաթողիկոսին ալ կը տրուի։ Խիստ անուանի էր եօթներորդ և ութերորդ դարերուն մէջ Սիւնեաց վարդապետարանը, ուր թէ աստուածաբանական և թէ արտաքին գիտութիւնները ծաղկած ըլլալուն համար, Հայաստանի ամէն կողմէն հոն կ'երթային, ուսկից շատ երևելի մարդիկ ելած են։

150. Սիւնեաց նահանգին գաւառներն։ — Տասուերկու գաւառ կը բաժնուէր Սիւնիք, որ են Երնջակ, Ճահուկ, Վայոց ձոր, Գեղարքունի, Սոտք, Աղահէճք, Ծղուկք, Հաբանդ, Բաղք, Ձորք, Արևիք և Կուսական կամ Կովսական։

## Ա. Երնջակ.

151. Երնջակ գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը։ — Այս գաւառին անունը ելած է Երնջակ բերդին անունէն, զոր շինեց Երնջիկ անունով կին մը Սիւնեաց ցեղէն։ Երնջակ գաւառին մէջ որ Գողթնգաւառին սահմանակից է՝ կը յիշուի Ապրակունիս անունով գեղ մը, և Ապարանց գեղը, ուսկից էր Մխիթար Ապարանցին։

## Բ. Վայոց ձոր.

152. Վայոց ձոր գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը։ — Վայոց ձոր գաւառին անունը որ առջի բերան կ'ըսուէր

Մողնի կամ Մողանի գաւառ, ծագած է ըստ ոմանց՝ ցաւալի դիպուածէ մը, որով տասը հազար հոգիէն աւելի ողջ ողջ գետին անցան ահագին երկրաշարժէ մը որ քառասուն օր տեւեց. բայց հաւանական չէ այս աւանդութիւնը։ Կ'ըսուի նաև Եղեգից ձոր։ Մէջը կը յիշուին Հողոցիմ կամ Խողոցիմ գեղը, Մոշխմաբերդ ամրոցը, Մողանի կամ Մողնի աւանը, ուսկից գաւառին հին անունն ալ. Եղեգիս գիւղաքաղաքը, որոյ անունովը կ'երևի թէ բոլոր գաւառն ալ Եղեգից ձոր կոչուած ըլլայ. Հրաշկաբերդ կամ Հրաշկաբերդ որ Հրասեակ անունով մէկը շինած է, որ և կ'ըսուէր նաև Կապոյտք, զոր պէտք չէ շփոթել Երասխաձորին Կապոյտ բերդին հետ։

153. Վայոց ձոր գաւառին երևելի վանքերը։ — Նորավանք ըսուած եպիսկոպոսանիստ մենաստանը, որ կ'ըսուի նաև Խորաձոր անապատ, և կ'իյնայ Հրաշկաբերդին մօտ, և է Սիւնեաց երկրին հռչակաւոր վանքերէն մէկը, ուր էր Օրբէլեան Սիւնեաց ցեղին գերեզմանատունը։ Խոտակերից վանք որ մշտապաշտօնք կ'ըսուէին. Հերմոնեավանք, Գլաձոր կամ Գայլեձոր որ երեքտասաներորդ դարուն մէջ շատ ծաղկեցաւ. Ցախաց քար ըսուած հռչակաւոր վանքը. Թանահատի կամ Թանատեաց վանք, որ ութերորդ դարուն մէջ խիստ անուանի էր, որոյ կրօնաւորները գիշեր ցորեկ զԱստուած կը փառաբանէին, անոր համար ալ

կ'ըսուէին մշտապաշտօնք, և չոր հաց ու բանջարեղէն միայն կ'ուտէին, իսկ կաթնեղէն ու թան ամենևին չէին ուտեր։

## Գ. Գեղարքունի.

154. Գեղարքունի գաւառին գլխաւոր տեղուանքն։ — Գեղարքունի կամ Գեղաքունի գաւառը՝ որոյ անունը եղած է Գեղամ նահապետին անունէն, կ'իյնի Գեղամայ ծովուն քով, որ նոյնպէս Գեղամ նահապետին անունովը կոչուած է. և քովի լեռն ալ ըսուած է Գեղ կամ Գեղայոյ լեառն։ Մէջը յիշուած անուանի տեղերն են Գառնի գիւղաքաղաքը, զոր շինեց Գեղամ նահապետը և իր անունովը Գեղամի կոչեց. բայց ետքէն Գառնիկ Գեղամին թոռը մէջը շատ շինութիւններ ընելով իր անունովը Գառնի անուանեց։ Տրդատ թագաւոր ասոր մէջը իր քրոջը Խոսրովիդխտոյն համար փառաւոր պալատ մը շինեց, որ 1680ին գետնաշարժէ մը կործանեցաւ. ասոր համար վերջի մատենագիրները Գառնիին կ'ըսէին թախտ Տրդատայ։

Գառնի գիւղաքաղաքէն զատ կը յիշուին նաև Գեղարքունի գաւառին մէջ Գեղայոյ անուանի բերդը, Գեղարքունեաց բերդը, Երերուն, Գառնակեր, Վասակաշէն, Կոփ, Իջառ, Նորատուսն՝ կամ Նորատուս գեղերը, և այլն։

Գառնիին մօտ է Գեղամայ ծովը որոյ

մէջն է Սեւան կղզին որ ամուր բերդ ունէր. անուանի է այս կղզւոյն սուրբ Յարութեան եկեղեցին, զոր Գրիգոր Լուսաւորիչ շինեց 305ին, հոն տեղի կուռքերն ու բագինները կործանելով, և քովն ալ կրօնաւորաց վանք մը շինեց որ ետքերը շատ անուանի եղաւ, և ինչուան հիմա կեցած ու շէն է։

155. Գեղարքունի գաւառին երևելի վանքերը։ — Գեղարքունի գաւառին մէջ երևելի է Այրիվանք որ Հայաստանի հնագոյն վանքերէն մէկն է, և այրի մը մէջ փորուած ըլլալով այսպէս կոչուած է, որ կը կոչուի նաև Գեղարդի վանք կամ Գեղարդավանք, Քրիստոսի կողը մտած գեղարդը՝ ատեն մը հոս պահուելուն համար։ — Աղջոց վանք, զոր Գրիգոր Լուսաւորիչ շինեց։ — — Հաւուց թառ, որ փառաւոր վանք էր Գառնիին մօտ։ — Վանաց վան կամ Վանեվան, զոր շինեց Շապուհ Բագրատունի Հայոց սպարապետը իններորդ դարուն վերջերը։ — Շողագայ վանք, զոր շինեց Սիւնեաց Մարիամ տիկինը իններորդ դարուն մէջ։ — Մաքենիս կամ Մաքենոցք, որոյ կրօնաւորները մաքենի այսինքն էգ ոչխարի բուրդէ զգեստներ հագնելուն համար, վանքին անունն ալ ըսուեցաւ Մաքենիս կամ Մաքենոցք։

### Դ. Սուրբ. — Ե. Աղահեճք.

156. Սուրբ և Աղահեճք գաւառներուն մէջ յիշուած տեղերը : — Սուրբ կամ Սոթք գաւառին օդը զէշ ու միշտ բուք ըլլալուն համար Սորք ըսուած է : Անուանի են մէջը Սուրբ կամ Սորք գիւղաքաղաքը և Վասակաշէն գետը : — Ծար աւանը, որոյ անուանովը Սուրբ գաւառը ետքերը Ծարայ երկիր ըսուեցաւ : — Իսկ Աղահեճք գաւառին մէջ կը յիշուի Խանձանախ գետը, Խոժոռաբերդ և Քաշաթաղ բերդերը, որոց վերջի երկուքին անուանովը այս գաւառն ալ ետքերը կոչեցաւ Քաշաթաղ կամ Քշտաղք և Խոժոռաբերդ։ Երևելի էր Աղահեճք գաւառին մէջ Ծիծռնոյ վանքը կամ Ծիծառնավանքը :

### Զ. Ծղուկք.

157. Ծղուկք գաւառին վրայ գիտելիք : — Ծղուկք գաւառը սահմանակից է Նախճաւանի, և ելած է անունը Ծղուկ գաւառապետին անունէն : Այս գաւառիս մէջն է Շաղատ երևելի գիւղաքաղաքը որ բերդ ալ ունէր, և այս էր Սիւնեաց ցեղին իշխանանիստ տեղը : Այս քաղքիս մէջ կար սրբոյն Ստեփանոսի փառաւոր քարաշէն եկեղեցի մը, որոյ մէջ չորրորդ դարուն վերջերը Անդոկ Սիւնեաց իշխանը թաղել տուաւ անթիւ սրբոց նշխարներ և ուրիշ

շատ եկեղեցական սպասներ բոլոր Սիւնեաց աշխարհէն ժողվելով, և եկեղեցւոյն վրայ ալ հողաբլուր մը շինել տուաւ, որպէս զի Պարսիկները այս եկեղեցին ալ չաւրեն։ Ետքը ատեն անցնելէն ետև Անդովկայ որդւոյն Բաբիկ Իշխանին ատեն դիպուածով մը տեղը յայտնուեցաւ, և Բաբիկ Իշխանը նորէն փորել տուաւ։ Այս Շաղատ քաղքին հիմա Շօռօթ կ'ըսեն։

158. Ծղուկք գաւառին մէջ յիշուած ուրիշ երևելի տեղերը։ — Ծղուկք գաւառին մէջ երևելի են նաև Աղիտու աւանը, Բղեն բերդը, Որոտն գեղը, որոյ զիմացէն կ'անցնի Որոտն ըսուած գետակը, և անունը ելած է որոտաձայն վազելէն. ուսկից ելած է նաև գեղին անունը։ Որոտն գետը իր քովի սահմանովը մէկտեղ իբրև պզտի գաւառ մը կը յիշուի, ուսկից էր Յովհաննէս Կախիկ վարդապետը, որ որոտնեցի ըսուեցաւ։ — Վաղանդն գեղը, որոյ մէջ երևելի է համանուն Վաղանդնու վանքը, զոր շինեց Շահանդուխտ՝ Սիւնեաց Սմբատ Թագաւորին կինը 1001 թուոյն։

159. Տաթևու վանքին վրայ գիտելիք։ — Այս վանքը կ'իյնայ Տաթև գեղին մէջ, և անունը ելած է Եւստաթէոսի անունէն, որ Թադէոս առաքելոյն աշկերտներէն մէկն էր, որուն շատ անգամ Ստաթէ առաքեալ կ'ըսեն, ուսկից կրճատուելով ելած է Տաթև անունը, որ կ'իյնայ Որոտն գեղին մօտ։ Տաթևու վանքը թէպէտ և առաջուց այն-

չափ պատիւ չունէր, բայց ետքէն շատ պատուեցաւ, Սիւնեաց մետրապօլտութեան աթոռը հոս փոխադրուելով: Հոս այլևայլ ատեն շատ շինութիւններ եղան, և Յովհաննէս Սիւնեաց եպիսկոպոսը 896ին առջի հին եկեղեցին որ խախտած էր, հիմնովին նորէն շինեց շատ փառաւոր, որուն մեծ նաւակատիքը եղաւ այլևայլ կողմերէն եպիսկոպոսներ հոն ժողվուելով, նաև Սըմբատ Բագրատունի թագաւորը, Գագիկ Ա. Արծրունեաց թագաւորը և ուրիշ շատ մեծամեծներ: Տասներորդ դարուն մէջ Տաճկները այս եկեղեցին կործանեցին ու վանքն ալ այրեցին, բայց ետքը նորէն շինուեցաւ:

## Է. Բաղք.

160. Բաղք գաւառին վրայ գիտելիք: — Բաղք գաւառին անունը եղած է Բաղակ անունով Սիւնեաց իշխանէ մը, և վերջերը կոչեցաւ Աձէն կամ Աձաւեան, կամ Քաշունիք և Բարկուշատ: Մէջը անուանի է Բաղաբերդ անառիկ ամրոցը որ կ'ըսուի նաև ամրոց Բաղաց, Քար Բաղակոյ, Բաղակ իշխանին անունովը: Այս բերդը Սիւնեաց աշխարհին ամէնէն ամուր բերդն էր, ուր կ'ապաւինէին երկրին բնակիչները պատերազմի ատեն, ուր ամրացաւ նաև Ձնդոկ Սիւնեաց իշխանը պարսից Շապուհ թագաւորին ձեռքէն ազատելու համար, որ իրեք

անդամ՝ պատերազմեցաւ այս բերդիս հետ և չկրցաւ առնուլ։

161. Բաղք գաւառին մէջ յիշուած ուրիշ տեղերը։ — Անուանի են Բաղք գաւառին մէջ Աձանեան կամ Եձանեան բերդը, Բարկուշատ ամրոցը, Արտոյս գեղը, Շեննեու անտառը, Հաշենոր, Խոտաւենան, Նորաշինիկ, Յշտուանեցակերտ, Անտոտկարերդ, Թանձաբերդ, և այլն։ Վանքերու մէջ երևելի են Երիցափանք ուխտը որ մշտապաշտօնք կ՚ըսուին, Վահանաւանք ուխտը զոր շինեց Բաղաբերդին մօտ Վահան անունով իշխան մը 912ին Սմբատ Բագրատունի թագաւորին ատեն, և կոչեց իր անունովը։ Այս վանքիս մէջն են Սիւնեաց թագաւորներուն ու թագուհիներուն և ուրիշ իշխաններուն շատին գերեզմանները։

## Ը. Ձորք.

162. Ձորք գաւառին վրայ դիտելիք։ — Ձորք գաւառը կ՚ըսուի նաև Կապան, որոյ անունովը Սիւնեաց թագաւորութիւնը կոչեցաւ նաև Կապանի թագաւորութիւն, իր Կապան ըսուած ամուր քաղքին համար, որ Սիւնեաց թագաւորանիստ քաղաքն էր և ամուր բերդ ունէր։ Այս գաւառիս մէջ երևելի են Կաքաւաբերդ և Գեղի բերդերը։ Կ՚երևի թէ նոյն ատենները Ձորք կամ Կապան գաւառին սահմանք աւելի ընդարձակուած էր, այսինքն Բաղաց և Կովսա-

կան գաւառներուն մեկ մասը մէկտեղ առնը֊լով ։ Այս Կապան գաւառին հիմա խոտփան կ՚ըսեն ։

## Թ. Արևիք.

163. Արևիք գաւառին մէջ յիշուած տե֊ղերը ։ — Արևիք գաւառին մէջ կ՚երևի թէ հին ատեն շատ արևապաշտներ կային, և մեծ հանդէսով կը պաշտէին արևը, ուսկից ելած է այս գաւառին անունը, որոյ մէջ կը յիշուի Դաշտոռն գեղը, Մեղրի քաղաքը, որոյ անունովը ետքերը գաւառն ալ նոյն֊պէս Մեղրի կոչեցաւ, և ինչուան հիմա ալ նոյն անունը կը տրուի ։

## Ժ. Կուսական.

164. Կուսական գաւառին վրայ գիտե֊լիք ։ — Կուսական կամ Կովսական գաւա֊ռը ետքերը Գրհամ ըսուեցաւ, իր Գրհամ կամ Գուրհամ բերդաքաղքին անուամբը ։ Կը յիշուին այս գաւառիս մէջ Նորաշինիկ կամ Նորաշիրնիք գեղը, Բեխ գեղը, և այլն:

165. Սիւնեաց աշխարհին մէջ յիշուած ուրիշ տեղերը ։ — Սիւնեաց աշխարհին մէջ կը յիշուին ուրիշ այլևայլ քաղաքներ և գեղեր, որոց տեղը յայտնի չգիտցուիր թէ որ գաւառին մէջ կ՚իյնան. ինչպէս են Ոտան գիւղաքաղաքը, Նակորզան կամ Նո֊րակորզան գիւղաքաղաքը, զոր շինեց Բա֊

թիկ Անդովկայ որդին Երասխայ մօտ․ Հայ-րաքբերդ, Կքերբերդ, Շլոռուտ, Վանանդայ և Բորտոյ բերդերը, և այլն։

Սիւնեաց մէջ կը յիշուին նաև Սիոն ա-նուանի մենաստանը, և Տանձափարախ վանքը, որոյ կրօնաւորները խարազնա-զգեստ էին, և այլն։

## ԳԼՈՒԽ ԺԴ.

### Ժ. Արցախ.

166. Արցախ նահանգին վրայ գիտելիք։ — Արցախ նահանգը կ'իյնայ Սիւնեաց ա-րևելեան կողմը, և կը կոչւի նաև Աղուանից աշխարհ, Աղուանից ձեռքը ինկնալուն հա-մար Գ. դարէն ետև. Առանայ աշխարհ, Առան[1] անունով մէկը Վաղարշակայ ատեն Աղուա-նից երկրին նաև Արցախին առաջին կող-մնակալը ըլլալուն համար։ Կ'ըսուի գար-ձեալ փոքր Սիւնիք, իր Սիսական գաւառին անունովը, որ թուն Սիսական երկրէն այս

1 Այս Առան անունով խելացի մարդը որ Սի-սակեան ցեղէն էր, Վաղարշակ Հայաստանի ա-րևելեան հիւսիսային կողմին մեծ կուսակալ դրաւ Կուր գետոյն քով։ Առանին զաւկըներէն ելած էն Գարդմանացիք, Գարգարացիք, Ուտէացիք, Ծօ-դէք կամ Ծոդէացիք՝ որ կը բնակէին Ուտի նահան-գին արևելեան կողմը։

ինքն Սիւնեաց նահանգէն որոշելու համար Փոքր Սիւնիք ըսուած է, վասն զի Գեղամայ որդին Սիսակը տիրած էր նաև Արցախու երկրին: Նոյնպէս Արցախու Հաբանդ գաւառը Սիւնեաց Հաբանդ գաւառէն որոշելու համար կ'ըսուի Միւս Հաբանդ կամ Փոքր Հաբանդ: Վերջի ատենները Արցախու նահանգը ըսուեցաւ Խաչէնք կամ Խաչեն, համանուն անուանի բերդին համար: Երկիրը անտառներով լեցուն ու բերդերով ամրացուցած է, անոր համար աղէկ ապաստանելու տեղ էր:

167. Արցախ նահանգին գաւառները:
— Տասուերկու գաւառ, որ են Միւս Հաբանդ, Վակունիք կամ Վայկունիք, Բերձոր, Մեծկուանք կամ Մեծկողմանք, Մեծիրանք կամ Մեծառունիք, Հարճլանք, Մուխանք, Պիանք, Պարծկանք, Սիսական, Քուստի-փառնէս, և Կողթ [1]:

1 Խորենացին աշխարհագրութեանը մէջ Արցախու գաւառներուն թիւը տասուերկու կը դնէ, բայց կան օրինակներ որոց մէջ անունները տասներչորս կը համրուին, Սիսականէն եւս Քոթայ գաւառ մ'ալ աւելցընելով, ու Քուստափառնէսը իրարմէ զատելով, ու գրելով Քուստի, Փառնէս:

## Ա. Միւս Հաբանդ. — Բ. Վայկունիք.

168. Միւս Հաբանդին մէջ յիշուած տեղերը: — Միւս Հաբանդին մէջն է Ամարաս գեղը, ուր թաղեցաւ սուրբն Գրիգորիս Աղուանից կաթողիկոսը: Հաչենձոր աւանը, որոյ մօտ է Ձեառ բերդը:

169. Վայկունիք կամ Վակունիք գաւառին վրայ գիտելիք: — Վայկունիք գաւառին անունը ելած է Վայկուն անունով աւազակէ մը, որ միջին Տիգրանայ ատեն եկեր կ'աւըրշտըկէր Արցախ նահանգին երկիրը. և հոն ամուր լերին մը տիրելով, իր անունովը Վայկունիք ըսուեցաւ, անկէց գաւառն ալ ետքէն նոյն անունը առաւ:

170. Արցախու մէջ յիշուած ուրիշ տեղերը: — Արցախու մէջ կը յիշուին ուրիշ տեղեր ալ, որոց դիրքը յայտնի չգիտցուիր թէ որ գաւառին մէջ կ'իյնան. ինչպէս են Գանձասար վանքը Համանուն գետին մէջ լերին մը վրայ շինուած, ուր եղաւ Աղուանից կաթուղիկոսարանը Պարտաւ քաղաքին ջրասոյզ ըլլալէն ետև: — Խօխանաբերդ ամրոց Գանձասարի դիմաց, Թարախանայ բերդ, Հայրերք, Ծիրանաքար, Վարդանաշատ բերդերը, Ջրվշտիկ ուխտը, Թաղէի վանքը, և այլն:

## ԳԼՈՒԽ ԺԵ.

### ԺԱ. Փայտակարան.

171. Փայտակարան նահանգին վրայ գիտելիք: — Փայտակարան նահանգը տեղ տեղ Աղուանից անունով կը յիշուի, ասոր գործակալը Աղուանից վրայ ալ տիրելուն համար, և ատեն ատեն անոնց ձեռքը ինկնելուն համար: Երբեմն Մարաց և Ատրպատականի անունով ալ կը յիշուի անոնց սահմանակից ըլլալուն, ու ատեն ատեն անոնց հպատակելուն համար: Կ'իյնայ Փայտակարան նահանգը Ուտի նահանգին հարաւային արևելեան կողմը Երասխ գետոյն քով, և կը ձգուի ինչուան Կասպից ծովը. անոր համար ալ շատ տեղ ազգային և օտարազգի մատենագիրներուն մէջ Փայտակարան նահանգը կ'ըսուի Կասբք, ուսկից ելած է Կասպից ծովուն անունը: Բայց պէտք է գիտնալ որ Կասբք կ'ըսուին Կասպից ծովուն արևմտեան կողմը ինկած Փայտակարան նահանգին շրջակայ երկիրներն ալ, Աղուանքէն սկսեալ ինչուան Մարաց երկիրը: Անոր համար ոմանք Կասբը կը դնեն Մարաց և Պարթևաց երկրին մէջ. ոմանք կը դնեն այն տեղը ուսկից Կուր գետը ծով կը թափի, որ է մեր Փայտակարան նահանգը Աղուանից սահմանակից. ոմանք

ալ կը դնեն Աղուանից մէջ, որով Թերևս կ'իմանային մեր Փայտակարան նահանգը ։

172 . Փայտակարան նահանգին գաւառները ։ — Փայտակարան նահանգը տասներկու գաւառ կը բաժնուէր, որ են Հրաքոտպերոժ, Վարդանակերտ, Եօթնփորականեան բագինք, Ռոտիբաղա, Բաղանռոտ, Առոսպիժան, Հանի, Աթլի, Բագաւան, Սպանդարանպերոժ, Որմզդպերոժ և Ալևան ։

Այս նահանգին մէջ խիստ առատ ու ազնիւ բամբակ կ'ելլէ, գարին ալ շատ առատ է ու ինքիրեն կը բուսնի ։ Մեր մատենագրաց մէջ շատ յիշատակութիւն չկայ աս գաւառին մէջ եղած տեղերուն վրայ, որովհետև շատ անգամ օտար ազգերու ձեռք էր և կամ ինքնագլուխ . ինչպէս Խորենացւոյն ատեն Ատրպատական աշխարհին տակն էր ։

173 . Փայտակարան նահանգին մէջ յիշուած քաղաքները ։ — Կը յիշուի Փայտակարան քաղաքը, որոյ տուները, պատուարները, պարիսպները և ուրիշ ամէն շէնքերը մայր փայտէ շինած ըլլալուն, քաղքին անունն ալ Փայտակարան ըսուեցաւ, կ'ըսեն, իբր Փայտեայ բնակարան ։ Այս քաղքին անունով նահանգն ալ նոյնպէս կոչեցաւ ։

Վերջի մատենագիրներէն ոմանք, ինչպէս Թովմա Արծրունի, Թովմա Մեծոփեցին, Երզնկացին, Վարդան աշխարհագիրը, կ'ըսեն թէ Փայտակարան քաղաքը

վերջերը Տփխիս ըսուեցաւ · բայց կ'երևի սխալմունք մը , վասն զի յայտնի է որ շատ հեռու է Տփխիսէն Վրաստանի մայրաքաղաքը։

Փայտակարան նահանգին մէջ կը յիշուի նաև Վարդանակերտ քաղաքը Երասխ գետոյն հիւսիսային կողմը , որոյ անունէն ելած է Վարդանակերտ գաւառին անունը , և շինած է Վարդան անունով մէկը · բայց որ Վարդանն է յայտնի չգիտցուիր։ — Կը յիշուին դարձեալ Տիգրանակերտ աւանը, որ զատ է Աղձնեաց Տիգրանակերտ քաղքէն։ — Բագուս քաղաքն ալ որ ինչուան հիմա կեցած է Կասպից ծովուն քով , թերևս Բագաւան գաւառին մէջ կ'իյնար , որոյ անունէն կ'երևի թէ հին ատեն մէջը շատ բագին կար։

## ԳԼՈՒԽ ԺԶ·

### ԺԲ · Ուտի ·

174 · Ուտի նահանգին վրայ գիտելիք։ — Ուտի նահանգը Երասխին հիւսիսային կողմը կ'իյնայ , Կուր գետոյն և Արցախին մէջ տեղը։ Բնակիչները Սևորդիք կ'ըսուէին, իրենց Սև նահապետին անունովը։ Ուտէացիք Առանի զաւկին սերունդն են , որ Սիսակի ցեղէն էր · բնութեամբ բիրտ և ապըստամբ մարդիկ էին , ինչպէս կ'ըսէ Յով-

հանդէս կաթողիկոս, և մինչ ուղղակու-թեան հետ եղող։

Ուտի նահանգը որ սահմանակից է Ա-ղուանից, այլևայլ ժամանակ անոնց ձեռ-քը անցեր էր, ինչպէս նաև Խորենացւոյն ատեն, անոր համար շատ անգամ Աղուանից անունով կը յիշուի։ Երկրին մէկ մասը ըն-դարձակ դաշտագետին է Կուր գետոյն քով, մէկ մասն ալ անտառներով, անձաւնե-րով լեցուն. բերքերուն մէջ առանձին կեր-պով կը յիշուի փարնկենի, ձիթենի, աղ, բամբակ, և այլն։

175. Ուտի նահանգին գաւառները։ — Ուտի նահանգը ութ գաւառ կը բաժնուի, որ են Արանռոտ, Տռի, Ռոտպացեան, Աղուէ, Տուչքատակ, Գարդման, Շիկաշէն կամ Շա-կաշէն, և Ուտի առանձնակ[1]։

## Ա. Գարդման.

176. Գարդման գաւառին վրայ գիտե-լիք։ — Գարդման Ուտի նահանգին երևե-լի գաւառն է, որ վերջերը շատ ընդարձակ կը ձգուէր։ Կը յիշուին մէջը Գարդման ա-նունով բերդ մը։ — Շամքոր պարսպապատ քաղաքը, զոր 1600ին ատեններ Շահա-

1 Խորենացւոյն աշխարհագրութեան օրինակ-ները գաւառներուն թիւը եօթն կը դնեն, բայց համրելու ատեն ութ կը համրեն Ուտի առանձինն ալ սեպելով. ինչպէս որ շիտակն ալ այս է։

բաս Պարսից Թագաւորը առաւ ու մէջը շատ կոտորած ըրաւ։ — Միհրաւան քաղաք, զոր շինեց Պարսից Խոսրով Թագաւորին Միհր ազգականը և իր անունովը կոչեց։ — Երևելի են Գարդման գաւառին մէջ Նաև Գետաբակս, Տէրունականք, Փառհերձ և Երգէվանք բերդերը և այլն։ Երգէվանքին դիմացը կ'իյնայ Խորանաշատ վանքը, մէջի եկեղեցիներուն շատութեանը համար այսպէս ըսուած է, զոր շինեց Վանական վարդապետ երկքտասաներորդ դարուն մէջ, և հոն թաղուեցաւ։

## Բ. Շակաշէն.

177. Շակաշէն կամ Շիկաշէն գաւառին վրայ գիտելիք։ — Շակաշէն գաւառին երկիրը շատ բարեբեր է, ինչպէս որ կը վըկայէ Ստրաբոն ալ, և կ'իյնայ Կուր գետոյն եզերքը։ Գաւառին անունը ելած է Սակք ըսուած ազգէն, որ Սկիւթացւոց մէկ ցեղն է, և կը բնակէին Մազքթաց երկրին սահմանները. և յարձակեցան Հայաստանի պտղաբեր երկրին վրայ, և իրենց տիրած երկիրը անունոմնին Սագասէնի կոչեցին, որ է մեր Շակաշէն գաւառը։ Անկէց վազեցին Կապադովկիոյ ու Պոնտոսի կողմերը, ու հոն Պարսից նախարարներէն յաղթուելով ջարդուեցան։

178. Շակաշէն գաւառին մէջ յիշուած տեղերը։ — Շակաշէն գաւառին մէջ երևե-

մն է Գանձակ քաղաքը, զոր շինեց Վլիթ փառոգոս անունով մէկը Թագաւորական հրամանաւ Քրիստոսի 847 թուականին։ Այս քաղաքը առեն առեն Աղուանից ձեռքը անցնելով՝ անոնց մայրաքաղաքը եղած էր։ Պարսիկները 1088ին պատերազմով տիրեցին քաղքին, և մէջը շատ աւեր և կոտորած ըրին։ Նոյնպէս 1235ին տիրեցին Թաթարները, ու քաղաքը կողոպտելով մեծ մասը կործանեցին, բայց ետքէն նորէն նորոգեցաւ, և ինչուան հիմայ այն կողմերուն գլխաւոր քաղաքն սեպուած է։ Հոս ծնաւ Մխիթար Գոշ վարդապետը երկոտասաներորդ դարուն կէսին, և իր աշակերտը Կիրակոս պատմիչ։

Շակաշէն գաւառին մէջ երևելի է նաև Ջարեք բերդը որ Գանձակին մօտերը կ'իյնայ։

## Գ. Ուտի առանձնակ.

179. Ուտի առանձնակին երևելի տեղերը։—Այս գաւառիս մէջ՝ որ Գարգարացւոց նախարարութեան ձեռքն էր, երևելի էր Պարտաւ քաղաքը, զոր շինեց, կ'ըսեն, մեր Հայկ Նահապետին Բարտոս եղբայրը, որ այն կողմերը գնաց բնակեցաւ, և քաղքին անունն ալ իր անունովը Պարտաւ կոչեց։ Ոմանք կ'ըսեն թէ մեծն Աղեքսանդր շինած է, բայց կ'երևի թէ նորոգած ու ամբողջացուցած է, չէ թէ նոր շինած։ — Նոյնպէս

նորոգութիւն պէտք է իմանալ Աղուանից պատմչին ըսածն ալ, որ կը դնէ թէ Պարսից Պերոզ թագաւորին հրամանաւը շինեց Վաչէ Աղուանից թագաւորը այս քաղաքս, և անուանեց Պերոզապատ, որ ետքը Պարտաւ ըսուեցաւ, և Աղուանից թագաւորանիստ մայրաքաղաքը եղաւ. նոյնպէս նաև կաթողիկոսարաննին Ձորայ քաղքէն հոս փոխադրեցաւ, ուր կը յիշուի վեցերորդ դարէն սկսեալ մինչեւ երկոտասաներորդ դարը։

Ուտի առանձնակին մէջ կը յիշուի Կաղանկատուաց գեղն ալ, ուսկից էր Մովսէս որ Աղուանից պատմութիւնը գրեց։

180. Ուտի նահանգին մէջ յիշուած ուրիշ տեղերը։ — Խաղխաղ քաղաքը, որ շինուած էր Լոփնաս գետոյն քով, և առաջ Հայոց, ետքը Աղուանից թագաւորական ձմերոցը եղաւ։ Կը յիշուին նաև Մածնաբերդ ամրոցը, Լորոտ, Ոսեկան, Տուս, Դուտական, Գիս կամ Գիտ գեղերը, և այլն։ Ուտի նահանգին հիւսիսային ծայրը կ՚իյնայ Հնարակերտ կամ Հոռեակերտ հին ամուր բերդն ալ Աղուանից սահմանակից, որ տեղ տեղ Աղուանից մէջ կը դրուի. բայց ինչպէս որ ըսինք, Ուտի նահանգին քաղաքները շատ անգամ Աղուանից անունով կը յիշուին, անոնց իշխանութեան տակն ըլլալնուն համար։

# ԳԼՈՒԽ ԺԷ·

## ԺԳ · Գուգարք ·

181 · Գուգարք նահանգին վրայ գիտելիք ։ — Գուգարք նահանգին մեծ մասը ժառանգեց Գուշար, որ Շարայի զաւկըներուն մէկն էր, այսինքն Մթին լեռնէն ինչուան Հնարակերտ ամրոցը · և թերևս իր անունովը աշխարհն ալ Գուշարք ըսուելու տեղ Գուգարք ըսուեր է ։ Վաղարշակ հոս մեծ բդեշխութիւն հաստատեց Գուգարացւոց անունով, որպէս զի Հայաստանի հիւսիսային կողմը կովկասային աւազակող ազգերէն պահէն ։ Այս նահանգին զանազան մասերը այլևայլ ժամանակ Վրաց ձեռքը անցան հին ատենէն'ի վեր, մանաւանդ հիւսիսային կողմը · իսկ չորրորդ դարուն, ինչպէս կը վկայէ Խորենացին, բոլոր Վրաց ձեռքն էր, անոր համար մէջի բդեշխն ալ երբեմն բդեշխ Գուգարացւոց և երբեմն բդեշխ Վրաց կ'ըսուէր ։

Երկիրը լեռնոտ է, բայց բարեբեր · բերքերուն մէջ մասնաւոր կը յիշուին հաճար, սերկևիլ, տօսախ, և ազնիւ բամբակ ։ Ստրաբոն յոյն աշխարհագիրն ալ շատ կը գովէ Գուգարք նահանգին պտղաբերութիւնը, և կ'ըսէ թէ մէջէն առատ ձէթ կ'ելլէ ։

182. Գուգարք նահանգին գաւառներն ։ — Գուգարք ինն գաւառ ունէր, որ են Ձորոփոր կամ Ձոր, Ծորոփոր կամ Ծոր, Կողբոփոր կամ Կողբ, Տաշիր, Թռեղք, Կանգարք, Արտահան, Ջաւախք և Կղարջք :

## Ա. Ձորոփոր.

183. Ձորոփոր գաւառին մէջ յիշուած տեղերը ։ — Ձորոփոր գաւառին մէջ, որ կ՚ըսուի նաև Ձորափոր, Ձորոց փոր կամ սոսկ Ձոր, կը յիշուի Կայեան անառիկ բերդը, զոր շինեց ԺԳ դարուն սկիզբը բլրոյ մը վրայ Յովհաննէս արքեպիսկոպոսը Զաքարէի և Իւանէի քեռորդին, Հաղբատու և Սանահնի վանքերուն մօտ, Հաղբատայ վանքին ապահովութեանը համար ։ Կը յիշուին նաև Մահկանաբերդը, Կայծոն բերդը, Արքունաշէն, Համսառի և վաշխէ գեղերը, և Ցգրկածով գեղ՝ համանուն մերձակայ ծովակին անունովը կոչուած, որ Գետիկ վանքին մօտ կ՚իյնայ ։

Այս գաւառիս մէջ երևելի են Խճաւոր վանքը, և Գետիկ հռչակաւոր վանքը Աղստեւոյ գետոյն քով, որ գետնաշարժէ մը կործանեցաւ, և ետքը Մխիթար Գոշ՝ Վրաց Իւանէ և Զաքարէ իշխաններուն օգնութեամբը նորէն շինել տուաւ Տանձուտ ըսուած ձորոյն մէջ, և ինքն ալ հոս թաղուեցաւ ։

184. Հաղբատ և Սանահին վանքերուն

վրայ գիտելիք ։ — Այս երկու հռչակաւոր վանքերը որ մէկմէկու դիմաց շինուած են համանուն գեղերուն մէջ, կ'իյնան Լոռի քաղքին արևելեան կողմը, և մօտերը Անոր- դեաց երկրին որ է Ուտի աշխարհը ։ Սա- նահինին վանքը աւելի հին է, և բնակիչները կ'ըսեն թէ Գրիգոր Լուսաւորչէն հիմնար- կած է, որոյ եկեղեցին կը կոչուի սուրբ Ա- տուածածնի անուամբ, ուր թաղուած են Գուրգէն՝ Աշոտ Ողորմածին որդին, և ուրիշ երևելի մարդիկ ։ Այս երկու վանքերուն մէջն ալ այլևայլ նորոգութիւններ ըրաւ 960ին խոսրովանոյշ թագուհին Աշոտ Ո- ղորմածին կինը. Նոյնպէս մետասանե- րորդ դարուն Կորիկէ կամ Կիւրիկէ թա- գաւորը այլևայլ շինութիւններ ըրաւ, և Հաղբատայ մէջ առանձին եպիսկոպոս դնել տուաւ ։ Հաղբատու վանքը մայրաքա- ղաք կ'ըսուէր, ինչպէս նաև Հայաստանի ուրիշ մեծամեծ վանքերն ալ, ուր որ մետրա- պոլիտ կը նստէր մայրաքաղաք կ'ըսուէին ։ Հաղբատու վանքին եկեղեցին որ կը կո- չուի յանուն սուրբ Նշանի, շինեց Աշոտ Ո- ղորմածին խոսրովանոյշ կինը 968ին ։ Հաղ- բատու ու Սանահնի վանքերուն մէջ 500 կրօնաւոր կային, ոմանք քարձ կը հաղ- նէին իրենց պարեգօտին տակէն, մէջքեր- նին չուան, ոտքերնին բոպիկ, ու գիշեր ցո- րեկ սաղմոսերգութեամբ կ'անցընէին, մա- նաւանդ Սանահնի կրօնաւորները ։

## Բ. Տաշիր.

185. Տաշիր գաւառին մէջ յիշուած տեղերը: — Տաշիր գաւառին մէջ որ սահմանակից է Այրարատայ Աշոցք գաւառին, կը յիշուի Լոռի քաղաքը զոր շինեց Դաւիթ Անհողին ԺԱ. դարուն, որոյ որդին Կորիկէ կամ Կիւրիկէ Բագրատունեաց ցեղէն կը թագաւորէր այս քաղքիս մէջ, և իրեն ցեղէն մէկ քանի թագաւորներ ալ յաջորդեցին: Հիմայ այս քաղաքը աւերակ է: Շամշուլդէ բերդաքաղաքը որ Հայկայ Քարթլաւս եղբայրը շինեց և անունը դրաւ Օրբէթ, որ ետքը Շամշուլդէ կամ Շամշոդդէ ըսուեցաւ, որ ըսել է Վրաց լեզուով երեք նետ. հոս եղաւ Օրբէլեանց ցեղին սկզբնաւորութիւնը:

Տաշիր գաւառին մէջ կ'իյնան նաև Խորխոռունիք կամ Խոշոռնի աւանը, Խոռակերտ բերդաքաղաքը, Բագակերտ կամ Բագոռնիք անառիկ բերդը բլրոյ մը վրայ շինած Հայոց Բագ նահապետէն. Աղստեւ կամ Աղստեւ աւանը. Օձուն գեղը Լոռիի մօտ, ուսկից էր Յովհաննէս իմաստասէր Օձնեցին. Սամխէթ բերդաքաղաքը, Վարդաբլուր և Կորդան գեղերը, և այլն:

Տաշիր գաւառին հիմա կ'ըսեն Բամբակի ձոր:

Տաշիր գաւառին մէջը կ'իյնայ նաև Քոպայր կամ Քոբայր անուանի վանքը, և Հոռոմայր ուր Վասիլ անունով իշխան մը՝ որ ութե-

րորդ դարուն մէջ կայսրէն դեսպան խըր-կուեր էր Հայաստան, տասնըհինգ տարի ճգնութիւն ըրաւ, անոր համար իր անու-նով բնակած այրն ալ Հոռոմայր ըսուեցաւ։ Այս իշխանը հետը բերած էր Հոռոմոց երկ-րէն Քրիստոսի խաչափայտին կտոր մը, որ ըսուեցաւ Հոռոմայրի սուրբ նշան, որով շատ հրաշք կ'ըլլային։ Նոյն տեղը ետքը Հոռոմայրի անունով վանք մը շինեց Զա-քարիա սպասալարը 1188ին։

## Գ. Արտահան. — Դ. Ջաւախք.

186. Արտահան և Ջաւախք գաւառնե-րուն վրայ գիտելիք։ — Արտահան գաւա-ռին մէջ երևելի են Արտահան և Ծուշնդայ գիւղաքաղաքները, զորոնք շինեց Ծաւա-խոս Մցխեթոսին որդին։ — Իսկ Ջա-ւախք գաւառին մէջ որոյ անունը եկած է Մցխեթոսին Ծաւախոս որդւոյն անունէն, կը յիշուին Ակուրի գեղը, ուսկից էր Կիւ-րիոն Վրաց կաթուղիկոսը։

Ախալ քաղաք, որ Վրաց լեզուով ըսել է Նոր քաղաք, շատ բազմամարդ ու ծաղկած քաղաք էր, երբ 1065ին Ալփասլան սաս-տիկ պատերազմով առաւ, ու մէջը սոսկա-լի ջարդ ընելով թալլեց քաղքին հարստու-թիւնը ու շատ մարդ գերի տարաւ։

Կը յիշուին նաև Դըլիշեկն և Խոզափիր գե-ղերը։

187. Գուգարք նահանգին մէջ յիշուած

ուրիշ տեղերը : — Գուգարք նահանգին մէջ կ'իյնան, Գիմաւրիք կամ Գոմաւրիք քաղաքը, Գագ անուանի բերդը, որոյ ծայրը սուրբն Մեսրոպ եկեղեցի մը շինեց և մէջը խաչ մը տնկեց որ կ'անուանէր սրբոյն Սարգսի անունովը, ուսկից շատ հրաշքներ կ'ըլլային : Խոնաւ կամ Խոշաւ հին քաղաքը կուր գետոյն քով Գուգարք նահանգին ծայրը, զոր շինեց Քաջթլաւս Հայկայ եղբայրը, որ Հունարակերտին մօտ էր, կամ թէ նոյն իսկ Պղնձահանք աւանը, Ցուրտաւ քաղաքը, և այլն :

## ԳԼՈՒԽ ԺԸ.

### ԺԴ. Տայք.

188. Տայք նահանգին վրայ գիտելիք : — Տայք նահանգը կ'իյնայ Գուգարաց արևմտեան կողմը. երկիրը անտառային լեռնոտ և պտղաբեր է. բերքերուն մէջ առանձին կը յիշուին աղտոր (սօմագ), թուզ, նուռ, սերկևիլ, նուշ և այլն : Տայք նահանգին մէջ պատսպարելու համար ամուր տեղեր շատ կան, և երկիրը բերդերով լեցուն է, անոր համար Խորենացին բերդերով և ամրոցներով շինած է կ'ըսէ Տայք նահանգը : Երկայն ատեն Վրաց ձեռքն ընկաւ այս նահանգը, նաև ինչուան վերջտասաններորդ

դարուն ատենները, որուն 1580ին Տաճկըները տիրեցին:

189. Տայք նահանգին գաւառները: — Տայք ինն գաւառ ունէր. որ են Կող, Բերդաց փոր, Պարտիզաց փոր, Ճակատք կամ Ճակք, Բուխա, Ոքաղէ, Ազորդ, Կաւխոր և Առեաց փոր:

190. Տայք նահանգին մէջ յիշուած տեղերը: — Արահեղ գեղ՝ ուսկից էր Գիւտ կաթողիկոս, Ջենակս և Վարդաշէն գեղերը, Երախանի բերդը, Թուխարս կամ Թողարս անառիկ բերդը Ճորոխ գետոյն վրայ շինած. Ոսխտիք բերդաքաղաքը, որ է Օլթի. և Հաւաձիչ քաղաքն. Մամրուան աւանը որ հիմայ Նարիման կ'ըսուի. Իշխանաց գեղը, որոյ մօտիկ է Մամցխէ, որ վրացերէն ըսել է Իրեք բերդ, և շինեց Վրաց երկրին մէջ մեր Սմբատ Բիւրատեան Արտաշէս Բին սպարապետը հիւսիսային ազգերուն ու Վրաց յաղթելով, ու մէջը պահապան զօրք դրաւ: — Տայոց մասն կ'երևայ Ախլցխա, զոր Վրացիք շինած են, և կ'ըսեն իրենք Ախալցիխէ, որ ըսել է Նոր բերդ:

Տայոց նահանգին մէջ կ'իյնայ խառնշտափ ըսուած երկիրն ալ, որ Համամաշէնէն օրուան մը ճամբայ հեռու է:

# ԳԼՈՒԽ ԺԹ.

## ԺԵ. Այրարատ.

191. Այրարատ նահանգին անունը: — Այս հռչակաւոր նահանգին անունը եղած է Արայ Հայկազն նահապետին անունէն, որ նախ գրուեցաւ այն դաշտին վրայ ուր Արայ Շամիրամայ հետ պատերազմելով ընկաւ մեռաւ, և ետքը դաշտին անունէն բոլոր նահանգն ալ Այրարատ կամ Արարատ ըսուեցաւ: Այս աշխարհը Հայաստանի մէկալ նահանգներուն մէջ տեղը ըլլալուն համար, Միջոց աշխարհի և Միջնաշխարհ կը կոչի, որ Յունաց և Հռովմայեցւոց այնչափ ծանօթ չէ, իրենց սահմանէն հեռու ըլլալուն համար:

192. Երկրին բարեբերութիւնը: — Երկիրը խիստ բարեբեր է և պարարտ. ամենայն տեսակ բոյս, արմտիք, և հոտաւէտ ծաղիկներ ու պտուղներ կը բուսցընէ, անոր համար ամենաբոյս, ամենալի և ամենագիւտ ածականներով և ուրիշ ասոնց նմաններով մեր մատենագիրները կը գովեն այս նահանգը: Կը գտնուի մէջը ոսկիի, արծըթի, պղնձի և պատուական քարերու հանքեր, որդան կարմիր ըսուած ճճին՝ որ կը ծնանի բոյսերու տերևներուն վրայ, ուսկից

ագնիւ ծիրանեգոյն կարմիր ներկ կ՚ըլլայ ։ Կենդանիներէն կը գտնուի ցիռ, վայրի այծ, եղջերու, վարազ, կաքաւ, սալամբ, կարապ, սագ, և ուրիշ տեսակ տեսակ ընտանի և որսի կենդանիներ և թռչուններ ։ Մէջէն կ՚անցնի Երասխ գետը և ուրիշ մանր գետակներ . ունի ընդարձակ դաշտեր և Մասիս ու Արագած լեռները, և ուրիշ լեռնակներ որ որսոյ կենդանիներով լեցուն են։

193 . Այրարատ նահանգին վրայ պատմական գիտելիք ։ — Ինչպէս որ հին ատեն հայկազուն նահապետաց և թագաւորաց բնակարան էր այս նահանգը, որով Սուրբ Գիրք Այրարատ կ՚անուանէին զՀայաստան, այսպէս ալ Արշակունեաց ատեն, ուր միայն թագաւորը կը բնակէր իր մէկ որդւովը մէկտեղ, որ իրեն կը յաջորդէր, անոր համար այս Այրարատ նահանգը կոչուած թագաւորաց կ՚ըսուէր, ուր Արշակունեաց ատեն հինգ թագաւորանիստ քաղաքներ շինուած են ։

194 . Այրարատ նահանգին գաւառները ։ — Խորենացի քսան գաւառ կը բաժնուի կ՚ըսէ Այրարատ, ու տասնուինը կը դնէ . որ են Բասեան, Գաբեղեանք, Աբեղեանք, Վահեւունիք կամ Հաւունիք, Արշարունիք, Բագրեւանդ, Ծաղկոտն, Շիրակ, Վանանդ, Արագածոտն, Ճակատք, Մասեացոտն, Կոգովիտ, Աշոցք, Նիգ, Կոտայք, Մազազ, Վարաժնունիք, Ոստանն Դուինայ մինչև ցՇարուր ։ Ոմանք այս վերջին գաւա-

որ երկու կը բաժնեն այսպէս . Ախուանն և Դերձեան քաղաքէն մինչև ցԾարուր, որով կ'ըլլայ քսան գաւառ . ոմանք ալ Ծարուրը զատ գաւառ կը դնեն ։

### Ա . Բասեան .

195 . Բասեան գաւառին վրայ գիտելիք ։ — Բասեան գաւառը առաջ աւելի ընդարձակ էր . մէջէն կ'անցնի Երասխ գետը , որ երկու մաս կը բաժնէ զգաւառը . մէկ մասը կ'ըսուի Անփայտ և Վերին Բասեան , վառելու փայտ ամենևին չունենալուն համար , իսկ մէկալ մասը Ստորին Բասեան : Երբոր Արշակ Ա.ին ատեն Բուլղարի կողմէն Հայաստան գաղթական եկաւ Վղնդուր Վնդայ առաջնորդութեամբը , Արշակ բնակեցուց զերենք Անփայտ և Վերին Բասեան ըսուած տեղը , որ իրենց Վունդ առաջնորդին անունովը կոչեցաւ Վանանդ , և անկէ ետքը զատ գաւառ եղաւ ։

Երկիրը դուր ըլլալով շատ պտղաբեր է ։

196 . Բասեան գաւառին մէջ յիշուած տեղերը ։ — Որդորու գեղ , ուսկից ելած է Որդունի ցեղին անունը , նախ հոս բնակելուն համար ։ — Դուռ գեղ Որդորու գեղին մօտ , և շինուած է Արծաբաղբերք ըսուած դաշտին մէջ , ուր շատ աղբիւրներ կը բխին , երկուքն ալ Կարնոյ սահմանին մօտ են ։ Վաղարշաւան զոր շինեց Վաղարշ թագաւորը , Այրարատայ ձմերոցը երթալու ա-

տեն, հոն տեղը ճամբուն վրայ մայրը զինքը ծնանելուն համար, որ կ'իյնայ Մուրց գետոյն Երասխայ հետ խառնուելու տեղը։ Այս քաղաքը Թուրքերը կործանեցին որ հիմա աւերակ է, և քովը պզտի գեղ մը կայ Փէօփիրիւ քէօյի ըսուած։

Պրոկոպիոս Բասեան գաւառին մէջ կը յիշէ Ղեոնդուպոլիս անունով քաղաք մը, որ երբեմն Յուստինիանոս կայսեր անունովը ըստացեր է Յուստինիանուպոլիս, որ նոյն կ'երևի հիմակուան Հասանղալա քաղքին հետ, որ ամուր բերդ ունի և չորս կողմը պարսպով պատած է։ Այս քաղքիս մօտ է եօթն կամարով շինած քարաշէն անուանի կամուրջը Երասխ գետոյն վրայ, որոյ հիմը կ'աւանդեն թէ հայ հովիւ մը ձգելուն համար Ջօպան քէօփրիւսիւ ըսուած է։

Անուանի են Բասեան գաւառին մէջ Աշկամի կամ Օկոմի բազմամարդ աւանը Հասանղալայի մօտ Տիրանեայ լեռան ստորոտը շինած։ — Մժնկերտ աւանը, Բողբերդ ամրոց, Աշնիկ անառիկ բերդ. Վաղաշէր, Գոմաձոր, Աղվար և Մայլքորա գեղերը։

Բ. Գաբեղեանք. — Գ. Աբեղեանք.

197. Գաբեղեանք և Աբեղեանք գաւառները։ — Այս գաւառներուն անունը ելած է նոյն ցեղերուն առաջին նախարարներուն անունէն, որ կ'ըսուէին Գաբաղ և Աբեղ,

ուսկէց ելան Գարեղէն և Արեղէն նախարարութիւնները։

Գարեգեանք գաւառին մէջ կը յիշուի Վիշապաձոր ըսուած տեղը, ուր շատ օձեր և վիշապներ կային, և ետքերը ըսուեցաւ Գազանածակք և Թարշոյ վանք՝ սուրբն Թաթուլ ճգնաւորը հոն բնակելուն համար։

## Գ. Արշարունիք.

198. Արշարունիք գաւառը։ — Այս գաւառը Այրարատայ երևելի և ծաղկած գաւառներէն մէկն է, որ առջի բերան կ՚ըսուէր Երասխաձոր, և ետքը Արշաւիր կամսարականին անունովը Արշարունիք կոչեցաւ, որուն տուաւ Տրդատ Երասխաձոր գաւառը։ Առեն անցնելէն ետև Արշակ Բ Կամսարական ցեղը բոլոր ջարդել տուաւ, ու երկիրը տէրութեան գրաւեց. բայց ետքէն Արշաւրի որդւոյն Սպանդարատին ձեռքովը՝ որ փախեր էր այս կոտորածէն, նորէն բազմացաւ Արշարունեաց ցեղը, որ եօթներորդ դարուն մէջ շատ ծաղկած էր գիտութեան կողմանէ, և երևելի էր Արշարունեաց վարդապետարանը։ Ութերորդ դարուն վերջերը Բագրատունիք գնեցին այս գաւառը Կամսարական ցեղէն գնելով։

Արշարունիք գաւառին եկեղեցական իշխանութիւնը առաջ Բագրևանդայ հետ մէկ էր ինչուան Մովսէս Խորենացւոյն ատեն,

բայց երբոր Խորենացին մեռաւ, Արշարունեաց մէջ ալ զատ եպիսկոպոս նստաւ։

199. Արշարունեաց մէջ յիշուած երևելի քաղաքները։ — Երուանդաշատ քաղաք, զոր շինեց Երուանդ Բ և կ՚ըսուի նաև Երուանդաքար, քարաժայռ դիրքին համար, և չորս դին պատած են Երասխ և Ախուրեան գետերը։ Երուանդ դիրքին ամրութեանը վրայ գոհ չըլլալով, բլրոյն չորս կողմը պարսպով պատեց, և վրան ալ բերդ մը շինեց։ Բլրոյն վարէն ինչուան բերդին դուռը երկըթէ երկու ճամբայ շինեց, մէկը ցորեկուան համար, մէկալը ծածուկ որոգայթներով շինած գիշերուան համար, որպէս զի թէ որ մէկը թագաւորը դաւելու համար գիշեր ատեն անկէ վեր ելլէ, որոգայթի մէջ բռնուի։ Բայց ասկէ բլրոյն ծայրէն ինչուան յատակը ջրոյն երեսին հաւասար այլևայլ տեղ ծակել տուաւ քարեր կըտրելով, և անով դէպ ՚ի վեր ջուր բերել տըւաւ քաղքին մէջ, որով պաշարման ատեն ալ բնակիչները ջրոյ նեղութիւն չէին քաշեր։ Երուանդ այս քաղքին շինութիւնը լմընցընելէն ետև, Արմաւիրէն արքունիքը հոս փոխեց, քաղքին հրեայ բնակիչներովը մէկտեղ։ Բայց իրեն մահուանէն ետև Արտաշէս Բ արքունիքը Երուանդաշատ քաղքէն Արտաշատ փոխեց Հրեաներովը ու քաղքին ամէն զարդերովը մէկտեղ։ Այս Երուանդաշատ քաղաքը Արշակ երկրորդին ատեն Պարսիկք բոլորովին կործանե-

ցին, ու մէջէն 20,000 տուն Հայ ու 30,000 տուն Հրեայ գերի տարին, ինչպէս որ կը պատմէ Բուզանդ, որ քիչ մը չափազանց կ'երեւի, մանաւանդ որ Արտաշէս Բ Երուանդաշատէն Հրէից մեծ մասը Արտաշատ տարաւ: — Երուանդաշատ քաղաքը հիմա աւերակ է և կ'ըսուի Գարա գայէ:

Երուանդակերտ քաղաք, զոր նոյնպէս Երուանդ երկրորդ շինեց, գեղեցիկ ու գըւարճալի հովտի մը մէջ, պարտէզներով ու ծաղիկներով զարդարած, Ախուրեան գետոյն մէկալ կողմը Երուանդաշատին դիմաց: Այս քաղաքը Արտաշէս երկրորդէն Մարմէտ կոչեցաւ. վասն զի Արտաշէս երբոր զօրքով եկաւ այս քաղքին քով, հրամայեց իր զօրքերուն մէկ բերնով պոռալ մար ամատ, որ ըսել է Մարը եկաւ. որովհետև Երուանդ զԱրտաշէսը ու անոր Սըմբատ զօրավարը ծաղրելու համար Մար (Քիւրտ) անունը կու տար անոնց:

Բագարան քաղաք, զոր նոյնպէս Երուանդ երկրորդ շինեց Ախուրեան գետոյն վրան, և Երուանդաշատին նման էր, բայց աւելի պզտիկ: Երուանդ մէջը շատ կուռատուններ շինեց, և Արմաւիրէն բոլոր կուռքերը հոս բերաւ, անոր համար ալ քաղքին անունը Բագարան կոչեցաւ, այսինքն Բագիններու տեղ կամ կուռքերու քաղաք, որ ունէր նաև ամուր բերդ. հոս իր Երուազ եղբայրը քըրմապետ դրաւ: — Բագրատունեաց ազգի Թագաւորներուն ատեն հոս էր արքունիքն և Թագաւորաց գերեզմանատունը:

Արտագերս բերդ, որ Հայաստանի ամուր բերդերէն մէկն է, զոր Արշակ Բ հիմնովին նորոգեց. բայց նոյն Արշակ երկրորդին ատեն Շապուհ Պարսից Թագաւորին զօրքերը տիրեցին բերդին մէջի բնակչաց անձնատուր ըլլալովը, ուր Փառանձեմ Արշակայ կինը ապաւինած էր իր ամէն գանձերովը մէկտեղ, զոր պարսիկք ինը օր շարունակ կրեցին։

Կապոյտ բերդ, որ շատ ամուր և անառիկ էր, Վարդան աշխարհագիրը նոյն կը սեպէ Արտագերս բերդին հետ։

Երուանդաւան, Ախուրեան գետոյն քով Երուանդաշատէն 40 մղոնի չափ հեռու, ուր Արտաշէս Բ յաղթեց Երուանդին ու հալածեց զինքը, և իր բանակին տեղը անուանեց Մարաց մարգ, վասն զի Մարաց և Պարսից զօրքերով պատերազմեցաւ Երուանդայ հետ։

Ծննդոց անտառ, զոր Երուանդ Բ տնկեց Երասխայ մօտ և չորս կողմը պատ քաշեց, և մէջը տեսակ տեսակ որսոյ կենդանիներով լեցուց, ինչպէս են եղջերու, եղն, վայրի այծ, վարազ, վայրի էշ, և այլն։

Այս քաղաքներէն զատ կը յիշուին Արշարունեաց գաւառին մէջ Կաղզուան քաղաքը Գաբեղեանք գաւառին սահմանակից։ Զարեհաւանի և Կարոց գեղերը, Տիրիմս գեղը՝ ուր Աբաս Կարուց Թագաւորը տասներորդ դարուն մէջ կրօնաւորաց վանք մը շինեց։

200. Արշարունիք գաւառին մէջ յիշուած նշմարելի վանքերը ։ — Կամրջաձոր վանք, զոր շինեցին տասներորդ դարուն մէջ Յունաց երկրէն հալածուած Հայ կրօնաւորները, և մէջը կային 300ի չափ միաբանք սըրբոյն Բարսղի սահմանադրութեամբը ։ — Կապուտաքար վանք, որ շինուեցաւ տասներորդ դարուն մէջ, և կ՚իյնայ Կապոյտ բերդին մօտ ։ — Վարդիկ հայր ըսուած ուխտը կամ վանքը, որ եօթներորդ դարուն և երեքտասաներորդ դարուն անուանի վարդապետարան էր, և կ՚իյնայ Կաղզուան քաղքին մօտ ։ Այս վանքին մէջ կը պահուէր Գետարգել նշանը ։ — Ասիկա Քրիստոսի խաչափայտին մէկ մեծ կտորն էր, զոր սուրբն Սեղբեստրոս Հռոմայ հայրապետը և Կոստանդիանոս Թագաւորը Գրիգոր Լուսաւորչին ու Տրդատ Թագաւորին տուին ։ Կը զրուցուի թէ Գրիգոր Լուսաւորիչ այս խաչով խաչակնքելով հիւսիսային ազգերուն բանակը, խորտակեց զիրենք. և թէ մեծն Ներսէս հետը տարաւ իր աքսորուած կղզին. և թէ Պետրոս Գետադարձ այս խաչով գետոյն ջուրը խաչակնքելով արգիլեց ջրոյն ընթացքը, անոր համար ըսուեցաւ Գետարգել նշան ։ 1390ին ատենները երբոր Լէնկթիմուրին զօրքերը Հայաստան տակն ու վրայ կ՚ընէին, Վարդիկ հայր ըսուած վանքէն երկու կրօնաւոր վախնալով որ չըլլայ թէ գետարգել նշանը թշնամեաց ձեռքը անցնի, առին վանքէն

ու տարին ծածուկ տեղ մը պահեցին, և իրենք ետ դառնալու ատեն թշնամիներէն սպաննուեցան, որով անյայտացաւ անկէց ետքը խաչին տեղը։

## Ե. Բագրեւանդ.

201. Բագրեւանդ գաւառ։ — Բագրեւանդ գաւառը հիմա կ'ըսուի Ալաշկերտ Վաղարշակերտ քաղքին անունովը։ Երեւելի է մէջը Նպատ լեռը, որոյ քովն է Ձիրաւ դաշտը, ուր եղաւ Պապայ ատեն Յունաց օգնութեամբը Հայոց Մեհրուժանայ դէմ ըրած անուանի պատերազմը, որոյ ատեն մեծն Ներսէս Նպատ լերին վրայ ելած բազկատարած կ'աղօթէր, մինչուան որ Պարսիկք չարաչար յաղթուեցան, և թագաւորեց Պապ։

202. Բագրեւանդ գաւառին երեւելի քաղաքները։ — Վաղարշակերտ բերդաքաղաքը, զոր շինեց Վաղարշ թագաւորը Սուկաւէտ կամ Ձրաբաշխ լեռան ստորոտը, զուարճալի ու ջրաբուխ տեղ։

Բագուան մեծ աւանը, որ կ'ըսուի նաև Բագնաց աւան և Բագաւան ու պարթևաց լեզուով Դիցաւան, շինուած էր Նպատ լերին վրայ, որոյ ոտքէն կ'անցնի Եփրատ գետը։ Հեթանոսութեան ատեն այս աւանին մէջ երեւելի էր Մաժան քրմապետին գերեզմանը, որ վերջին Տիգրանայ եղբայրն էր, և Տիգրան վրան բագին մը շինեց և հիւրըն-

կալութեան իջևան մը, որպէս զի անցնող դարձողները զոհերէն վայելեն : Մեծն Վաղարշ Տիգրանայ որդին հոս մեծ տօն հաստատեց տարւոյն սկիզբը նաւասարդին առջի օրը : Բագինն էր Արամազդայ Վանատուրի անունով, որ էր նաև հիւրընկալութեան աստուած. իսկ տօնը կը կատարուէր նոր տարւոյն և նոր պտուղներուն համար, և կ'ըսուէր ամանորաբեր տօն :

Զարեհաւան քաղաքը, որ կ'ըսուի նաև Զարեհվան, շինուած էր Բագուանի մօտ Ծաղկոտն գաւառին սահմանակից : Այս քաղաքը Շապուհ Բ Պարսից թագաւորը մեր Արշակ Բին ատեն առաւ ու հիմանց կործանեց ու մէջէն 5000 տուն հայ և 8000 տուն հրեայ գերի տարաւ, բայց ետքէն նորէն նորոգուեցաւ այս քաղաքը :

Բաց աստնցմէ երևելի են Բագրևանդ գաւառին մէջ Վարդանակերտ աւանը Երասխայ մօտ, Աշտարակք, Արաման, Արծակ, Բերդկունս, Եղեգեակ, Տիրառիճ, Ջրաւ գեղերը, և Բլուր գեղը՝ ուր վախճանեցաւ սուրբն Սահակ հայրապետ և մարմինը Տարօն գաւառին Աշտիշատ գեղը թաղեցին :

## Զ. Ծաղկոտն.

203. Ծաղկոտն գաւառը : — Ծաղկոտն կամ Ծաղկէոտն և կամ Ծաղկուտ գաւառը կ'իյնայ Ծաղկէ լերին քովը Բագրևանդ գաւառին սահմանակից : Օդը աղէկ ու զո-

վացուցիչ ըլլալուն համար, ամարանոց-ներ խիստ շատ կային հոս, ուր գիւղագնա-ցութեան կ'երթային։ Այս գաւառին մէջն է Ծաղկապիլան լեռը որոյ կենդանիներով լեցուն, ուր Թագաւորազունք ստէպ որսի կ'ելլէին. Հոս էր Արշակունեաց ատեն զօ-րաց կայանը կամ բանակատեղը, ուր կը բնակէր Թագաւորը Բագաւան գեղջին ամա-նորաբեր տօնին ատեն։

Ծաղկոտն գաւառին մէջ երևելի էին Անգղ գիւղաքաղաքը ամուր բերդով, Կու-տեանքն գեղը, և այլն։

## Է. Ը. Շիրակ.

204. Շիրակ գաւառին վրայ գիտելիք։ — Այս գաւառին անունը եկած է Շարայէն որ Արամայիս նահապետին որդին էր, և խիստ շատակեր և բազմածին ըլլալուն համար հայրը զինքը հոս խաւրեց, որ կ'իյնայ Ե-րասխայ հիւսիսակողմը Ախուրեան գետին երկու դին, երկիրը խիստ բարեբեր և շա-տաջուր ըլլալուն համար։ Այս գաւառը ետքերը, ըստ մասին, Ջարոյ գետ կոչուած է։

Այս գաւառը մեծին Տրդատայ ատենէն 'ի վեր Կամսարականաց ձեռքն էր, զոր Թէ-պէտ և Արշակ Բ յափշտակեց, բայց ետքը նորէն անոնց ձեռքը անցաւ։ Սակայն ու-թերորդ դարուն մէջ Սմբատ Բագրատունի իշխանին Աշոտ և Շապուհ որդիքը շատ դան-ձով գնեցին Արշարունեաց գաւառին հետ

մէկտեղ Կամսարականաց ցեղէն և անկէց ետքը Բագրատունեաց ձեռքը մնաց։

205. Շիրակ գաւառին երևելի քաղաքները։ — Անի հռչակաւոր քաղաքը, որ առաջ Արշակունեաց ատեն պզտի բերդ մը էր, և ետքը Աշոտ Գ Ողորմած ցած պարըսպով մը պատեց, և իրեն որդին Սմբատ Բ աշխարհակալ Թագաւորը (980ին) շատ ընդարձակեց, ու չորս կողմը ուրիշ ահագին պարսպով մը պատեց, ու հասցուց ինչուան Ախուրեան գետը, որով առջի Անին եղաւ միջնաբերդ։ Անկէց ետքը սկսաւ քաղաքը շատ ծաղկիլ և հարըստանալ, ու բնակչաց թիւն ալ խիստ շատցաւ, որ հաւանականաբար միլիոնը կ'անցնէր։ Մէջը հազար ու մէկ եկեղեցի կար կ'ըսէին, անոնց բազմութիւնը ցուցընելով, որոց մէջ անուանի էր կաթողիկէն, զոր մեծն Սմբատ սկսաւ շինել, բայց մահը վրայ հասնելով չկրցաւ լմնցընել, ու ետքը Գագիկ Աին Կատրամիդէ բարեպաշտ Թագուհին լմընցուց։ Այս կաթուղիկէին մէջ անուանի էր մեծագին արծըթէ խաչը մարդու հասակաւ, որ գմբեթին վրայ տնկուած էր, բիւրեղէ մեծ հազուագիւտ ջահը՝ տասուերկու լիտր ծանրութեամբ, զոր Սմբատ Հնդկաստանէն բերել տուած էր, և այս երկուքն Անի քաղքին Ալփասլանէն առնուելու ատեն գինուոր մը գետինը ձգեց ու խորտակեց։ Անուանի էր Անի քաղքին մէջ նաև Գագիկ Աին շինած Գրիգոր Լուսա-

ւորչի եկեղեցին, ու Ապլղարիպ մարաճախտին (1036ին) շինած սուրբ Փրկիչը։ — Այս քաղաքը Բագրատունեաց տան Թագաւորանիստ ու կաթուղիկոսանիստ քաղաք էր, զոր Յովհաննէս Թագաւորը կտակաւ Յունաց կայսեր թողուց, և Գագիկ Բին ատեն 1046ին Յոյները տիրեցին, բռնութեամբ Թագաւորը իր տէրութենէն հրաժարեցընելով։ — Ալփասլան առաւ քաղաքս Յունաց ձեռքէն ու մէջը շատ կոտորած և աւեր ըրաւ. իրեք անգամ տիրեցին նաև Վիրք այս քաղքին. բայց վերջը Զարմաղան Թաթարներուն խանը 1240ին չարաչար աւրեց. ուստի հիմա այլևայլ յարձակումներէ ու երկրաշարժներէ բոլոր անբնակ մնացած է, որոյ աւերակները յայտնի կը ցուցընեն իր առջի մեծութիւնը և փառաւորութիւնը, որ աշխարհիս երևելի քաղաքներէն մէկը եղաւ։

Երազգաւորք գիւղաքաղաք, որ ետքը ըսուեցաւ Շիրակաւան ու ռամկօրէն Շիրակվան Անիին մօտ Ախուրեան գետոյն քով։ Այս քաղքիս մէջ շատ նորոգութիւն ըրաւ Սմբատ Ա, ու սուրբ Փրկիչ կամ Ամենափրկիչ անունով փառաւոր եկեղեցի մը շինեց (897ին) ու աթոռն ալ հոս փոխադրեց, ուր կը Թագաւորէին առջի Բագրատունի Թագաւորները մինչև Սմբատ Բ, որ Անւոյ մէջ շատ նորոգութիւններ ընելով աթոռն ալ հոն փոխադրեց։

Մրեն գիւղաքաղաք Ախուրեան գետոյն

մօտ, գիւղին կողմանէ շատ զուարճալի է և այգիներով լեցուն, անոր համար Բագրատունեաց ատեն Թագաւորներու և մեծամեծներու ամարանոց եղած էր։ Անուանի էր մէջի կաթուղիկէն, զոր շիներ էր Դաւիթ Սահառունի եօթներորդ դարուն մէջ։

Խծկաւնք կամ Խծկօնք գեղ, ուր է սրբոյն Սարգսի ուխտը, զոր շինեց Վեստն Սարգիս մետասաններորդ դարուն մէջ, քովէքով հինգ եկեղեցիներ, որոնք ինչուան հիմա ամբողջ կեցա[illegible]են, և գեղն ալ կ՚ըսուի Պէշ քիլիսէ։

Արգինա գիւղաքաղաք, ուր Բագրատունեաց ժամանակ քիչ մը ատեն կաթողիկոսները նստեցան։ Անուանի է մէջի կաթուղիկէն զոր շինեց Խաչիկ կաթողիկոսը տասներորդ դարուն մէջ, Տրդատ ճարտարապետին ձեռքովը։

Ծառաքար բերդաքաղաք, որ առաջ վանք էր և ետքը Վեստն Սարգիս պարսպով պատեց և բերդ ըրաւ։

206. Շիրակայ մէջ յիշուած երևելի վանքերը։ — Հոռոմոսի կամ Հոռոմոց հռչակաւոր վանքը, զոր շինեց Յովհաննէս անունով մէկը տասներորդ դարուն մէջ Աբաս Թագաւորին ատեն, ուր նոյն ժամանակը եկան բնակեցան Յունաց երկրէն հալածանքով փախած հայ կրօնաւորները, և իրենց անունովը ըսուեցաւ Հոռոմոսի վանք. որոնք ամէն անցնող դարձողները կ՚ընդունէին ու կը կերակրէին և կը հանգչեցընէին

իրենց վանքը։ Այս վանքը հիմա խօշավանք կ'ըսուի, քովի խօշոռն ըսուած աշտարակնե-րուն անունովը. և անուանի է մէջի սուրբ Յովհաննէս ըսուած եկեղեցին, զոր շինեց Յովհաննէս Բագրատունի Թագաւորը 1050ին, որոյ մօտ է սրբոյն Գէորգայ եկե-ղեցին, զոր շինեց Գագիկ Ա., և մէջը թա-ղուած են Բագրատունի Թագաւորներէն ոմանք, որոցմէ Աշոտ Թագաւորին գերեզ-մանը դեռ ինչուան հիմա կեցած է։

Բագնայր վանք Անւոյ մօտ, անոր արեւմը-տեան կողմը, զոր շինեց Սմբատ Մագիս-տրոս (1010). անուանի է մէջի սուրբ Աստուածածնի փառաւոր եկեղեցին։

Անուանի են նաև Մարմաշէն, Կամրջա-ձոր, Հարիճայ վանքերը և Դպրեվանք՝ զոր Յունաց երկրէն փախած կրօնաւորները ա-ւելի ընդարձակեցին, անոր համար մատե-նագիրներէն ոմանք այս վանքին շինութիւ-նը անոնց կուտան։

## Ը. Վանանդ.

207. Վանանդ գաւառին վրայ գիտելիք։ — Այս գաւառին անունը ելած է Վունդ Բուլղարին անունէն, որ Արշակունեաց Ա. Արշակին ատեն Կովկասային լեռներուն կողմերէն գաղթական եկաւ, ու բնակեցաւ այս գաւառին մէջ, որ առաջուց Անփայտ ու Վերին Բասեան կ'ըսուէր։ Երկիրը խիստ պտղաբեր է և բերրի. բնակիչները Կովկա-

տու կողմերէն եկած ըլլալուն համար աւա-զակաբարոյ մարդիկ էին ։ Տասներորդ դա-րուն, այսինքն 960ին , Կարս քաղքին մէջ զատ Թագաւորութիւն ունեցան , որ կ'ը-սուէր Կարուց թագաւորութիւն, որ քիչ ատեն տեւեց , և ետևէ ետև իրեք Թագաւոր նստան Բագրատունեաց ցեղէն , այսինքն Մուշեղ՝ տիեզերակալ Սմբատ Բին հօրեղբայրը , Ա-բաս՝ Մուշեղին որդին , որ երկրին մէջէն աւազակութիւնը վերցուց , և Գագիկ որ վերջին Թագաւորը եղաւ ։

208 . Վանանդ գաւառին երևելի քաղաք-ները ։ — Կարս կամ Կարուց քաղաք. Ախու-րեան գետոյն մէկ ճիւղին վրայ շինած , որ ամուր բերդ ունի կրկին պարսպով պա-տած , և ատեն մը շատ հարուստ ու վաճա-ռաշահ քաղաք էր , որոյ միջնաբերդէն ին-չուան գետոյն եզերքը գետնափոր ճամբայ կար , որ հիմա աւրուած է ։ Երևելի է մէջը Աբաս Թագաւորին տասներորդ դարուն մէջ շինած կաթուղիկէն , որ է մայր եկեղեցին ։ Պարսիկները 1050ին Քրիստոսի յայտնու-թեան տօնին օրը վազեցին յանկարծակի այս քաղքին վրայ , և ժողովուրդը անպատ-րաստ ուրախութեան մէջ գտնելով տկրե-ցին քաղքին , և մեծ ջարդ և աւեր ըրին մէջը , որով քաղաքացւոց ուրախութեան տօնը ողբ ու վայնասուն դարձաւ ։ Այս ա-ւերածէն ետև Գագիկ Աբասեան Թագաւո-րը որ հոն կը Թագաւորէր , նորոգեց ու ա-մրցուց քաղաքը , բայց վերջը 1064ին ա-

տեն միտքը դնելով որ Թշնամեաց ձեռքէն հանգստութիւն պիտի չգտնէ, իր տէրութիւնը ու Կարս քաղաքը Վանանդ գաւառով մէկտեղ Յունաց կոստանդին Տուկիծ կայսեր տուաւ. ու անոնց տեղ փոքր Հայքին մէջ առաւ Ծամնդաւբերդը, Ամասիա, Կոմանա ու Լարիսսա քաղաքները, և ուրիշ 100 գեղ, իբրև իրեն կալուած, ու Թողլով իր Թագաւորութիւնը ելաւ գնաց բնակելու փոքր Հայոց կողմերը։ Այս Կարս քաղաքը 1240ին առաւ Չարմաղան Թաթարաց խանը, ու մէջը անհնարին ջարդ ըրաւ։ Նոյնպէս 1394ին առաւ Լէնկթիմուր խանը, ու բնակիչներուն շատը Թրէ անցուց։

Կարս քաղքէն զատ երևելի են Վանանդ գաւառին մէջ Զարիշատ քաղաքը, որ Աղիովիտ գաւառին Զարիշատէն տարբեր է։ —Դիւաշպետ գեղը, Արմառ գեղը՝ ուսկից էր Գիւտ կաթուղիկոսը, Իշաւանից գեղը՝ ուսկից էր սուրբն Ղևոնդ երէց, և այլն։

## Թ. Արագածոտն.

**209. Արագածոտն գաւառը և մէջի երևելի քաղաքները։** — Այս գաւառը որ շատ ջրարբի և պտղաբեր է, կ'իյնայ Արագած լերին ստորոտը, և երկիրը Ամատունի նախարարութեան ձեռքն էր, անոր համար այս գաւառին եպիսկոպոսը կ'ըսուի Ամատունեաց եպիսկոպոս։

Անուանի է մէջը Աշշական կամ Օշական գեղը կամ բերդը, ուր թաղուած է սուրբն Մեսրոպ կամ Մաշտոց, և կ՚իյնայ Վաղարշապատին մօտ։ Այս գեղը խօսրով Գ թագաւորը Վահան Ամատունիին տուաւ իրեն քաջութիւններուն փոխարէն. որոյ մէջ ծնաւ Ցունաց Մօրիկ կայսրը՝ որ ազգաւ հայ էր, և ինչպէս որ կ՚ըսէ Ասողիկ, կայսր ըլլալէն ետքն ալ միշտ կը հոգար իր Օշական գեղը։

Աղցք գեղ, ուր թաղեցին Անի կամ Կամախ բերդէն հանած թագաւորներուն ոսկորները։

Եղիվարդ գեղ, ուսկից էր Մովսէս Բ կաթուղիկոսը, որ Հայոց տոմարը նորոգեց։

Աշնակ աւանը, որ արքունի ձմերոց էր, և հիմա պզտի գեղ մի է։

Փարպի գեղ, ուսկից էր Ղազար պատմիչը, որ կը կոչուի Փարպեցի։

Երևելի են նաև Աշտարակ գեղը, Արուճ աւանը, Կարբի և Անբերդ գեղերը որ իբրև պզտի գաւառ կը յիշուին, Թալին գեղը, Կոշաշ աւանը և այլն։

210. Արագածոտն գաւառին երևելի վանքերը։ — Սուրբ Գրիգոր ըսուած վանքը, որ Մայրաքաղաք կ՚անուանէր։ Ցոհանաւոց վանք կամ Ցոհանավանք կամ Սիւղի վանք, ուր էր Քրիստոսի վարշամակը և աջ ձեռքին գամը, և որբոյն Ստեփանոսի նախավկային աջ ձեռքը, և կ՚իյնայ Կարբիին մօտ. Հրեշտակաբեռակ ըսուած անապատը,

ուր կար Քրիստոսի կենաց փայտին մէկ մեծ մասը, որ շատ հրաշքներ կ'ընէր օձէն զարնուողներուն, անոր համար կ'ըսուէր Օձահալած սուրբ նշան: Սաղմոսավանք, և սրբոյն Գէորգայ վանքը 'ի Մուղնի:

## Ժ. Ճակատք.

211. Ճակատք գաւառ: — Այս գաւառին մէջ անուանի է Կողբ գիւղաքաղաքը, ուսկից էր Եզնիկ Կողբացի, և ունի աղահանքեր: Հոս Աշոտ սպարապետը Սմբատ Աին ատեն փառաւոր եկեղեցի մը շինեց: — Սուրմարի կամ Սուրբ Մարտի բերդաքաղաքը, զոր 1390ին ատենները առաւ Լէնկ-Թիմուր և հիմնովին կործանեց:

## ԺԱ. Մասեացոտն.

212. Մասեացոտն գաւառ: — Մասեացոտն գաւառին մէջ որ Մասիս լերին ստորոտը կ'իյնայ, կը յիշուի Ողեաց գեղը կամ բերդը, և Ակոռի մեծ գեղը, ուր Նոյ նահապետ նախ այգի տնկեց: Այս գեղը 1840ին Մասիս լերին հրաբուխը բռընկելովը, անկէ ընկած քարերուն և մոխիրներուն տակ ծածկուեցաւ մէջի բնակիչներովը:

## ԺԲ. Կոգովիտ.

213. Կոգովիտ կամ Կոգայովիտ գաւառ։ — Կոգովիտ կամ Կոգ գաւառը կ'իյնայ Մասիս լերին կռնակը, և սահմանակից է Ծաղկոտն գաւառին։ Այս գաւառը Բագրատունեաց ձեռքն էր, ուսկից ետքը իրենց արքունիքը Արշարունեաց երկիրը փոխադրեցին, առնելով նոյն երկիրը Կամսարական ցեղէն գնելով։

214. Կոգովիտ գաւառին երեւելի տեղերը։ — Բագաւառան գեղը, զոր շինեց Սմբատ Բիւրատեան Արտաշէս Բին դայեակը ու սպարապետը, և Արշարունեաց Բագարան քաղքէն բերած գերիները հոս բնակեցընելուն համար գեղին անունն ալ Բագարան դրաւ։

Արշակաւան, զոր շինեց Արշակ Բ, և մէջի բնակիչները շատցընելու համար հրաման հանեց որ ամէն չարագործ մարդիկ որ հոն ապաւինին՝ ազատին. ասով շատ մը լեցուեցաւ քաղաքը ամէն տեսակ չարագործ մարդիկներով. բայց ետքէն մեծին Ներսեսի անէծքովը փոխադրական հիւանդութիւն մը եկաւ, որով շատ հոգի մեռան. և նախարարներն ալ քաղքին վրայ ելլելով 20,000 տուն բնակիչ ջարդեցին իրեք օրուան մէջ, և քաղաքն ալ կործանեցին, և միայն պզտի տղաքը խալըսեցին։ Այս կոտորածը լսելով մեծն Ներսէս, շատ մը հա-

տաւ Հոն տեղը ու տղաքը առաւ Նախարարաց ձեռքէն, ու որթի ճիւղէ հիւսած կողովներու մէջ դնել տալով, խաւրեց մօտակայ գետ մը, որ ետքը մեծնալով Որբք ըսուեցաւ այս դիպուածին համար:

Դարոյնք կամ Դարօնք անառիկ բերդը, ուր թաղուած են Բագրատունեաց իշխաններէն շատը, և հիմա կ՚ըսուի Պայէզիտ:

Երևելի են նաև Արծափ բերդը և Սարբափ գեղը:

## ԺԳ. Նիգ.

215. Նիգ գաւառին մէջ յիշուած տեղերը:—Բջնի բերդաքաղաքը, ուսկից էր Գրիգոր Մագիստրոս, և շինուած է Հուրաստան գետակին քով, որ կ՚ըսուի հիմա Բջնոյ գետ:— Փառաժնակներու և Եղիպատրուշ գեղեր:

Վանքերուն մէջ երևելի են Թեղենեաց վանքը, Մայրոց կամ Մայրոյ վանք, որոյ անունը Եզր կաթողիկոսը փոխելով Մայրոյ գոմ դրաւ, Յոհան աղանդապետը հոն բնակելուն համար, ուսկից ինքն ալ ըսուեցաւ Յոհան Մայրագոմեցի: Այս գաւառին մէջ կ՚իյնայ Կեչառու կամ Կեչառուաց հռչակաւոր վանքը, զոր շինեց Ապիրատ անունով իշխան մը ԺԱ դարուն մէջ, ուսկից էր Խաչատուր Կեչառուեցին: Այս վանքը հիմա աւրուած է:

## ԺԴ. Կոտայք.

216. Կոտայք գաւառին մէջ յիշուած տեղերը: — Երեւան քաղաքը, որ շինուած է Հրազդան գետոյն քով ու ամուր պարսպով պատած: 1670ին սաստիկ գետնաշարժ մը մէջը 8000 հոգի մեռան ու շատ շէնքեր կործանեցան: Այս երկրաշարժին ժամանակ կործանեցաւ նաեւ Գառնի գիւղաքաղաքը:

Արամօնք կամ Արամօնս գեղ, որ կաթողիկոսարանին սեպհական կալուած էր, ուր Դաւիթ Ա. կաթողիկոսը փառաւոր եկեղեցի մը շինեց, և կաթողիկոսարանն ալ Դըւնէն հոս փոխադրեց:

Զագ գեղ, ուր է Զագավանք ըսուած մենաստանը, և այլն:

## ԺԵ. Վարաժնունիք.

217. Վարաժնունիք գաւառին վրայ գիտելիք: — Այս գաւառը կ'իյնայ Հրազդան գետոյն քով, և անունը եկած է Գեղամայ ցեղէն Վարժ անունով մարդէ մը, զոր Արտաշէս Ա. իր որդւոյն միջին Տիգրանին վարպետ դրաւ որ որսորդութիւն ու նետաձգութիւն սորվեցընէ. անոր անունէն ազգն ալ երկիրն ալ Վարաժնունիք ըսուեցան: Վարաժնունիք գաւառին մէջ կ'իյնայ Նետիս գեղը որ Հրազդան գետոյն վրայ շինուած

է. Ցամաքաբերդ և Ոսկեամոյ գեղերը, և այլն։ Վարաժնունիք գաւառը հիմա կ'ըսուի Մաղկուշևիք, Մաղկուշևք գեղին անունէն որ այս գաւառին մէջ կ'իյնայ։

## ԺԶ. Ոստանն Դըւնայ մինչև ցՇարուր.

218. Դըւնայ գաւառին մէջ յիշուած տեղերը։ — Դըւնայ գաւառին մէջ որ կը ձըգուի ինչուան Շարուր դաշտը, երևելի է Դուին կամ Դվին քաղաքը որ պարսկերէն բլուր կը նշանակէ, որոյ մէջ Թագաւորական արքունիք ըլլալուն համար կ'ըսուի Պարսից բառով ոստանն Դուին: Մեր մատենագիրները երբեմն առանց Դուին քաղքին անունը տալու, Ոստան միայն կ'ըսեն, ու Դուին քաղաքը կ'իմանան, ուր կը նըստէին վերջի ատենները մարզպանները ու Հագարացւոց ամիրաները։ Այս քաղաքը շինուած է Մեծամօր վտակին քով, որոյ մէջ Խոսրով Բ չորրորդ դարուն Թագաւորական պալատ շինեց ու շատ նորոգութիւններ ըրաւ, կամ թէ ինչպէս ոմանք կը կարծեն, հիմնովին ինքը շինեց. և իր արքունիքը Արտաշատէն օդոյն գէշութեանը պատճառաւ հոս փոխադրեց, որ Արտաշատու դիմացը կ'իյնայ անոր հիւսիսային դին, բայց դիրքը ցած ըլլալուն համար՝ օդը աղէկ է ու տաք։ Հինգերորդ դարուն մէջ Դուին քաղաքը Վարդանանց ատեն նորոգուեցաւ, ու ամուր պարսպով ամրա-

ցաւ, ու կաթողիկոսարանն ալ հոն փոխադրեցաւ։ Այս քաղաքը ութերորդ և իններորդ դարերուն մէջ շատ ծաղկեցաւ վաճառականութեամբ, ու մէջի բնակիչներուն թիւն ալ շատցաւ։ Եկեղեցիներուն մէջ անուանի էր Սուրբ Գրիգոր, զոր փայտէ շինեց մեծն Վարդան։ Բայց ետքէն վեցերորդ դարուն Սմբատ Բագրատունի մարզպանը բոլոր քարէ շինեց։ Այս քաղաքը առին Հագարացիք 640ին, ու մէջը 12,000 հոգի ջարդելով 35,000 հոգի գերի տարին։ Անկէց ետքը այլևայլ այլազգի ամիրաներուն ձեռքն անցաւ։ Երկու անգամ սաստիկ երկրաշարժէ կործանեցաւ Դուին ու մէջը շատ հոգի ալ մեռան։ Երկրորդ անգամուն եղած երկրաշարժը, որ իններորդ դարուն վերջերը եղաւ Ա. Սմբատ թագաւորին առեն, առջինէն շատ աւելի սոսկալի էր. կործանեցան քաղքին պարիսպները, տուներուն մեծ մասը, ու 70,000 հոգի մեռան։ Նոյնպէս ուրիշ երկրաշարժէ մը բոլորովին կործանեցաւ այս քաղաքը, և հիմա դաշտի մէջ աւերակ կեցած է։

Դուին քաղքին մօտերը Խոսրով Բ երկու անտառ տնկել տուաւ, ու չորս կողմը պատ քաշելով մէջը տեսակ տեսակ վայրի կենդանիներով ու գազաններով լեցուց որսոյ համար։ Առջինը կը սկսի Գառնիէն ինչուան Դուին քաղաքը, Ազատ գետոյն քով, և անունը դրաւ Տաճար մայրի։ Երկրորդը առջինին հարաւային կողմը, և երկուքին

մէջ տեղը անցնելու ճամբայ մը կար․ այս երկրորդ անտառին մէջ շինեց պալատ մը, և անունը դրաւ Խոսրովակերտ։

219․ Այրարատ Նահանգին մէջ յիշուած ուրիշ քաղաքները։ — Այրարատայ մէջ կը յիշուին ուրիշ շատ քաղաքներ ալ, որոնց մասնաւոր գաւառ չի նշանակուիր․ այսպէս են

Արտաշատ քաղաք, որ օտար ազգաց մէջ խիստ համբաւաւոր է, կ'իյնայ Դուին քաղաքին մօտերը, և շինուած է բլրոյ մը վրայ, ուր Մեծամօր վտակը Երասխայ հետ կը խառնուի, և քաղաքը իբրև թերակղզի մը կը ձևանայ․ ունէր ամուր բերդ, որոյ մէջն էր Խոր Վիրապը, ուր կը նետէին չարագործները։ Այս Խոր Վիրապին մէջ Գրիգոր Լուսաւորիչ տասնըչորս տարի ողջ մնաց։ Արտաշատ քաղաքը ունէր կամուրջ մը որ կ'ըսուէր Տափերական կամ Տափերն, Երասխ գետոյն վրայ շինուած։ Խորենացին այս քաղքին շինութիւնը Բ Արտաշէսին կուտայ, Քրիստոսէ ետքը առաջին դարուն վերջերը․ և կ'ըսէ թէ իր անունով Արտաշատ կոչեց, ու Երուանդաշատէն Հրէից գերիներովը մէկտեղ թագաւորական աթոռը և բոլոր կուռքերը հոս փոխադրեց, և քաղքին մէջ փառաւոր Անահտայ տաճար մըն ալ շինեց։ Բայց Արտաշէսին ըրածը կ'երևի թէ հիմնովին նորոգութիւն կամ երկրորդ անգամ շինել պիտի 'ըլլայ․ վասն զի իրմէ առաջ յոյն և լատին մատենագիրները ինչ-

պէս են Ստրաբոն, Պլուտարքոս և Տակիտոս կը յիշեն այս քաղաքը նոյն անունով. և կ՚ըսեն թէ Աննիբաղ մեծն Անտիոքոսին հետ մէկտեղ Հռոմայեցւոցմէ յաղթուելէն ետև փախաւ գնաց Հայաստան, և հոն ցըցուց այս քաղքին դիրքը, և ինքը եղաւ գործադիր, և անունն ալ դրաւ Արտաշատ նոյն ատենուան Հայոց Արտաշաս թագաւորին անունովը: Մեծին Անտիոքոսի ատեն վերցուած էր Հայկազանց տէրութիւնը, և կ՚իշխէր այն ատեն Սելևկացւոց կողմէն Արտաշաս անունով կուսակալ մը. ուստի Արտաշատ քաղքին շինութիւնն ալ օտարազգի մատենագիրներուն ըսածին նայելով՝ կ՚իյնայ Քրիստոսէ 188 տարի առաջ: Բայց այս բանիս վրայ ամենևին յիշատակութիւն չկայ մեր մատենագիրներուն մէջ, և ոչ Աննիբաղայ Հայաստան փախչելուն վրայ: Այս թագաւորանիստ քաղաքը Հռոմայեցւոց մատենագիրներուն խօսքին նայելով, Քրիստոսէ 58 տարի ետքը Կորբուլոն Հռոմայեցւոց զօրավարը Տիրիթ թագաւորին հետ պատերազմելու ատեն առաւ, ու չկըրնալով պահել, կրակ տուաւ ու այրեց: Բայց ետքէն Տիրիթ թագաւորը որ վերին Հայոց վրայ կը թագաւորէր, երբոր Հռոմ գնաց ու Ներոն կայսրէն նորէն թագաւոր պսակուեցաւ վերին Հայոց վրայ, կայսրը հրաման տուաւ որ իր ծախքովը նորէն շինէ: Տիրիթ Հայաստան դառնալու ատեն, հետը շատ ճարտարապետներ առաւ, ու քա-

ղաքը նորոգելով, անունն ալ Ներոն կայսեր անունովը Ներոնեա կոչեց։

Արտաշատ քաղաքը մեր Արշակ Բին ատեն Պարսից թագաւորին զօրքերը հիմնայատակ կործանեցին և այրեցին և պարիսպները փլցուցին, ու մէջէն 9000 տուն հրեայ ու 40,000 տուն հայ գերի տարին։ Բայց ետքէն նորէն շինուեցաւ, և եղաւ իբրև գիւղաքաղաք մը, ուր հինգերորդ դարուն մէջ Վարդանանց ատեն ազգային ժողովք եղաւ։ Յայտնի չգիտցուիր թէ վերջի աւերումը երբ եղաւ. հիմա բոլորովին աւերակ է, և հազիւ տեղը յայտնի է, և կը ցուցնեն միայն Խոր Վիրապին տեղը։

Արտաշատէն դուրս ճամբու վրայ շինած էր Երազմոյն ըսուած տեղը կամ Երազացոյց մեհեանը։ Այս մեհեանը Արտաշատայ մէջի մեհեաններէն զատ է, զոր նոյնպէս Արտաշէս Բ շինել տուաւ, և մէջը դրաւ Ապողոնի արձանը. ետքէն սուրբն Գրիգոր կործանեց տաճարովը մէկտեղ։

220. Արմաւիր քաղքին վրայ գիտելիք։ — Արմաւիր քաղաքը Հայաստանի հին քաղքներէն մէկն է, և կ'երևի թէ Արագածոտն գաւառին մէջ կ'իյնայ, զոր շինեց Հայկայ թոռը Արմայիս նահապետը Երասխայ քով, անոր հիւսիսային դին բլրոյ մը վրայ. և իր ատենէն սկսեալ բոլոր Հայկազանց ժամանակ ասիկայ էր թագաւորանիստ քաղաքը։ Նոյնպէս նաև Արշակունեաց ատեն ինչուան Երուանդ Բին ժամա-

նակ․ Թէպէտ և երբեմն ուրիշ քաղաքներու մէջ ալ նստան, ինչպէս Վաղարշակ Ա. Մծբնայ մէջ, Աբգար Եդեսիոյ մէջ, և այլն: Գեղամայ որդին Հարմա զանազան նորոգութիւններ ըրաւ Արմաւիրի մէջ, ու ամուր պարսպով ամրացուց․ Վաղարշակ Ա. այս քաղքին մէջ մասնաւոր մեհեան մը շինեց, ուր արևու և լուսնի և իրեն նախնեացը արձանները կանգնեց: Նոյնպէս Տիգրան Բ փառաւոր մեհեան մը շինեց, և տնկեց մէջը Ապողոնի և Արտեմեայ արձանները, զորոնք իր հայրը փոքր Ասիայէն բերած էր, և բնակեցուց քաղքին մէջ Հրէաստանէն բերած գերիներուն կէսը, կէսն ալ Վաղարշապատ քաղքին մէջ բնակեցնելով: — Երբոր Երուանդ թագաւորը շինեց Երուանդաշատ քաղաքը, արքունիքը Արմաւիրէն հոն փոխադրեց, քաղքին ամէն գեղեցկութիւնն ալ մէկտեղ տանելով. վասն զի Երասխ գետը Արմաւիրէն հեռացած ըլլալուն համար, քաղքին օդը ապականած էր, և բնակիչները ջրոյ նեղութիւն կը քաշէին: — Արմաւիր քաղաքը հիմա աւերակ է, և տեղը գրեթէ անյայտ:

221․ Վաղարշապատ քաղքին վրայ գիտելիք: — Վաղարշապատ քաղաքը Օշականայ մօտ է, ուսկից Վահան Ամատունին կը տեսնէր Վաղարշապատ քաղքին կաթողիկէն: Այս քաղաքը Հայաստանի անուանի թագաւորանիստ քաղաքներէն մէկն էր, որ օտար ազգաց մէջ ամենևին անծանօթ է:

Առջի բերան կ'ըսուէր Արտախմեղ քաղաք, իբր Արտեմիսեայ քաղաք, որ շինուած էր Տրէշ բլրոյն վրայ, և հիմնարկութեան ժամանակը յայտնի չէ։ Ետքը ըսուեցաւ Վարդգեսի աւան, Երուանդ Սակաւակեաց Հայկազնոյն Վարդգէս քեռայրը անունովը, որ ընդարձակեց այս քաղաքը Քրիստոսէ իբր 550 տարի առաջ. ուր միջին Տիգրան Հրէաստանէն բերած Հրէից շատը բնակեցուց, և այն պատճառաւ վաճառականութիւնն ալ ծաղկեցաւ, և եղաւ գիւղաքաղաք։ Բայց երբոր Վաղարշ Թագաւորը պարսպով պատեց, անունն ալ Վաղարշապատ դրաւ, որ կ'ըսուէր նաև Նոր քաղաք և Քաղաքողաշտ՝ դաշտի մէջ շինուած ըլլալուն համար. որ Թագաւորական ձմերոցներէն մէկն էր, և կը ձգուէր Քասաղ գետէն ինչուան Մեծամօր գետը, որոյ վրայ կամուրջ շինուած էր քաղքին դիմաց։ Վաղարշապատայ չորս կողմը խրամ փորած էր անառիկ ըլլալու համար, և ունէր նաև միջնաբերդ։ Եկեղեցիներուն մէջ անուանի է կաթուղիկէն, որոյ տեղը հրեշտակի տեսիլքով յայտնեցաւ Գրիգոր Լուսաւորչին. այս եկեղեցին՝ որուն քով կայ նաև վանք մը, Հայաստանի անուանի և հին եկեղեցիներէն մէկն է, զոր Վահան Մամիկոնեան զօրավարը հիմնովին նորոգեց, և ետքերը ըսուեցաւ Էջմիածին, Գրիգոր Լուսաւորչին տեսիլքէն. կոչուեցաւ նաև Շողակաթ, եկեղեցւոյ տեղւոյն վրայ երևցած սիւնաձև լու֊

սոյն համար ։ Ուստի եկեղեցւոյ տօնը զոր կը տօնենք վերափոխման առջի օրը կամ Նաւակատեաց օրը Տողակար անունով, այս եկեղեցւոյն տօնն է, իբրև սօր հիմնարկութեանը պատճառաւ Աստուծոյ շնորհակալ ըլլալու համար հաստատուած ։ Անուանի էր նաև սրբոյն Գրիգորի Լուսաւորչի եկեղեցին, զոր շինեց Ներսէս Գ. Շինողը, ուր ամփոփեցան Լուսաւորչայ ոսկորները թորդանէն հոս բերելով ։ — Այս քաղաքը Արշակ Բին առեն առին Պարսից Շապուհ Թագաւորին զօրքերը ու կործանեցին, ու 19,000 տուն բնակիչ գերի տարին. հիմա գեղ դարձած է ։

222. Հռիփսիմեանց և Գայիանեանց վըկայարաններուն վրայ գիտելիք ։ — Վաղարշապատէն դուրս հիւսիսային արևելեան կողմը շինուած է Հռիփսիմեանց վըկայարանը, ուր Հռիփսիմէ իր երեսունուերկու ընկերներովը նահատակեցաւ ։ Այս եկեղեցին Պարսից Շապուհ Թագաւորը կործանել տուաւ, զոր սուրբն Սահակ նորէն շինեց, ու ետքը Կոմիտաս կաթողիկոս աւելի մեծցուց ու զարդարեց ։ Իսկ Գայիանեանց վկայարանը կ'իյնայ քաղքին հարաւային դին, ուր Գայիանէ երկու ընկերներովը նահատակեցաւ. զոր ետքը Եզր կաթողիկոսը ընդարձակեց ու զարդարեց ։ Այս երկու վկայարաններն ալ շինեց Գրիգոր Լուսաւորիչ Տրդատ Թագաւորին և բոլոր ժողովրդեան հետ մէկտեղ ։

223. Բաց 'ի վերոյիշեալ քաղաքներէն Այրարատ նահանգին մէջ ուրիշ յիշուած տեղերը: — Կը յիշուին

Դրասխանակերտ կամ Դրախանակերտ մեծ աւանը, զոր շինեց Արտաշէս Ա. Թագաւորը, և տէրութեան ձմերոցներէն մէկն էր, ուսկից էր Յովհան կաթողիկոս պատմիչը, և Շիրակ գաւառին մօտերը կ'իյնայ:

Ցոլակերտ և Փառախոտ աւանները, զորոնք շինեց Ամասիա նահապետը, և մէջը բնակեցուց իր Փառոխ և Ցոլակ որդիքը, որոց անունով մէկը Փառախոտ, մէկալը Ցոլակերտ ըսուեցաւ. ասոնք Մասիս լերին մօտ են:

Տառեօնք կամ Տառեանք աւանը Գայլատուայ ծովակին քովերը: — Կառակերտ և Հոռոմոց մարգ ըսուած աւանները, որ կաթողիկոսարանին կալուածներն էին: — Զողկերտ աւանը, Ընչիռն կամ Արդեանս գեղը, և այլն:

## ՄԵԾ ՀԱՅՔԷՆ ԴՈՒՐՍ ԵՂԱԾ

# ՀԱՅՈՑ ԵՐԿԻՐՆԵՐ

---

## ԳԼՈՒԽ Ի.

### ՓՈՔՐ ՀԱՅՔ

*Պատմական տեղեկութիւն.*

224. Փոքր Հայոց վրայ գիտելիք : — Հայաստան հին ատեն երկու մեծ մաս կը բաժնուէր. Մեծ Հայք՝ որուն վրայ խօսեցանք, և փոքր Հայք, զոր մեր նախնիք իրենց քաղցութեամբը միացուցին Մեծ Հայոց։ Արամ քաջ ու հայրենասէր նահապետը Հայաստանի արևմտեան կողմէն տիրեց ինչուան Կապադովկիա, և Մաժակ անունով իր ազգականներէն մէկը 10,000 զօրքով հոն կուսակալ Թողուց, հրաման տալով որ տեղացիք հայերէն խօսին. և տիրած երկիրները բնակչով լեցընելէն ետև, իրեք մաս բաժնեց. Կապադովկիայէն ինչուան Պոնտոսի կողմը Առաջին Հայք անուանեց, Պոնտոսէն ինչուան Մելիտինէ քաղաքը

Երկրորդ Հայք, ու անկէց ինչուան Ծոփաց աշխարհը Երրորդ Հայք, և Ծոփաց աշխարհը Չորրորդ Հայք՝ որ ետքէն Մեծ Հայոց տասնըհինգ նահանգներէն մէկը համարուեցաւ։

Այս բաժանմունքը այնչափ ծանօթ չէր Յունաց, և սովորաբար Մեծ Հայքէն որոշելու համար երկքին մէկէն փոքր Հայք կ՚ըսէին, ուսկից ետքերը Կապադովկիան ու Պոնտոսի մէկ մասը Հայոց ձեռքէն ելլելով՝ զատ թագաւորութիւն եղաւ, որով փոքր Հայոց սահմանն ալ պզտիկցաւ։ Չորրորդ դարուն վերջերը մեր Արշակ Գ. թագաւորին ժամանակ, Յունաց Արկադէոս կայսրը ու Պարսից Շապուհ թագաւորը Հայաստանը երկու բաժնեցին. և անկէ ետքը մէկ մասը Յունաց մէկալ մասը Պարսից ձեռքն ինկաւ. և Յոյնք Պարսից ձեռքը եղած մասին՝ որ Հայաստանի արեւելեան կողմը կ՚իյնար Այրարատ նահանգն ալ մէկտեղ առնլով, և իրենց մասէն շատ աւելի ընդարձակ էր, ընդհանուր անուամբ Պարսկահայք կ՚ըսէին. իսկ իրենց մասը Մեծ Հայք կ՚անուանէին, որ էր Հայաստանի արևմտեան կողմը Միջագետքէն սկսեալ ինչուան Տարօն գաւառը, Չորրորդ Հայք ու բարձր Հայք նահանգները և բոլոր փոքր Հայք մէկտեղ առնլով։

225. Յունաց կառավարութիւնը իրենց մասին մէջ։ — Հայաստանի մասը Յունաց տրուելէն ետև՝ նախ Արշակ Գ. թագաւորեց

Եկեղեաց գաւառին Երիզա քաղքին մէջ ։ Բայց երբոր ինքը մեռաւ, Արկադէոս կայսրը յոյն կոմս մը դրաւ, քիչ ատենէն երկիրը յանձնեց Խոսրով Գին որ կը թագաւորէր Պարսից մասին վրայ Գուին քաղքին մէջ, իրմէն տուրք միայն առնլով ։

Երբոր Արկադէոս կայսրը մեռաւ ու անոր տեղը յաջորդեց Թէոդոս փոքր, Թէպէտ և մեր Վռամշապուհ թագաւորին հետ բարեկամութեամբ էր, որ Խոսրով Գին յաջորդած էր, սակայն իրեն մասը անոր չյանձնեց, հապա իր կողմանէ գործակալներ դրաւ, որ կ'ըսուէին կիւրապաղատ և կոմս, և անկէ ետքը ինչուան վերջը Փոքր Հայք 'ի մեծ Հայոց զատուելով՝ Յունաց իշխաններով կը կառավարուէր ։ Եւ այն տեղի Հայերը Թէպէտ և Յունաց ձեռքին տակ աւելի հանգիստ էին քան Թէ Պարսից ձեռքին տակ եղած Հայերը, բայց կամաց կամաց Յունաց հետ խառնուելով՝ շատը իրենց ազգութիւնն ալ կորուսին ։

## Փոքր Հայոց լեռներն ու գետերը .

226 . **Փոքր Հայոց գլխաւոր լեռները ։** — Փոքր Հայոց երկիրը ընդհանրապէս լեռնոտ է, բայց մեծ Հայոց պէս բարեբեր ։ Գլխաւոր լեռներն են Տօրոս, որ Փոքր Հայքն ու Կապադովկիան Կիլիկիայէն կը զատեն ։ Տօրոսին մէկ զօտին է Անտիտօրոս՝ որ Փոքր Հայքը երկու մաս կը բաժնէ ։

Բաց 'ի այս լեռներէն կը յիշուին 'ի Նախնեաց Կանգուեակ կամ Կոնկուեառ լեռը՝ որ Տօրոսի մէկ մասն է, ու կ'իյնայ Գերմանիկ քաղքին կամ Մարաշու մօտ, անոր հիւսիսային դին։

Արգէոս լեռ, Կեսարիոյ քով առաջին Հայոց մէջ։

Սեաւ լեռ, որուն յոյները Մաւրոս կ'ըսէին հողը սև ըլլալուն համար, որ կ'երևի թէ հրաբուխէ եղած է, ու կ'իյնայ Կիլիկիայի հիւսիսային ծայրը, և Տօրոսին մէկ մասն է։ Երկոտասաներորդ դարուն մէջ այս Սեաւ լերին վրայ Հայոց, Յունաց ու Ասորւոց շատ վանքեր կային։

Սրբոյն Բարսղի լեռ, որ կ'ըսուի նաև Երկորեակ, երկու ճիւղ բաժնուած ըլլալուն համար. կ'իյնի Կեսարիա քաղքին հիւսիսային կողմը, որոյ վրայ է սրբոյն Բարսղի Կեսարացւոյն այրն ու անապատը։ Այս լեռը հիմա կ'ըսուի Ալի տաղ։

227. Փոքր Հայոց գլխաւոր գետերը։ — Ալիս գետ, որ Մեծ Հայոց սահմաններէն գալով և Սեբաստիոյ քովէն անցնելով կ'երթայ Սև ծովը կը թափի, Կապադովկիայի ու Պոնտոսի տէրութեան մէջէն անցնելով, ու այլևայլ գետակներ առնլով։ Այս գետոյն ջուրը քիչ մը կարմիր ըլլալուն՝ Տաճկները կ'ըսեն Գըզըլ ըրմագ, և համն ալ քիչ մը աղոտ է, աղի հանքերուն մէջէն անցնելուն համար։

Մելաս կամ Մելաս գետ՝ որուն Տաճկը-

ները հիմա Գուրա սու կ'ըսեն, որ նոյն յու-
նականն բառին Թարգմանութիւնն է, և կը
բխի Կեսարիոյ քաղքին մօտ, ու կ'երթայ
Եփրատ գետոյն հետ կը միանայ Մելիտի-
նէ քաղքին քով:

Իրիս կամ Ռիս գետ, որ երկու մեծ ճիւղ
կը բաժնուի. մէկը կը բխի Սեբաստիոյ
քաղքին հիւսիսային կողմէն, մէկալը Աստ-
ղիկ (Եըլտըզ) լեռնէն՝ որ Պարխար լեռնե-
րուն մէկ մասն է: Առջի ճիւղը կ'ըսուի Լի-
գոս կամ Գայլ գետ. իսկ մէկալ ճիւղն է
բուն Իրիս գետը, և երկուքն ալ մէկտեղ
միանալով կը Թափին Սև ծովը. հիմայ Եշ-
իլ ըրմագ կը կոչուի:

## Առաջին Հայք.

228. Առաջին Հայոց սահմանը: — Ա-
ռաջին Հայք կ'իյնայ Երկրորդ Հայոց քով,
Կապադովկիոյ ու Պոնտոսի տէրութեան
մէջ, Կապադովկիային մէկ մասն ալ մէկ-
տեղ առնլով: Սակայն ինչպէս Առաջին
Հայոց սահմանը, սանկ ալ նաև Երկրորդ
ու Երրորդ Հայոց սահմանները ալ միշտ
հաստատուն չմնացին, հապա այլևայլ ա-
տեն շատ փոփոխութիւններ առին, մէկը
մէկալին հետ խառնուելով:

229. Առաջին Հայոց գլխաւոր քաղաք-
ները: — Առաջին Հայոց գլխաւոր քա-
ղաքն է Կեսարիա, որ Քրիստոսէ դրեթէ
2000 տարի առաջ շինուեցաւ Արգէոս լե-

րին սորոտը ։ Այս քաղաքս շինեց Մշակ հայ կուսակալը, զոր մեր Արամ նահապետը Կապադովկիայի մէջ կողմնապահ թողուցեր էր, և իր անունով քաղաքը Մշակ անուանեց. բայց տեղացիք չկրնալով հընչել, Մաժաք ըսին ։ Ատեն անցնելէն ետև մեծին Միհրդատայ որդին փոքր Միհրդատ, մեր միջին Տիգրանայ քեռորդին, Քրիստոսէ 40 տարիի չափ առաջ, Հռոմայեցւոց Յուլիոս Կեսարէն իշխանութիւն առնելով Մաժաք քաղաքը ընդարձակեց ու փառաւոր շէնքերով զարդարեց ու պարսպով պատեց, և Յուլիոս Կեսարին անունովը Կեսարիա[1] անուանեց, որ կ'ըսուի նաև մեր մատենագրաց մէջ Կեսարու քաղաք կամ Կեսար. ու անկէց ետքը վերցուեցաւ Հայոց իշխանութիւնը այս քաղքէն, ու քիչ ատենէն նաև բոլոր Կապադովկիայէն ։

Վաղերիոս կայսեր ատեն Շապուհ Պարսից թագաւորը տիրեց այս քաղքիս, ուր գրեթէ 400,000 բնակիչ կար այն ատեն, և մէջը շատ աւեր ու կոտորած ըրաւ ու շատ ալ գերի տարաւ ։ Այս քաղաքս հին ատեն ծաղկած քաղաքներէն մէկն էր, և Հայոց կաթողիկոսները ինչուան մեծին Ներսէսի ատեն հոս տեղի արքեպիսկոպոսէն կ'օ-

1 Ոմանք կ'ըսեն թէ Տիբերիոս կայսրը այն կողմերուն տիրելով Օգոստոս կեսարին անունովը Կեսարիա կոչեր է. ոմանք ալ ուրիշ կերպով կը պատմեն ։

ծուէին Գրիգոր Լուսաւորչէն սկսեալ ։ Այս քաղքէն շատ երեւելի մարդիկ ելան Յունաց ձեռքը անցնելէն ետև, յորոց մէկն է սուրբն Բարսեղ ։

Կեսարիա քաղքին արևմտեան կողմը կ՚էյնայ Նիգիտորա ամուր ու անառիկ բերդը, ուր մնաց Յունաց ձեռքովը 1079էն Գագիկ Բագրատունեաց վերջին Թագաւորը։ Թորոս Ա. Կիլիկիոյ իշխանը (1112էն) տիրեց այս բերդին, ու Գագիկ Թագաւորին մահուանը վրէժը առաւ գինքը սպաննող-ները չարաչար սպաննելով. և անկէ ետքը այս բերդս ինչուան 1310էն առենները Հայոց ձեռքն էր ։

Կիզիստռայի մօտ է Արծիաս դաշտը ։

230. Առաջին Հայոց կամ Կապադովկիայի [1] մէջ յիշուած ուրիշ քաղաքները ։ — Եշզոկիա, Սեբաստիոյ արևմտեան կողմը Իրիս գետոյն մօտ, որոյ վրայ հինգ կամարով քարաշէն կամուրջ կայ շինած քաղքին դիմացը ։ Ունի ամուր բերդ բարձր ա-

1 Մենք հոս ուզեցինք ու ջանացինք մեր Արամ նահապետին բաժանմանը հետևելով, այն երկիրներն ալ որ ետքէն Պոնտոսի ու Կապադովկիայի մասն սեպուեցան, դնել Փոքր Հայոց մէջ. Թէպէտ և այն տեղի քաղքըներէն ոմանք՝ վերջէն շինուած ըլլան, և հիմակուան օտարազգի աշխարհագիրները մեր բռնած ոճը չբանեցընեն, որոնք Փոքր Հայոց արևելեան կողմի քաղքըներուն շատը հին Կապադովկիոյ մէջ, ու հիւսիսային կողմինները Պոնտոսի տէրութեան մէջ կը դնեն ։

պատուաժի վրայ շինուած որ հիմա քայքայւած է։

Պիզու քաղաք, զոր Ցունաց Մոնոմախոս կայսրը 1045ին իրեն շրջակայ սահմաններովը մէկտեղ Բագրատունեաց վերջի Գագիկ Թագաւորին տուաւ Անի քաղքին տեղ։ Այս քաղաքս թերևս հինակուան Պիզանի գեղն է որ Եւդոկիա քաղքին մօտերը կ'իյնայ։

Նազիանզ, Կեսարիա քաղքին մօտ արևմտեան կողմը, ուսկից էր Գրիգոր Նազիանզացին և իրեն որդին Գրիգոր Աստուածաբանը։

Նէոկեսարիա բերդաքաղաք, Եւդոկիա քաղքին արևելեան հիւսիսային կողմը կ'իյնայ գետոյն քովը։

Նիկոպոլիս, Եւդոկիայէն արևելեան կողմը զոր Պոմպէոս շինեց. ունի ամուր բերդ, և քովէն կ'անցնի Կերասոնոս գետը։ Հոս Միհրդատ Պոմպէոսէն յաղթուեցաւ։

Նիսսա կամ Նիւսա, Կեսարիա քաղքին մօտերը, ուր Բարսղի Կեսարացւոյն եղբայրը սուրբն Գրիգոր 370ին եպիսկոպոս եղաւ, անոր համար ալ ըսուեցաւ Գրիգոր Նիւսացի։ Այս քաղաքս կ'երևի թէ կ'ըսուի երբեմն նաև Նէոկեսարիա, որ վերը յիշած Նէոկեսարիա քաղքէն տարբեր է, և որ կ'ըսուի նաև Նէոկեսարիա Պոնտոսի։

Կոմանա քաղաք, որ շինուած է Իրիս գետոյն վրայ. ուր մեռաւ և թաղուեցաւ Յովհան Ոսկեբերան հայրապետը, բայց

ետքը շատ չանցաւ մարմինը փառաւոր հանդիսով Կոստանդնուպոլիս փոխադրեցին ։ Այս քաղաքս հիմա աւերակ է, և կ'ըսուէր հին ատեն Կոմանա Պոնտոսի և մէջը անուանի էր Բելլոնա կուռքին տաճարը ։ Կայ ուրիշ Կոմանա քաղաք մ' ալ Կապադովկիոյ մէջ Սարոս գետոյն վրայ ։

Ծամնդաւ բերդաքաղաք ապառաժ լերին վրայ շինած, զոր Յունաց Տուկիծ կայսրը Կարս քաղքին ու Վանանդ գաւառին տեղ տուաւ 1064ին Գագիկ Աբասեան Կարուց Թագաւորին, Ամասիա, Լառիսսա ու Կոմանա քաղաքներուն հետ և ուրիշ հարիւր գեղեր իբրև իրեն կալուած ։

Զէլիա կամ Զէլա [1] քաղաք՝ որ հիմա կ'ըսուի Զիլէ, հին ատեն անուանի էր Անահտայ փառաւոր տաճարին, ու Քրիստոսէ 67 տարի առաջ մեծին Միհրդատայ Լուկուլլոսին հետ եղած պատերազմին համար ։

## Երկրորդ Հայք .

231 . Երկրորդ Հայոց սահմանը և գլխաւոր քաղաքը ։ — Երկրորդ Հայք կ'իյնայ Եփրատ գետոյն ու Բարձր Հայոց արևմը-

1 Ոմանք Զէլա, Կոմանա, Նէոքէսարիա քաղաքները Պոնտոսի տէրութեան մէջ կը դնեն, անոր սահմանակից ու ատեն մը անոր տակը ըլլալուն համար ։

տեան կողմը, Պոնտոսի, առաջին Հայոց ու երրորդ Հայոց մէջ։ Գլխաւոր քաղաքն է Սեբաստիա, որ շինուած է Ալիս գետոյն քով դաշտի մը մէջ առաջին Հայոց սահմանակից, անոր համար երբեմն անոր մէջ ալ կը դրուի։ Այս քաղաքս հին ատեն կ'ըսուէր Կաբիրա, զոր ետքը Պոմպէոս մեծցուց և ըսուեցաւ Դիոսպոլիս, և քիչ ատենէն Պոնտոսի թագուհին Օգոստոս կայսեր պատիւ մը ընելու համար, քաղքիս անունը Սեբաստ կոչեց որ ըսուեցաւ նաև Սեբաստիա։

Մեր Սենեքերիմ Վասպուրական աշխարհին թագաւորը թշնամեաց յարձակմունքներէն ձանձրանալով, 1021ին այս քաղաքս խնդրեց Յունաց Վասիլ կայսրէն, նոյնպէս և անոր սահմանակից երկիրները, խոստանալով բոլոր Վասպուրական աշխարհը իրեն թողլու. և առաւ Սեբաստիայէն ինչուան Եփրատ գետը, և բոլոր իշխաններովը զօրքերովը, ու անթիւ բազմութեամբ եկաւ հոս՝ հետը բերելով նաև Վարագայ խաչը, որոյ համար Սեբաստիոյ մօտ Սուրբ Նշանի վանքը շինեց. բայց իր մահուընէն ետև Վարագայ խաչը նորէն իր տեղը դարձաւ, ինչպէս որ ինքն պատուիրեր էր. ու մարմինն ալ հոն տարին թաղեցին։ Այս Սենեքերիմ թագաւորին աղջիկը, կ'ըսեն թէ Ալիս գետոյն վրայ Սեբաստիա քաղքին մօտ քարաշէն կամուրջ մը շինեց 18 կամարով, որ ինչուան հիմա

կեցած է, և ծուռ գիրքով ըլլալուն համար Ծուռ կամուրջ կ'ըսուի։

1060ին երբոր Սեբաստիայի մէջ Ատոմ՝ Սենեքերիմայ որդին կը թագաւորէր, Տուղրիլ Պարսից թագաւորին զօրքերը յարձակեցան Սեբաստիայի վրայ, ու բնակիչներէն շատը թրէ անցընելէն, ու քաղաքը աւար ընելէն ու մնացած բնակիչները գերելէն ետև, բոլոր քաղքին կրակ տուին, որոյ մէջ 100 փառաւոր եկեղեցի կար. Ատոմ թագաւորն ալ փախաւ Կոստանդնուպոլիս գնաց։

Բայց քիչ ատենէն ետև դառնալով, նորոգեց քաղաքը որ առջինին պէս զարդարուեցաւ։ Սակայն Լէնկթիմուր Թաթարաց խանը 1403ին առնլով այս քաղաքս, մէջը սոսկալի ջարդ ըրաւ, ու քաղաքացիներէն 4000 հոգի ողջ ողջ գետինը թաղել տուաւ, ուր նոյն ատեն 120,000 բնակիչ կը համրուէր, և հիմնայատակ ըրաւ քառասուն մանկանց փառաւոր եկեղեցին, որ 40 գմբէթ ունէր, և ուր իրենց սուրբ նշխարքը ամփոփուած էին։

232. Երկրորդ Հայոց ուրիշ գլխաւոր քաղաքները։ — Սեբաստիոյ մօտ են Լառիսսա և Աշարա քաղաքները, զորոնք Սեբաստիա քաղքին հետ մէկտեղ Վասիլ կայսրը Սենեքերիմ թագաւորին տուաւ։

Տիւրիկէ կամ Տիպրիկէ ամուր բերդաքաղաք, Սեբաստիոյ արևելեան կողմը, որ միջին դարու ատեն շատ անուանի էր։ Տիւ-

րիկէ քաղաքին քովն է կաստաղոն բերդը , որ հիմա աւերակ է ։

Տարանտա քաղաք , ունի ամուր բերդ բլրոյ վրայ , և կ՚իյնայ Տիւրիկէին հարաւային կողմը ։

Ակն կամ Ակնայ քաղաք , զոր Արծրունեաց Սենեքերիմ Թագաւորին հետ Սեբաստիա եկած իշխանները շինեցին ԺԱ. դարուն մէջ լեռնակի մը վրայ Եփրատ գետոյն մօտ , որոյ վրայ քաղաքին դիմացը կամուրջ մը ձգած է ։ Քաղաքին անունը ելած է Ակն ըսուած վտակին անունէն որ քաղաքին մէջէն կ՚անցնի ։ Ակնայ քաղաքին մօտ է Նարեկայ վանքը , զոր Վասպուրականի Նարեկ վանքին միաբանները շինեցին , անոր համար անունն ալ Նարեկ դրին , որոնք Սենեքերիմ Թագաւորին հետ մէկտեղ թողլով իրենց երկիրը , եկեր էին այս կողմերս բնակելու , Գրիգոր Նարեկացւոյն մարմինն ալ հետերնին բերելով , զոր այս վանքին մէջ թաղեցին ։

Ակնայ քաղաքին մօտ են Չիմարա և Արաբկիր քաղաքները Եփրատ գետոյն քով ։ Արաբկեր քաղաքը Յունաց Վասիլ կայսրը Սեբաստիա քաղաքին հետ մէկտեղ տուաւ Սենեքերիմ Թագաւորին , որոյ իշխանները շատ մեծցուցին ու մէջը նորոգութիւններ ըրին , իբրև թէ նորէն շինած ըլլային ։

Արօրակ քաղաք , որ Յունաց փոքր Թէոդոս կայսեր ատենը շինուեցաւ ու զօրանիստ քաղաք եղաւ , և կ՚իյնայ Երզնկա

քաղքին մօտ Ագշար դաշտին մէջ ։ Այս քաղաքս հիմա գեղ մի է, և կ'ըսուի Ածպտեր ։

Ագշար քաղաք, որ ըսել է Սպիտակ քաղաք, կ'իյնայ Ագշար օվայ կամ Ագշարապատ ըսուած բարեբեր ու զուարճալի դաշտին մէջ, որուն ռամկօրէն կ'ըսեն Ախշար կամ Աշխար դաշտ ։

## Երրորդ Հայք ·

233 · Երրորդ Հայոց սահմանը և գլխաւոր քաղաքը ։ — Երրորդ Հայոց սահմանն է արևելքէն Եփրատ գետը · արևմուտքէն Կապադովկիան, հիւսիսէն երկրորդ Հայք, հարաւէն Կիլիկիան ու Եփրատացւոց աշխարհը ։ Մայրաքաղաքն է Մելիտինէ կամ Մելտինէ կամ Մելտենի, որ անուանի հարուստ ու բազմամարդ քաղաք էր, Շամիրամէն շինուած, ըստ ոմանց, և Տրայիանոս կայսրէն նորոգուած 116ին առենները, որ կ'իյնայ Եփրատ գետոյն արևմտեան կողմը, անկէց երկու մղոն հեռու Մելաս գետոյն Եփրատին հետ խառնուելու տեղին մօտ ։ Այս քաղքիս մէջ 572ին առեն ահագին պատերազմ եղաւ Պարսից Խոսրով Թագաւորին ու Յուստինիանոս կայսեր հետ ։ 1060ին առենները առին Պարսիկներն ու Թուրքերը այս քաղաքս, ու մէջը մեծ ջարդ ընելով քաղաքն ալ գրեթէ 'ի հիմանց կործանեցին, և պարիսպները փլուցին, որ հիմա աւերակ են ։ Այս քաղքիս

Տաճկըները կ՚ըսեն Մալաթիա, որ հիմա առջի փառքէն շատ ինկած է։

234. Երրորդ Հայոց ուրիշ երեւելի քաղաքները։—Սամոսատիա, որ ետքերը ըսուեցաւ Սամոշատ եւ Սամսատ[1], հին երեւելի քաղաք է Եփրատ գետոյն քով բարձր տեղ շինած։ Սուրբն Մեսրոպ այս քաղքին մէջ Քրիստոսի 406 թուականին կարգաւորեց Հայոց գիրը, իրեն օգնական առնլով Հռոփանոս անունով իմաստուն ու ճարտար մարդը՝ որ ազգաւ յոյն էր։

Քեսուն քաղաք, Գերմանիկ քաղքին կամ Մարաշին հիւսիսային կողմը լեռներու մէջ շինուած։ Մետասաներորդ դարուն Ռուբէն առաջնոյն ատեն, հոս կը նստէր Գող Վասիլ անունով հայ զօրաւոր իշխան մը, որ անդադար յարձակմունք ընելով Տաճկըներուն շատ նեղութիւն կու տար, ու մեծամեծ յաղթութիւններ կ՚ընէր, եւ ուրիշ ազգաց երկիրներուն կը տիրէր, անոր համար Գող ըսուեցաւ։ Այս Քեսուն քաղաքը 1141ին Թաթարները առին ու կրակ տուին այրեցին, եւ մէջի բնակիչները ցրուեցան եւ ուրիշ տեղեր գացին։ Քեսուն քաղքին մօտերն է Կարմիր վանքը Շուղր անապատին մէջ, ուր մեռաւ եւ թաղուեցաւ Գրիգոր Վըկայասէրը 1105ին։

Բարձրբերդ, զօրաւոր եւ ամուր բերդ է,

1 "Նստէր 'ի քաղաքին որ կոչէր Սամուսատ, զոր ասեն 'ի հնումն շինեալ Սամոսի,,. Լուսփ. 25։

Տօրոս լեռներուն վրայ շինած բարձր դիր-
քով, անոր համար ալ անունը Բարձրբերդ
ըսուած է, որ առաջ Յունաց ձեռքն էր,
բայց ետքէն (1080) Ռուբէն Ա. առաւ ա-
նոնցմէ : Բարձրբերդին մօտերը կ'իյնայ
Մոլևոն վանքը :

Հասանմանսուր քաղաք, որոյ շիտակն է
Հըսնըմանսուր, որ ըսել է արաբացւոց լե-
զուով Մանսուրի բերդ : 1108ին Տափար
Պարսից թագաւորը Գող Վասիլին վրայ
երթալու ատեն, այս քաղքիս քովի բնա-
կիչներէն շատ գերի ըրաւ, որք հունձի հա-
մար մօտակայ դաշտերը ցրուեր էին :

Ռաբան, ամուր բերդաքաղաք Եփրատայ
մօտ, որ նոյնպէս Գող Վասիլին ձեռքն էր,
բայց 1116ին Եդեսիոյ Պաղտին կոմսին
ձեռքը անցաւ :

Ոշնի քաղաք, ուր Յուլիանոսի հալածա-
նաց ատեն (360) նահատակեցաւ ու թա-
ղեցաւ սուրբն Ստեփանոս Ուլնեցի, որ կո-
կիսոն քաղքին հայ իշխաններէն մէկն էր :

Երրորդ Հայոց մէջ երևելի են նաև Պե-
հեսնի կամ Պեհեսնիե քաղաք, որ ամուր
բերդ ունի . Վարդահերի աւան, Փարզման
բերդաքաղաք, Թուշրեր քաղաք որ ատեն
մը Գող Վասիլին ձեռքն էր և պատերազ-
մով առեր էր լատինացւոց ձեռքէն Ուշրեմն
քաղքին հետ մէկտեղ : Կոկիսոն քաղաք
Մելաս գետոյն քով, Կանչի աւանաբերդը
Եփրատ գետոյն մօտ . Շահապ բերդը, և
այլն :

235. Ջահան գաւառին վրայ գիտելիք։ — Ջահան գաւառը Երրորդ Հայոց հարաւային կողմը կ'իյնայ, ուսկից կը բղխի Գիւռամոս գետը որ վերջերը Ջահուն կամ Ջահան ըսուեցաւ, և հիմա Ճիհան կ'ըսուի, որ կ'անցնի Կիլիկիային մէջէն ու կը թափի Միջերկրական ծովը։ Ջահան գաւառին մէջ երևելի է Հռնի քաղաքը Մելաս գետոյն հարաւային կողմը, ուր 1073ին առանձին կաթուղիկոս նստաւ 20 տարիի չափ։ Այս գաւառին մէջ կը յիշուին նաև Աշոտիաւան, Աշպրասրա որ է Ալպոսդան, և Ախար աւանները։

## ԳԼՈՒԽ ԻԱ.

### Միջագետք Հայոց.

236. Հայոց Միջագետքին վրայ գիտելիք։ — Միջագետաց վերին մասը 'ի սկզբանէ հետէ Հայոց ձեռքը ըլլալուն կ'ըսուէր Միջագետք Հայոց, որ Աղձնիք նահանգին սահմանակից է, և կ'իյնայ Եփրատ ու Տիգրիս գետերուն մէջ. երկիրը բարեբեր և օդը առողջարար։ Ինչուան Երուանդ Բի ատեն Հայոց ձեռքն էր այս երկիրս, անկէ վերջը Հռովմայեցւոց անցաւ։

237. Հայոց Միջագետքին երևելի քաղաքները։ — Մծբին քաղաք, որ հին ա-

տեն շատ անուանի էր , և կրկին ամուր պարիսպներով ամրցած , ուր հաստատեց Վաղարշակ Ա. իր աթոռը , և իրմէ ետև ինչուան Աբգար Թագաւորին ատեն Քրիստոսէ 14 տարի առջը , Մծբին քաղաքն էր Հայոց Թագաւորանիստ քաղաքը ։ Այս քաղաքս ետքերը երկրաշարժէ մը կործանելուն պատճառաւ , Աբգար Թագաւորին քեռորդին Սանատրուկ Թագաւորը փլուց ու նորէն շինեց , առջինէն շատ աւելի փառաւոր , ու չորս կողմն ալ կրկին պատուարով պատեց , և իր արձանն ալ հրապարակին մէջ տնկեց ձեռքը դրամ տուած՝ իմացընելով որ քաղքին շինութեանը համար բոլոր իր գանձը հատաւ ․ ու աթոռն ալ Եդեսիայէն հոն փոխադրեց Քրիստոսի 55 Թուականին ։ Այս քաղաքիս եպիսկոպոսն էր Յակոբ Մծբնայ հայրապետը Գրիգոր Լուսաւորչին հօրաքեռորդին , որոյ համար քաղքին մէջ փառաւոր եկեղեցի մը շինուած էր , ու մարմինն ալ հոն ամփոփած , բայց ետքէն ուրիշ տեղ փոխադրեցաւ ։ Հիմա այս քաղաքս աւերակ է , ու հայի մէկ քանի չէնք կ'երևի մէջը , որոց մէկն է նաև սրբոյն Յակոբայ եկեղեցին , կէս մը գետինը Թաղուած ։

238 ․ Եդեսիա քաղքին վրայ գիտելիք ։ — Եդեսիա քաղաքը որ կ'ըսուի նաև Ուրհայ , մեզի կ'երևի թէ սուրբ գրքին մէջ յիշուած հին Ուր քաղաքն է , զոր սուրբ գիրքը Մէջագետաց մէջ կը դնէ , և Թերևս հուր

բառէն կոչուած է Ուռհայ, հին ատեն մէջը կրակ պաշտելնուն համար: Բայց Յոյն և Հռովմայեցի մատենագիրները կ'ըսեն թէ Եդեսիա քաղաքը Ասորւոց մեծն Սելեկոս թագաւորը շիներ է, զոր մեր Աբգար թագաւորը Հռովմայեցւոցմէ ապստամբելու մտքով հիմնովին նորոգեց և մէջը զօրաւոր բերդ շինեց, ու ամուր պարիսպներով ամրցուց, և իր աթոռը Մծբինէն հոս փոխադրեց, բոլոր մեհենական գիրքերը ու դիւաններն ալ մէկտեղ, և մէջը շինեց փառաւոր թէատրոն մը Հռովմայեցւոց թատրոններուն նման և ուրիշ շատ գեղեցիկ շէնքեր, և սուրբ Աստուածածնի եկեղեցի մը, որոյ համար կ'ըսեն թէ եօթը քարաշէն գմբէթ ունի եղեր, որոց վեցը Անանուն Աբգարու որդին կործանել տուեր է և միայն մէկը մնացեր է ինչուան հիմա: —Երուանդ Բ որ Սանատրուկին յաջորդեց, խնդրեց Հռովմայեցւոցմէ երթալ Այրարատ նահանգին մէջ թագաւորել, որ վերին Հայք կ'ըսուէր, խոստանալով Հռովմայեցւոց թողուլ բոլոր Միջագետքի մէջ եղած Հայոց երկիրները. և իր խնդիրքին հասնելով աթոռը փոխեց Արմաւիր քաղաքը, անկեց ալ Երուանդաշատ: Ասով անկեց ետքը Միջագետքի մէջ եղած Հայոց երկիրները ելաւ իրենց ձեռքէն, ու Հռովմայեցիք Եդեսիա քաղաքը աւելի ամրցնելով, հոն իրենց դանձարան շինեցին Միջագետքէն, Ասորւոց երկրէն, Հայաստանէն տուրքերը

ժողվելու համար, ու Պոնտոսի Սինոպ քաղաքին մեհենական գիրքերն ալ հոս բերին։

Եդեսիա քաղաքը շատ անգամ թշնամիներէն հարուածներ կրեց, բայց ամենէն սոսկալին ու վերջինը եղաւ 1144ին, որ ատեն Զանգի Բերիոյ ամիրայն ամիսի մը չափ քաղաքը պաշարելէն ետև, առաւ լատինացւոց ձեռքէն, ուր շատ հայեր ալ կային, և անհագին կոտորած ընելով քաղաքը արիւնլուայ ըրաւ։ Այս սոսկալի կոտորածը գեղեցիկ կը ստորագրէ Ներսէս Շնորհալին Եդեսիոյ ողբին մէջ։

239. Հայոց Միջագետաց մէջ յիշուած ուրիշ քաղաքները։—Խառան երևելի քաղաքը, որ կը կարծուի թէ Քանանացիք շինած են, ուր պանդխտեցաւ Աբրահամ նահապետը, քանի որ այս քաղաքս Քանանացւոց ձեռքն էր. բայց ետքէն Հայոց ձեռքը անցաւ, ուր խաւրեց Սանատրուկ թագաւորը Աբգարու բարեպաշտ Հեղինէ կինը իրմէ տեսած բարիքներուն փոխարէն, Միջագետաց դշխոյութիւնը իրեն յանձնելով[1]։

1 Այս Հեղինէ թագուհին է որ ջուղելով կռապաշտներու մէջ բնակիլ, Կլոդեայ կայսեր ատենը գնաց Երուսաղէմ, ու հոն սովին ժամանակ բոլոր իր գանձը ծախելով Եգիպտոսէն ցորեն գնեց ու բաժնեց աղքատներուն։ Անոր համար երբոր մեռաւ, մեծ հանդիսով թաղեցին քաղքին դրան առջև, իբրև Հրէից ազգին բարերարը, ու վրան ալ փառաւոր գերեզման շինեցին, ինչպէս կ'ըսէ Եւսեբիոս, որ ինչուան Խորենացւոյն ատեն կեցած էր։

Այս քաղաքս հիմա աւերակ է, որոյ մօտե-րը կը ցուցընեն Ցոր. Նահապետին գերեզ-մանը ։

Բիրգա, պարսպապատ քաղաք է, որ հի-մա կ'ըսուի Պիր կամ Պիրկէհիր. Հայոց Թա-գաւորները չինեցին Ե[illegible] գիւղին քով, որ շատ վաճառաշահ քաղաք էր հին ա-տեն. ունի ամուր բերդ մը զոր Ներսէս Շնորհալւոյն Ապլխարիպ և Լիկոս հօրեղ-բօրորդիքը չինեցին, քաղաքը Պալսից ձեռ-քէն ազատելէն ետև[1] ։

Մերտիւն բերդաքաղաք, որ լերանը վրայ շինած ամուր քաղաք է, հաստ պարիսպ-ներով պատած, և կ'իյնայ Եղեսիա ու Մըծ-բին քաղաքաց մէջ ։

Զարտա Գզիրա քաղաք, որ հիմա Ճէզիրէ կ'ըսուի՝ որ ըսել է կղզի, և կ'իյնայ Տիգրի-սին արևմտեան կողմը, ուսկից Թերակղզի մը պէս չորս կողմէն պատած է ։ Ունի ա-մուր բերդ ահագին պարսպով պատած ։

Նիկեփորիոն քաղաք, որ հիմա կ'ըսուի Ռաքքա և կ'իյնայ Բելիքա գետակին Ե-փրատայ հետ խառնուելու տեղը, զոր շի-նեց մեծն Աղեքսանդր իրեն գերքին հանե-լով, և հին ատեն շատ անուանի էր. ետքէն Կոստանդին կայսրը նորոգեց, բայց հիմա մեծ մասը աւերակ է ։

1 Այս Պիր քաղքին հին անունը ոմանք, Բիւր-գո կ'ըսեն, և ոմանք Բիբիլոս, և ուրիշները Բիւբի-ոն կամ Պիւրգոսոնոն. բայց այս վերջինը անստոյգ կ'երևի ։

Հայոց Միջագետաց մէջ կ'իյնան նաև Արզարշատ աւանը զոր Աբգար Թագաւորը շինեց. Ջերմուկ և Սրուճ քաղաքները, Սինգարա ամուր քաղաքը համանուն լերան ոտքը շինած, որ հիմա կ'ըսուի Սինճար: — Սևաւերակ կամ Սևերակ ամուր բերդաւանը. Թլրովրաշ ամուր և անուանի բերդը Սևաւերակին մօտ, Արիւծարիկ ու Թլկոշրան աւանները. Կամուրջ քաղաքը որ հիմա կ'ըսուի Կարմուճ գեղ, և քովերը կան շատ հին աւերակներ: Նշեբիկ բերդաքաղաք որ կ'ըսուի նաև Նեծէյի:

Հայոց Միջագետաց մէջ կ'իյնայ Բուշգեան գաւառը, որ Աբգար Թագաւորին ատեն Միջագետաց մէջ Հայոց զօրանիստ տեղն էր:

## ԳԼՈՒԽ ԻԲ.

### Ատրպատական.

240. Ատրպատական աշխարհին սահմանը: — Ատրպատական աշխարհը կ'իյնայ մեծին Հայոց արևելեան կողմը, Կասպից ծովուն քով, Մարաց երկրին հիւսիսային դին: Երկիրը տեղ տեղ խիստ բարեբեր է, մանաւանդ Դաշտփշու կողմերը, ուր գրեթէ ամէն տեսակ բերք առատ կու գայ, և ունի ճերմակ մարմարիոնի նման քարահանք, երկաթ, պղինձ, հանքային ջուրեր, առատ աղահանքեր և նաւթ:

241 . Գաւառական գիտելիք Ատրպատական աշխարհին վրայ : — Այս աշխարհին անունը Ատրպատ նախարարին անունովը Ատրպատակեան ըսուած է կ'ըսեն Յոյնք , որ կ'իյնայ Դարեհ Գ Պարսից թագաւորին ատենը : Աւելի հաւանական է թէ ատր բառէն ելած է , որ պարսկերէն կրակ ըսել է , և ասկէց կը հետևցընեն թէ կրակապաշտութիւնը նախ հոս հնարուած է :

Ատրպատական աշխարհը մեծն Արշակ Պարթև իր Վաղարշակ եղբօրը տուաւ , զինքը Հայաստանի վրայ թագաւոր դնելով : Եւ Վաղարշակէն ինչուան Ա. Արտաւազդայ ատեն կ'երևի թէ Հայերը կ'իշխէին նաև այս ընդարձակ աշխարհին վրայ , և անկէց ետքը Պարսից ձեռքն անցաւ , և ատեն ատեն ինքնագլուխ եղաւ , փայտակարան նահանգին նաև Պարսկահայոց մէկ մասին հետ :

242 . Ատրպատականի գլխաւոր քաղաքը : — Ատրպատականի գլխաւոր քաղաքն է Դաւրէժ , որ կ'ըսուի նաև մեր մատենագիրներուն մէջ Գանձակ շահաստան . շինեց մեր մեծն Խոսրով թագաւորը Պարսից Սասանեան Արտաշիր թագաւորին հետ պատերազմելէն ու զինքը ինչուան Հնդկաստան փախցընելէն ետև , Քրիստոսի 250 թուականին ատենները , և անունն ալ դրաւ Դաւրէժ իբր դա 'ի վրէժ , Արտաշիրէն Արտաւանայ մահուանը վրէժը առնլոյն համար :

Այս քաղաքս կը կոչեն ոմանք Երկրորդ Եկբատան , Մարաց Եկբատան քաղքին պէս

եօթը աշտարակ պարիսպներով պատած ըլլալուն համար, զոր 321ին առաւ Պարսից ձեռքէն Տրդատ թագաւորը և աւելի ամրացուց ու նորոգեց։ Ատեն անցնելէն ետև (1260) Հուլաւու Թաթարաց խանը նորէն նորոգեց, և անուանեց Հոշլաուռ բախտ։ Այս քաղաքը հին ատեն խիստ բազմամարդ էր, ինչուան 500,000 բնակչով, և շատ ծաղկած էր վաճառականութեամբ, անոր համար շահաստան բառով մէկտեղ կը գործածուի, որ ըսել է վաճառաշահ քաղաք կամ շահեկան տեղ. որոյ վաճառականութիւնը ինչուան հիմա մնացած է, թէպէտ և առաջինէն շատ պակսած։ Այս քաղքին քովլերան վրայ կար հին ատեն հայու վանք մը, զոր հիմա Տաճկըները մզկիթ ըրած են. բերդի նման չէնք մ'ալ, որոյ համար կ'ըսեն Հայերը թէ մեծին Խոսրովայ բնակարանն ըլլայ։

Դավրէժ քաղաքը շատ անգամ Տաճկըներն ու Արաբացիք առին կողոպտեցին ու աւրշտըկեցին։ Բաց ասկէց այլևայլ անգամներ գետնաշարժէ շատ միասներ եղած է քաղքին մէջ։

243. Ատրպատականի ուրիշ երևելի քաղաքները։ — Արտաւիլ քաղաք որ դաշտի մէջ շինուած վաճառաշահ քաղաք է, և ունի ամուր բերդ, որ հիմա փլած է։ Այս քաղքին մէջն է Պարսից թագաւորներուն շատին գերեզմանները։

Մարաղա քաղաք, Ուրմեայ ծովակին մօտ։

Քաղքէն դուրս բլրոյ վրայ կար դիտարան մը, որ հիմա բոլորովին աւերակ է։

Նեռառ աւան, զոր շինեց Պարսից Պերոզ Թագաւորը։ — Էրձագ աւան, զոր շինեց Պերոզին Կաւատ որդին։ — Խաշխաշ գիւղաքաղաք, Արտաւիլին մօտ, և այլն։

244. Դառին գաւառին վրայ գիտելիք։ — Դառին գաւառը կամ Դարանդաշտը՝ որոյ մէջն է Մուղանի ըսուած ընդարձակ ու տափարակ դաշտը, տեղ տեղ շատ պտղաբեր և տեղ տեղ անպտղաբեր, Ատրպատականի ու Փայտակարանի մէջ կ՚իյնայ։ Մուղան դաշտին մէջն էր Ճինկիզխանին ցեղէն եղած Թաթարաց խաներուն ձմեռոցները, և Դառինի կամ Դարանդաշտին մէջ ամարանոցները, ուր 1260ին Հուլաւուն խանը քաղաք մը ու Թագաւորական փառաւոր պալատ մը շինեց։

# ԳԼՈՒԽ ԻԳ.

## ՎԻՐՔ ԿԱՄ ՎՐԱՍՏԱՆ

---

### Ա. Պատմական գիտելիք[1].

245. Վրաց ազգին սկզբնաւորութիւնը: — Վրաց ազգը ծագած է Հայկին Թորգոմեան Քարթլոս կամ Քարթլոս եղբօրմէն, որ Հայկէն բաժնուելով գնաց հիւսիսային կողմերը, Արմազ լեռը որ կ'իյնայ Գուգարք նահանգին մէջ Կուր գետին քով, և հոն բերդաքաղաք մը շինեց, որ թէ իր անունովն կոչուեցաւ և թէ լերան անուամբն: Իսկ իր մեծ որդին Մծխիթաս գետոյն անդիի կողմը քաղաք մը շինեց, և իր անունովը Մըծխիթա կամ Մցխիթա անուանեց:

246. Վրաց ազգին Հայոց հպատակութիւնը: — Կ'երևի թէ մեծն Տիգրան Երուանդեանէն առաջ, այսինքն մեծին Արամայ ատենէն, Վիրք հարկատու էին Հայե-

1 Ուզեցինք Վրաստանի վրայ քիչ մը ընդարձակ պատմական տեղեկութիւն տալ, վասն զի Հայոց դրացի ազգ ըլլալով, գրեթէ հետերնին միացած էր. իրենց պատմութիւնն ալ մեր ազգային պատմութեան հետ շատ վերաբերութիւն ունի.

րուն. վասն զի մեծն Տիգրան տիրաբար Վրաց ու նաև Աղուանից ազգէն զօրք կը ժողվէր իրեն թշնամիներուն դէմ պատերազմելու համար: Բայց այս յայտնի է որ Վիրք ատեն ատեն գլուխ քաշելով ինքնագլուխ կ'ըլլային: Ուստի շատ հաւանական կ'երևի թէ ինչուան Տրդատայ ատեն Վիրք կը հպատակէին շատ անգամ Հայոց ու հարկ կու տային. բայց վերջերը զօրանալով չէ թէ միայն բոլորովին զատուեցան 'ի Հայոց, հապա նաև տիրեցին մեծին Հայոց Գուգարք նահանգին, որ Խորենացւոյն ատեն անոնց ձեռքն էր, տիրեցին նաև Տայոց նահանգին մէկ մասին:

Իրենց տիրած Հայաստանի մասը Սօմխեթ կ'անուանէին, զոր օտարազգիք կը կարծեն թէ 'ի սկզբանէ հետէ Վրաց ըլլար. նոյնպէս կը սեպեն ոմանք Մեկռել ու Իմարեթ ըսուած երկիրներն ալ, որ հին ատեն Եգերացւոց աշխարհին մասն էին, բայց ետքը Վրաց ձեռքը անցեր էր, ինչպէս նաև Աղուանից երկրին կամ Շիրուանին մէկ մասն ալ:

247. Վրաց պաշտամունքը: — Վրաց առջի նահապետները աստուածապաշտ կ'երևան. բայց երբոր անոնք մեռան, Վիրք սկսան արևն ու լուսինը ու եօթը աստղները պաշտել: Մեծին Աղեքսանդրի մահուընէն ետև որ տիրեր էր Վրաստանին, ու հոն Ազոնը կուսակալ թողուցեր էր, մտաւ Վրաց մէջ նաև կռապաշտութիւն Ազոնին

ձեռքովը որ Գացիմ ու Գայիմ անունով երկու արծըթէ կուռք շինեց, և սկսաւ պաշտել: Վիրք այս կուռքերը մինչուան իրենց քրիստոնէութեան ատեն կը պաշտէին, որոնք սուրբն Նունէ Վրաց առաքելուհին հրաշքով աներևոյթ ըրաւ: Վիրք կը պաշտէին նաև Գիոսը, որուն Հայերը կ'ըսեն Արամազդ, ուսկից Վիրք առնլով ըսին Արամազ: Ատեն ատեն մտաւ Վրաց մէջ նաև կրակապաշտութիւն:

248. Վրաց 'ի քրիստոնէութիւն դառնալը: — Նունէ կամ Նունի սրբոց Հռիփսիմեանց ընկերներէն մէկը որ փախեր գացեր էր Վրաց Մծխիթա քաղաքը, ու հոն ճգնութեամբ կ'ապրէր, ու հրաշներով հիւանդները կ'առողջցընէր, անգամ մը առողջացուց նաև Վրաց Միհրան Թագաւորին կինն ու որդին, որով անունը ալ աւելի հռչակեցաւ: Օր մը երբոր Միհրան Թագաւորը որսի ելեր էր, յանկարծ չորս դին սաստիկ մութ պատեց, ու երբոր սկսաւ փախնալ ու դիմել Նունէի աստուծոյն, փարատեցաւ խաւարը, ու ինքը այս մեծ հրաշքը տեսնելով, Նունէին քարոզութեամբը բոլոր ժողովրդով դարձաւ քրիստոնեայ եղաւ Քրիստոսի 318 թուականին. և Անտիոքայ պատրիարգէն ձեռնադրուած առաջնորդ մը առին որ կաթողիկոս ըսուեցաւ, և յաջորդութիւնը շարունակեց, երբեմն 'ի Հայոց և երբեմն իրենց եպիսկոպոսներէն առնլով ձեռնադրութիւնը:

Բայց եկեղեցական բաներու մէջ միշտ միաբան էին Հայոց, ծէսերնին գրեթէ նոյն ինչուան ժամերգութիւննին, և պատարագնին ալ տեղ տեղ հայերէն էր։ Բայց երբոր Վրաց Կիւրիոն կաթողիկոսը ընդունեցաւ իր ազգին հետ մէկտեղ Քաղկեդոնի սուրբ ժողովը, բաժնուեցան 'ի Հայոց։

249. Վրաց լեզուին վրայ գիտելիք։ — Ինչպէս որ Վախտանկ Վրաց պատմիչը որոշ կ'ըսէ, Նաբուքոդոնոսարայ ըրած Հրէից գերութենէն՝ որ եղաւ Քրիստոսէ 600 տարի առաջ, Հրեաներէն ոմանք ազատելով եկան Վրաստան, ու Մցխիթայ տանուտէրներէն իրենց բնակութեան երկիր ուզելով, բնակեցան հոն. ինչուան այն ատեն Վրաց լեզուն հայերէն էր, անկէց ետքը Վրաստանի մէջ բնակող այլևայլ ազգերուն լեզերուն հետ խառնուելով, հիմակուան վրացերէն լեզուն ձևացաւ։ Ուրիշ տեղ մ' ալ կը գրուցէ Պարսից Արտաշէս Բ թագաւորին ատենին համար, որ առաւ Բաբելոնը ու տիրեց Ասորեստանի ու Վրաստանի, ուր նոյն ատենը Վրաստան վեց լեզու կը գործածուէր, այսինքն հայերէն, խազրաց լեզուն, ասորի, եբրայեցի, յոյն, ու անոնցմէ խառնուելով շինուած վրաց լեզուն։ Վիրք կ'ըսեն թէ իրենց Փառնաւազ թագաւորը հնարած ըլլայ իրենց հին գիրերը՝ Արշակունեաց տէրութենէն առաջ. բայց ստոյգ է որ Ս. Մեսրովպ հնարած է իրենց եկեղեցական գիրը, հայերէնին պէս։

250 . Վրաց կառավարութիւնը :— Վիրք առաջ Հայոց պէս տանուտէրական իշխանութեամբ կը կառավարէին իրենց տէրութիւնը առանց Թագաւորի և Նախարարի . և գլխաւոր իշխանը որ տանուտէր կ'ըսուէր, կը նստէր Քարթլին մէջ Մցխիթա քաղաքը, Պարսից կամ Ասորեստանեայց տէրութեան հպատակելով :

Այս իշխանութիւնը տևեց ինչուան մեծին Աղեքսանդրի ատեն, որ Վրաստանի տիրելով, Ազոն անունով մէկը կուսակալ թողուց : Երբոր մեծն Աղեքսանդր մեռաւ, Փառնաւազ անունով մէկը գլուխ քաշեց Ազոնէն, սպաննեց զինքը, ու եղաւ Վրաց առաջին Թագաւորը Քարթլասին ցեղէն . և տէրութիւնը շատ ընդարձակելով, և Եգերացւոց ալ տիրելով, ութը կողմնակալ և ըսպարապետ հաստատեց այլևայլ կողմերուն, և բոլոր երկրին հրաման տուաւ որ Վրաց լեզուն խօսին :

251 . Փառնաւազէն ետև իրեք Թագաւոր նստան իր ցեղէն, այսինքն Սայուրմակ կամ Սուրմակ, Մրուան և անոր որդին Փառնաջում, որ Պարսից մոգերը պատուելուն ու կրակատուններ շինելուն համար ատելի եղաւ իր ազգին . և Վիրք խնդրեցին Հայոց[1] Թագաւորէն որ իրեն որդին իրենց

[1] Այս Թագաւորին անունը Վիրք կ'անուանեն Վաղարշակ որ մեր Տիգրան Երկրորդը պիտի ըլլայ, որ շատ երկիրներու տիրեց, ինչպէս որ

վրայ թագաւոր դնէ, այն ալ ուրախութեամբ կատարեց Վրաց ազգին խնդիրը իր Արբակ որդին անոնց վրայ թագաւոր դնելով, ու պատերազմի մէջ փառնաջումը սպաննելով: Ասով Վրաց թագաւորական ցեղը Հայոց Արշակունի ցեղին անցաւ, որ տեւեց 300 տարիի չափ, ու Քրիստոսի 265 թուականին հատաւ, որոյ վերջին թագաւորը եղաւ Ասպակուր:

232. Վրաց Սասանեան թագաւորները: — Երբոր Հայոց թագաւորն մեծն Խոսրով Անակ Պարթեւին նենգութեամբը մեռաւ, Արտաշիր Սասանեան Պարսից թագաւորը եկաւ տիրեց Հայաստանի ու Վրաստանի, և Վրաստանի մէջ իր որդին Միհրանը թագաւոր դրաւ, որ առաջ մէկ քանի յաղթութիւններ ըրաւ Հայոց ու Յունաց դէմ, բայց ետքէն մեծն Կոստանդիանոսէն չարաչար յաղթուելով, հաշտութիւն խօսեցաւ Յունաց ու Հայոց հետ, իր Բաքար որդին Կոստանդիանոսին պատանդ տալով ու մեր Տրդատ թագաւորին Սողոմէ աղջիկը կնութեան առնլով: Այս Միհրանն է որ ետքը սրբոյն Նունէի քարոզութեամբը քրիստոնեայ եղաւ: Իրեն յաջորդեց իր Բաքար որդին, թէպէտ և Հայք կ'ուզէին որ Սողոմէ թագուհիէն ծնած որդին յաջորդէ. Մի-

թուականն ալ յայտնի կը ցուցընէ. վասն զի ոչ իրմէ առաջ և ոչ իրմէ ետև Վարբակ անունով թագաւոր ունեցած ենք:

Հրանայ ցեղէն 500 տարիի չափ թագաւորք նստան Վրաց, որոց մէջ Վախտանկ խիստ անուանի եղաւ իրեն քաջութիւններուն համար, ու իրեն Միհրանդուխտ քոյրը Պարսից Խոսրով թագաւորին կնութեան տըւաւ, և Յունաց կայսեր Հեղինէ աղջիկը իրեն կին առաւ։ Վերջի թագաւորները Յոհան և Ճուանշէր անժառանգ մեռնելով, թագաւորութեան ցեղը Բագրատունեաց ցեղին անցաւ։

253. Վրաց Բագրատունի թագաւորները։ — Միհրանեան ցեղը վերջանալէն ետև Ը դարուն ետքերը, Վիրք Յունաց կայսրէն ղրուած կուրապաղատներով կը կառավարուէր, ինչուան որ 899ին մեր Սմբատ Ա. Բագրատունեաց թագաւորը՝ Դաւթի որդին Ատրներսեհը Բագրատունեաց ցեղէն որ Վրաց կուրապաղատ էր և իրեն ազգական՝ թագաւոր ըրաւ. և այս Բագրատունեաց ցեղը քշեց գրեթէ ինչուան 1800 Քրիստոսի թուականը։ Այս ցեղին տիրելու ատենը Վրաստան երբեմն ազատ կ'ըլլար ու երբեմն մերձակայ օտար ազգերուն կը ծառայէր։ Այս ցեղին ատեն շատ յարձակմունք, աւեր ու կոտորած եղաւ Վրաստանի մէջ, Արաբացւոց, Պարսից և Յունաց, Ճինկիզխանէն, Լանկթամուրէն։ Այս Բագրատունեաց ցեղէն Աղեքսանդր Ա. 1424ին իր տէրութիւնը իրեք գաւկըներուն մէջ բաժնեց, Իմէրէթը առջինին, Քարթլը՝ որ բուն Վրաստանն է՝ երկրորդին, ու Կախեթը և

Շիրուանը երրորդ որդւոյն տալով, որով տէրութիւնը իրեք բաժնուելով խիստ տկարացաւ և Տաճկըներէն ու Պարսիկներէն նեղութիւն քաշելով 1783ին Հերակլ վերջին Թագաւորը միաբանեցաւ Ռուսաց հետ, և իր տէրութիւնը անոնց յանձնեց, որով վերջացաւ Վրաց Թագաւորութիւնը և հիմա Ռուսաց տակն է։

Բ. Աշխարհագրական գիտելիք.

254. Վրաց աշխարհին սահմանը, և բաժանմունքը։ — Վրաստանը Հայաստանի հիւսիսային կողմը կ'իյնայ, և սահմանն է արևելքէն Աղուանք, հիւսիսէն Ալանք ու կովկասու լեռները, արևմուտքէն Եգեր կամ Կողքիս, հարաւէն մեծին Հայոց Գուգարք և Տայք նահանգները։

Երեք մաս կը բաժնուի. Քարթլի, կախեթի՝ որ կոչեցաւ Քարթլաւսին Կախոս որդւոյն անունովը, կամ Հերեթի Հերոս եղբօրը անունովը, և Իմերէթ։ Քարթլ է բուն Վրաստան, որոյ երկիրը տեղ տեղ շատ բարեբեր ու զուարճալի է, բայց քիչ մշակած. ունի շատ գետեր, որոց մէջ գլխաւորն է Կուր գետը։ Օդը բարեխառն. գլխաւոր բերքերն են գինի, բամբակ, սև սաթ, ու պղնձի, երկաթի հանքեր և այլն։

255. Վրաստանի գլխաւոր քաղաքները։ — Մծխիթա, զոր շինեց Քարթլաւսին Մծխիթոս որդին, Կուր և Արագուի գետե-

րուն մէջ տեղը, որ հին ատեն Վրաց մայրաքաղաք էր, և ինչուան Քրիստոսի 470 թուականը Վրաց թագաւորանիստ քաղաքը այս էր, անկէ ետքը պատրիարքական աթոռ եղաւ։ Լէնկթիմուր կործանեց այս քաղաքս, և հիմա մեծ մասը աւերակ է։ Անկէ ետքը մայրաքաղաք եղաւ

Տփխիս, որուն հիմա կ'ըսեն Թիֆլիզ, և Վրացիք Թփիլիս քալաքի, որ ըսել է իրենց լեզուովը Ջերմուկներու քաղաք, վասն զի քաղաքէն դուրս շատ առողջարար ջերմուկներ կան։ Այս քաղաքը շինեց Վախտանկ Վրաց թագաւորը, Կուր գետոյն քով, որ քաղաքին մէջէն կ'անցնի։ Տփխիս քաղաքը իններորդ դարէն սկսեալ Վրաց թագաւորանիստ մայրաքաղաքը եղաւ, և անկէց 'ի վեր ինչուան հիմա վաճառականութեամբ ծաղկած է. ունի ամուր բերդ մը բլրոյ վրայ, զոր 1576ին Տաճկըները շինեցին։

Կորի քաղաք, Կուր գետոյն քով, և կ'երևի թէ գետոյն անունը այս քաղքիս անունէն ելած է։

Թելաւ քաղաք, որ ատեն մը հռչակաւոր էր և Վրաց Հերակլ վերջին թագաւորին աթոռանիստ քաղաքը։

256. Վրաստանի ուրիշ քաղաքները։ — Օտարազգիք Վրաստանի մէջ կը դնեն նաև Հայաստանի հիւսիսային կողմի քաղաքները, որք թէպէտ և բուն Հայոց մասին մէջ կ'իյնան, բայց 'ի սկզբան ու ետքերը երկայն ատենէ 'ի վեր Վրաց ձեռքը

ըլլալուն համար, բոլորովին անոնց երկրին հետ խառնուած կը սեպուէին, ինչպէս են այս քաղաքներս Շամշուղէ կամ Շամշոյլտէ, Ախալցխա, Ախալքալաք, Թոռղարս, Արտա-հան և այլն, որոց վրայ մենք Հայոց մասին մէջ խօսեցանք [1]:

## ԳԼՈՒԽ ԻԴ.

## Ա Ղ Ո Ւ Ա Ն Ք

### Ա. Պատմական գիտելիք.

257. Աղուանից ազգին սկզբնաւորու-թիւնը: — Աղուանից ազգը ծագած է մեր Հայկազն Սիսակ նահապետէն, որ իր հօրը Գեղամին երկիրները ժառանգելէն, և իր անունովը այն աշխարհը Սիսական կամ Սիւ-նիք կոչելէն ետև, ընդարձակեց իր երկիրը

1 Կ'երևի թէ Գուգարք նահանգին մեծ մասը 'ի սկզբան Վրաց ձեռքն էր, վասն զի կը տեսնենք որ Գուգարք նահանգին քաղաքները իրենք շի-նած են հին ատենէն, և իրենց անուննովը կոչած ինչ-պէս Օրբէթ կամ Շամշոյլտէ և Խունան քաղաքները շինեց Քարթլաւս: Ջաւախոս Մցխիթոսին որ-դին շինեց Արփահան քաղաքը, և իր անունովը կո-չեցաւ Ջաւախք գաւառը, և այլն:

ինչուան Հունարակերտ քաղաքը՝ որ Կուր գետոյն արևելեան կողմը կ'իյնայ, ու իր քաղցր բնութեանը համար երկիրն ալ Աղուանք ըսուեցաւ, վասն զի իրեն Աղու կը կանչէին։ Բայց ինչպէս որ կ'երևի, իր սերունդները տիրեցին ինչուան Կասպից ծովը, և երկիրը կոչեցին նոյնպէս Աղուանք, որ ըսուեցաւ նաև Շիրուան իր համանուն մայրաքաղաքին անունովը։ Ուստի Աղուանից բուն երկիրը Կուր գետոյն անդիի կողմը կ'իյնայ ինչուան Կասպից ծովը, իսկ ասդիի կողմը եղած երկիրները կ'ըսուին Ուտի և Արցախ։ Երբոր Վաղարշակ տիրեց Հայոց՝ Առան անունով քաջ ու խելացի մարդ մը կողմնակալ դրաւ բիւրաւոր զօրքով Աղուանից երկրին վրայ, Հայաստանի արևելեան հիւսիսային կողմն իրեն յանձնելով։ Այս Առանին զաւակէն ելած են Ուտէացւոց, Գարդմանացւոց, Ծովդէացւոց և Գարգարացւոց ցեղերը, և բոլոր երկիրն ալ Առան կամ Րան ըսուեցաւ[1]։

258. Հայերուն տիրապետութիւնը Աղուանից վրայ։ — Այս բանիս վրայ թէպէտ և որոշ յիշատակութիւն մը չկայ, բայց կ'երևի որ հայկազուն Արամ նահապետին ատենէն ինչուան Արշակունի Տրդատ թա-

1 Շատերը կարծած են թէ Աղուանից ազգէն ելած են հիմակուան Աֆղանք, Պարսկաստանի սահմանակից զօրաւոր ազգը, բայց հիմայ քննելով ճանչցուած են ատոնք զատ ու հին ազգ մը։

դաւորին ժամանակները շատ անգամ Հայոց ձեռքին տակ եղած են ու անոնց հարկատու։ Թէպէտ և ատեն ատեն անոնցմէ ապստամբած ու բաժնուած ալ ըլլան։ Իսկ երբոր մեռաւ Տրդատ քաջ Թագաւորը, Աղուանք ալ գլուխ քաշեցին ու ինքնագլուխ եղան։ Եւ ետքերը երբոր մեր Արշակունեաց տէրութիւնը տկարացաւ, Աղուանք՝ որ զատ թագաւորութիւն ունէին, զօրանալով, տիրեցին Հայոց Ուտի և Արցախ նահանգներուն, ինչպէս որ Խորենացին իր աշխարհագրութեանը մէջ կը դնէ։ Ուստի և Մովսէս Կաղանկատուացիին Աղուանից պատմութիւնը ուրիշ բան չէ, բայց եթէ Ուտի և Արցախ նահանգներուն մէջ հանդիպած դիպուածներուն պատմութիւնը, որ այն ատեն Աղուանից երկիր կ՚ըսուէր։ Այս պատճառաւ է որ այն երկու նահանգներուն մէջ եղած քաղքըներուն անունները շատ անգամ Աղուանից երկրին անունովը կը յիշուին մեր մատենագիրներուն մէջ։

259. Աղուանից գիրը և լեզուն։—Սուրբ Մեսրոպ հինգերորդ դարուն մէջ Հայոց և Վրաց գրերը գտնելէն ետև, անցաւ Աղուանից երկիրը անոնց Արսվաղէն կամ Եսվաղէն Թագաւորին ու Երեմիա եպիսկոպոսապետին քով, որոց հաւանութեամբը հնարեց նաև անոնց այլագիր ու կոտրտած լեզուին գիրերը. որոց լեզուն նոյն էր Գարգարացւոց և Ուտէացւոց լեզուին հետ։ Այս լեզուն թէպէտ և հայերէն լեզուէն ե-

լած է , բայց բոլորովին փոխուած ու խոր-թացած ըլլալուն , սուրբն Մեսրոպ հարկեցաւ նոր գիր հնարել . նոյնպէս նաև ազգն ալ Ալանաց ու Լեկաց հետ խառնուած ըլլալով շատ փոխուեր էր : Ուստի երբոր սուրբն Մեսրոպ իրենց գիրը գտաւ , մէկէն անոնց Երեմիա եպիսկոպոսպետը սկսաւ աստուածաշունչ գիրքը իրենց լեզուովը թարգմանել :

260 . Աղուանից բարքն ու կրօնքը : — Աղուանք , ինչպէս որ կը ստորագրէ Կորիւն , բնութեամբ վայրենամիտ , դատարկասուն ու անասնաբարոյ մարդիկ էին ու խիստ ագէտ :

Հին ատեն Հայոց պէս երկնային լուսաւորները կը պաշտէին , արևը և մանաւանդ լուսինը , նաև ծառեր , որոնց մարդազոհ ալ կ'ընէին . կը պաշտէին նաև Արամազդը : Իսկ քրիստոնէութիւնը մտաւ Աղուանից աշխարհին մէջ Եղիշէի ձեռքով , որ Թադէոս առաքելոյն աշկերտներէն մէկն էր , ու Թադէոսի մահուընէն ետև Երուսաղէմի մէջ Յակոբ առաքեալէն եպիսկոպոս ձեռնադրուելով , եկաւ Աղուանից աշխարհը (որ այն ատեն ինչուան Ուտի նահանգին մէջ կը ձգուէր) , և հոն Գիս գեղին մէջ սկսաւ քարոզել քրիստոնէութիւնը , և առջի եկեղեցին շինեց : Անկէց անցաւ գնաց Զարդունի դաշտը , ուր կուռքերու շատ զոհարաններ կային , և հոն կռապաշտներէն նահատակեցաւ , ու մարմինն ալ մահա-

պարտներուն գուրը ձգուեցաւ, ուսկից շատ առենէն ետքը հրաշքով գտնուեցաւ։

Բայց Աղուանից երկրին բուն լուսաւորութիւնը եղաւ անոնց Ուռնայր բարեպաշտ ու յաղթող թագաւորին ատեն, որ լսելով Գրիգոր Լուսաւորչի ձեռքով Հայաստանի մէջ եղած մեծամեծ հրաշները, ու Տրդատ թագաւորին հետ մէկտեղ բոլոր Հայոց դարձը, շատ իշխաններով ու զօրքերով եկաւ Հայաստան, ու հոն իր հետը բերած մարդիկներովը մէկտեղ մկրտեցաւ Գրիգոր Լուսաւորչէն, և դառնալով իր աշխարհը լուսաւորեց զամէնքը։ Ետքը Աղուանք իրենց կամքովը Լուսաւորչի թոռը սուրբն Գրիգորիսը իրենց կաթողիկոս ուզեցին, և ետքերը սկսան նաև հնազանդիլ Հայոց եկեղեցական բաներու մէջ, ինչուան իրենց կաթողիկոսին ձեռնադրութիւնն ալ քանի մը անգամ Հայոց կաթողիկոսէն եղաւ։

### Բ. Աշխարհագրական գիտելիք.

261. Աղուանից երկրին սահմանը։ — Աղուանից բուն աշխարհը կ'իյնայ Կուր գետէն սկսեալ ինչուան Դարբանդ եղած միջոցը. որոյ հիւսիսէն սահմանն է Լեկաց ու Վրաց երկիրը ու Կովկասու լեռները, արևելքէն Կասպից ծովը, հարաւէն և արևմուտքէն մեծին Հայոց Փայտակարան և Ուտի նահանգները։ Աղուանից աշխարհը երբեմն աւելի ընդարձակ կը ձգուի մեր մա-

տենագիրներուն մէջ, Ուտի և Արցախ նահանգներն ալ մէկտեղ առնլով: Երկիրը թէպէտ և լեռնոտ է, բայց խիստ բարեբեր. և գլխաւոր բերքն է բամբակ և ազնիւ ճերմակ նաւթ՝ որ շատ առատ կ'ելլէ այն կողմերը, աղ, ապրիշում, ազնիւ գինի, ձիթենի, երկաթ, պղինձ. կենդանիներէն առիւծ, ինձ, յովազ, վայրի էշ, և այլն:

262. Աղուանից գլխաւոր քաղաքները: —Աղուանից երկրին մէջ կը սեպուէր Դարբանդ ամուր և անառիկ բերդաքաղաքը Կասպից ծովուն մօտ, ուսկից կը ձգուի Ձորայ ըսուած պահակը կամ պարիսպը, լայնութիւնն վեց ոտնաչափ, և երկայնութիւնը մղոններով, ահագին աշտարակներով ամրցուցած: Արևելեայք կ'ըսեն թէ մեծն Աղեքսանդր Մակեդոնացին բոլոր տկար, կարճահասակ, կաղ, կոյր, վնասակար, գող մարդերը ժողվելով բնակեցուց այս տեղս ու պարսպով ամրցուց, ու վրան շինեց երկաթի ամուր դուռը: Բայց Վիրք կ'աւանդեն թէ անկէ շատ առաջ, այսինքն Քրիստոսէ 1500 տարիէն աւելի առաջ Աբրիտոն Նեբրովթայ ազգէն զօրանալով ու տիրելով Վրաստանի, շինեց Կասպից ծովուն քով այս Դարուբանդ քաղաքը, որ պարսկերէն Տէրպէնտ կ'ըսուի և կը նշանակէ կապ և Դուռն: Այս քաղաքս շինուած է հիւսիսային ազգաց յարձակմունքը արգիլելու համար Կովկասային լեռներու կրճին բերանը, և կ'ըսուէր Դուռն Դարբանդայ կամ

Երկաթի դուռն, և աւելի հին ատեն կ՚ըսուէր Դուռն կամ Պահակ Ճորայ: Բաց աստնցմէ տեղ տեղ այս դուռը կը կոչուի նաև Դուռն Հոնաց:

Շամախի բերդաքաղաք, որ վեցերորդ դարուն Խազրաց ազգէն Շաթ անունով մէկը շինեց, Կովկաս լերանց ստորոտը. Պարսից Նատիր շահը անցեալ դարուն մէջ կործանեց, բայց ետքէն անոր քովը նորէն շինուեցաւ. և հիմա Աղուանից երկրին գըլխաւոր քաղաքն է. ունի բերդ, և չորս դին պարսպով պատած է:

Շիրուան, որ հին ատեն Աղուանից մայրաքաղաքն էր, և հիմա աւերակ է, որոյ հին բերդը միայն մնացած է: Այս քաղքին անունովն է որ հիմա Շիրուան կ՚ըսուի բոլոր Աղուանից աշխարհը: — Այս քաղաքս ալ շինեց Շաթ:

Ուրիշ տեղ առիթ ունենալով խօսելու Լեկաց և Ալանաց ազգերուն վրայ, հոս համառօտ տեղեկութիւն մը տանք; որովհետև մեր պատմութիւններուն մէջ շատ տեղ կը յիշուին: — Ալանք ինչպէս նաև Լեկք, Բասիլկք, Խազիրք, Ապխազք, Սարմատացւոց այլևայլ ազգերն էին: Ալանաց ազգին անունը եկած է Սարմատիայի Ալանոս գլխաւոր լեռներուն անունէն, ինչպէս որ հին մատենագիրները կ՚ըսեն. բնակիչները տան մէջ չէին բնակեր, հապա սայլաբնակ էին, որով ուզած տեղնին բնակութիւննին ալ տեղէ տեղ կրնային փոխել. ձիոյ վրայ հեծ-

նալու խիստ փափագեն էին, ու պատերազմի մէջ մեռնիլը իրենց փառք կը սեպէին, և բնութեամբ քաջ ու պատերազմասէր ըլլալով, տանեն տանեն յարձըկեցան Եւրոպայի մէջ ու այլևայլ կողմերուն տիրեցին: — Իրենց երկրին և Վրաստանին միջոց Կովկաս լեռներուն մէջն է Ալանաց դուռն ըսուած նեղանցքը:

Ալանք մեր Արտաշէս Բին տանեն ուրիշ լեռնային ազգերուն հետ միաբանելով յարձըկեցան Հայաստան, ու Արտաշէս Բէն յաղթուելով և իրենց թագաւորին որդին գերի ըլլալով, Ալանաց թագաւորը հաշտութիւն ուզեց Արտաշէսէն, ու ամէն բան խոստացաւ միայն թէ իր որդին ետ դարձընէ: Արտաշէս առջի բերան յանձն չառաւ, բայց երբ Սաթինկայ աղաչանքովը՝ որ Ալանաց թագաւորին աղջիկն էր, խաղաղութիւն ըրաւ, Սաթինիկը իրեն կին առնելով, ուսկից ծնաւ Արտաւազդը որ ետքը իրեն յաջորդեց.

Ալանաց ազգէն էր Հայաստանի մէջ եղած Առաւեղեան ցեղը որ Արտաշէս Բին տանեն նախարարութեանց կարգը անցաւ. այս ցեղին մարդիկը Սաթինիկ թագուհիին ազգականներէն էին, որոնք իրեն հետ մեկտեղ Հայաստան եկան:

Իսկ Լեկաց ազգը Հայկայ Լեկ կամ Լեկէս եղբօրմէն ելած է, անոր համար կ՚ըսուի հիմա Լէզկի, որոց երկիրը Աղուանից երկրին եւ Կասպից ծովուն մօտ է, որուն հիմա Տաղըստան կ՚ըսեն:

Լեկաց թագաւորներուն մէջ կը յիշուի Շերգիր անունով ահաւոր ու քաջ մարդ մը որ ուրացեալ Մեհրուժանին հետ միացած

Պապ Թագաւորին դէմ կը պատերազմէր, որ Յունաց զօրքով Հայաստան եկեր էր, զոր ըսպաննեց մեր Սպանդարատ կամսարականը (Քրիստոսի 380 Թուականին) Ձիրաւ դաշտին մէջ եղած պատերազմին մէջ, և իրեն գունդը ցիրուցան ըրաւ:

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Խաղտիք և Եգերք.

263. Խաղտիք և Եգերք աշխարհաց սահմանը: — Խաղտիք Կողքիսին կամ Եգերացւոց աշխարհին չորս գաւառներէն մէկն էր, ու ամենէն մեծը, անոր համար առեն մը զատ աշխարհք ալ սեպուեցաւ. կ'իյնայ Տրապիզոնին և Կարնոյ մէջ: Իսկ Եգերացւոց աշխարհը[1] կ'իյնայ Սև ծովուն արևելեան կողմը մեծին Հայոց, Վրաց ու Սարմատացւոց սահմանակից, որ ազգերը իրեն

1 Սխալմամբ շատերը կը կարծեն թէ հիմակուան Չէրքէզ ըսուած երկիրը հին կողքիսն է, որ Սև ծովուն արևելեան հարաւային կողմերն է. անոր համար Պրոկոպիոս, Սուիդաս և ուրիշները Լազիկիան կողքիս կ'անուանեն:

Իսկ հիմակուան Չէրքէզներուն երկիրը Կովկաս լեռներուն վրայ Սև ծովուն ու Վրաստանի հիւսիսային կողմը կ'իյնայ: Բայց այս ալ գիտնալու է որ հիմակուան Մինկրէլ, Իմերէթ ու Կուրիէլ ըսուած երկիրները հին առեն մասամբ կողքիսի մէջ կը բովանդակէին:

Ղազիք կամ Ղազիկեայ գաւառին անուանովը, որուն Յոյնք Լազիկէ կ'ըսեն, բոլոր աշխարհն ալ Լազիկիա կոչեցաւ, որ հիմա կ'ըսուի Լազիստան, Լազ[1] ազգին անունովը որ հին Կողքիսացւոց կամ Եգերացւոց ազգէն եղած է։

264. Եգերացւոց ազգին սկզբնաւորութիւնը։ — Եգերացիք որ բնութեամբ պատերազմասէր մարդիկ են, եղած են մեր Հայկ նահապետին Եգրէս կամ Եգրոս եղբօրմէն որ գնաց այն կողմերը բնակեցաւ, և իր անունով ազգն ալ Եգերացի ըսուեցաւ ու հոն Եգրէս անունով քաղաք մը շինեց որ ետքը Բեդիա ըսուեցաւ։ Եգերացիք կամ Կողքիսացիք հին ատեն զատ թագաւորութիւն ունէին, բայց վերջերն շատ գիտելիք չկայ։ Մեծն Միհրդատ տիրեց Կողքիսին, բայց ետքէն Տրայիանոս կայսեր ատենը, որ Քրիստոսէ հարիւր տարիի չափ ետև կ'իյնայ, Կողքիսացւոց աշխարհը բոլորովին Հռոմայեցւոց իշխանութեան տակ մտաւ։

Այս աշխարհը չորս գաւառ կը բաժնուէր, որ են Միռենիա կամ Մանրիզի որ է Մնկրէլ, Եգրեփկեա որ է Աճարա, Ղազիա որ է Լազք, և Ճանիա՝ որ կ'ըսուի նաև Խաղտիք, և հիմա Ճանիկեա։

1 Պէտք չէ շփոթել հիմակուան Լէզկի ըսուած ազգը Լազերուն հետ, վասն զի Լեզկիները Տաղըստանի մէջ Կասպից ծովուն քով կը բնակին, որ հին ատենուան Սարմատացւոց Լէկ ըսուած ազգն է, ինչպէս որ քիչ մը առաջ ըսինք։

Հոս մենք կ'ուզենք համառօտ մը խօսիլ Խաղտեաց վրայ, որ երկայն ատեն Հայոց ձեռքին տակ եղան ։

265. Խաղտեաց աշխարհին վրայ պատմական գիտելիք ։— Երբոր Վաղարշակ թագաւոր եղաւ ու յաղթեց Մորփիւղիկէսին, տիրեց նաև Կապադովկացւոց, Պոնտացւոց, Լազիկացւոց, Եգերացւոց ու Խաղտեաց և զամէնքն ալ իրեն հարկատու ըրաւ, որոնք Մորփիւղիկէսին հետ միացած իրեն դէմ ելեր էին ։ Այն ատենէն սկսան Հայք տիրել Խաղտեաց վրայ, բայց թէ որչափ ատեն, յայտնի չէ ։ Խաղտեաց երկրին մէջ հին ատեն շատ հայ գտնուելուն համար, Յոյները շատ անգամ Արմէնոխալիպք կ'ըսէին որ Հայախաղտիք ըսել է ։ Խաղտիք գաւառը նաև բոլոր Կողբխացւոց երկրը վերջերը Յունաց ձեռքն անցեր էր. և 830ին Յունաց Թէոփիլոս կայսրը երբոր Հագարացւոց դէմ պատերազմի կ'երթար, Խաղտեաց երկրէն անցնելով, մէջը եղած Հայ բնակիչներուն մեծ մասը տնով տեղով իրեն երկիրը տարաւ ։

266. Խաղտեաց երևելի գետերը ։— Խաղտեաց մէջէն կ'անցնի Ծորոխ կամ Ճորոխ գետը, որ դրախտին չորս գետերէն մէկն է, ու Հայաստանի լեռներէն կը բխի Եփրատ գետոյն բխած տեղւոյն մօտ ։

Խաղտիք գաւառին հիւսիսային կողմը կ'իյնայ Ռիոն կամ Փաս կամ Փաշ ըսուած մեծ գետը, որ Կովկասու լեռներէն կը բխի, զոր ոմանք Փիսոն գետոյն հետ կը շփոթեն ։

207. Խաղտեաց գլխաւոր քաղաքները։

— Տամբուր քաղաք, զոր եօթներորդ դարուն Համամ անունով վրացի իշխան մը նորոգելով, իր անունովը Համամաշէն կոչեց, որ հիմա կ'ըսուի Համշէն. ունի ամուր բերդ։ Այս քաղքիս ու անոր շրջակայ սահմաններուն բնակիչները որ հին ատեն հայ էին, եւթնևտասներորդ դարուն դարձան տաճիկ եղան, սաստիկ հարկապահանջութեան չկրնալով համբերել. բայց ինչուան հիմա դեռ [illegible] գաղտուկն իրենց խօսակցութեան մէջ հայոց բառեր։

Համամաշէնի մօտ են Եղիովլիս, Խնակ-գեղերը. որոց բնակիչները որ առաջուց բոլոր հայ էին՝ կամաց կամաց դարձան տաճիկ եղան։ Համամաշէնի մօտերը կ'իյնան նաև Բաշովլիս, Տափ գեղերը և այլն։

Բաթում, ծովեզերեայ քաղաք է Ճորոխ գետոյն բերանը, և ունի ապահով նաւահանգիստ։

Խօփա կամ Խոպէ քաղաք Բաթումին հարաւային կողմը, որ շատ բանուկ նաւահանգիստ ունի։

Օֆ քաղաք, Սև ծովուն մօտիկ որ հիմա աւերակ է, սակայն իր անունովը շրջակայ երկիրները հիմա Օֆ կ'ըսուին, որ խիստ լեռնոտ և ապառաժուտ է[1]։

1 Այս քաղաքներուն ամէնքն ալ որոշ չգիտցուիր թէ հին Խաղտեաց մէջ կ'իյնային՝ չէ նէ-ոմանք նաև Լազիկէային մէջ։

268. Կողքիսին գլխաւոր քաղաքները։ — Դիոսկորիաս քաղաք, Սև ծովուն մօտ անոր արևելեան հիւսիսային կողմը, որ հիմա Կուրիէլին մէջ կ'իյնայ, և հին անունն է Այիա կամ Էա որ Փաս կամ Րիոն գետոյն բերանը շինուած է, և թերակղզւոյ մը պէս երկու գետակներէ պատած։ Ոմանք կ'ըսեն թէ այս քաղաքս շիներ են Կաստոր և Պողիկևտիս, որ կ'ըսուին Դիոսկուրեանք այսինքն Արամազդայ կամ Դիոսի որդիք, և իրենց անունով կոչեր են Դիոսկորիաս, ուսկից որ նախ Արգոնաւորդք ցամաքը ելան. ոմանք ալ ուրիշի կուտան քաղքիս շինութիւնը։ Այս քաղաքս հին ատեն մեծ վաճառաշահ էր, Սև ծովուն վրայ, որ ետքերը Սևաստուպոլիս ըսուեցաւ, և հիմա Իսքուրիա կ'ըսուի։

Արքէոպոլիս, բլրոյ վրայ շինած երևելի քաղաք էր Լազիկա գաւառին մէջ։

Պետրէ Լազիկիայի մէջ ամուր բերդաքաղաք, զոր Յուստինիանոս կայսրը շինեց, ու զօրանիստ և վաճառաշահ քաղաք եղաւ։

## ԳԼՈՒԽ ԻԶ.

### Պոնտոս.

269. Պոնտոսի սահմանը և բաժանմունքը. — Պոնտոսը Սև ծովուն հարաւային կողմը կ'իյնայ, Փոքուն Ասիոյ, Կապադովկիայի. Մեծին Հայոց ու Խաղտեաց մէջ. իր անունովը Սև ծովն ալ կ'ըսուի Պոնտոսի ծով և Եւքսինեան Պոնտոս:

Պոնտոսը երեք մաս կը բաժնուէր. մէկը Լիւկոպոնտոս, որ կ'ըսուի նաև Պոնտոս Գաղատիոյ, որ Պափղագոնիայի արևելեան կողմը, Կապադովկիայի հիւսիսային գին կ'իյնայ. որուն մէջէն Իրիս գետը Սև ծովը կը թափի: Երկրորդ, Պոնտոս Պողեմոնեան, Լինոպոնտոսին արևելեան կողմը, և մէջէն կ'անցնի Թերմոդոն գետը: Երրորդ Պոնտոս Կապադովկիոյ՝ Պողեմոնեան Պոնտոսին արևելեան կողմը և կը ձգուի ինչուան Մոսքիկեան լեռները, և այս լեռներով մեծ Հայքէն կը զատուի:

270. Պոնտոսի տէրութեան վրայ պատմական գիտելիք: — Պոնտոսը կ'երևի թէ հին ատեն Կապադովկիայի մասն էր, բայց ետքէն Քրիստոսէ 520 տարիի չափ առաջ անկէ բոլորովին զատուեցաւ ու զատ թագաւորութիւն եղաւ:

Երբոր մեծն Վաղարշակ Մորփիւղիկէսի

յաղթեց, տիրեց Պոնտոսի վրայ ալ. անկէց ետքը ինչուան Տիգրան երկրորդին ատեն կ՚իշխէին Հայք Պոնտոսի տէրութեանը. և Տիգրանայ ատեն անուանի եղաւ իր քեռայրը [1] Միհրդատ Զ Եւպատոր, որ Պոնտացւոց թագաւորներուն մէջ ամենէն երևելին եղաւ, և շատ քաջութիւններուն համար որով Հռոմայեցւոց տէրութիւնը դողացուց, մեծն Միհրդատ ըսուեցաւ: — Միհրդատայ մահուընէն ետև երբոր Պոնտոսի տէրութիւնը Հռովմայեցւոց ձեռքն անցաւ, Հայերը ամենևին իշխանութիւն մը չունեցան Պոնտոսի վրայ:

271. Պոնտոսի տէրութեան գլխաւոր քաղաքը: — Պոնտոսի գլխաւոր քաղաքն է Տրապիզոն, որ Յունաց Դռաբիզա բառէն եկած է որ ըսել է սեղանի տախտակ, և ձևը քառակուսի ըլլալուն համար այսպէս կոչուած է: Այս քաղաքս խիստ հին է, և կ՚երևի թէ Տրոյիոյ պատերազմին ատենն ալ կար, որ Սև ծովուն քով շինուած երևելի վաճառաշահ քաղաք է Կողքիսի մօտ, ամուր պարիսպներով պատած, և ունի ամուր և անառիկ բերդ: Այս քաղքիս հայ բնակիչքը Համամաշէն քաղքէն եկած են:

1 Պլուտարքոս և Յուստինոս Միհրդատը Տիգրանայ քեռայր չեն համարիր հապա աները, վասն զի կ՚ըսեն թէ Միհրդատ Տիգրանայ հետ դրած դաշինքը հաստատ պահելու համար իր Կղէոպատրա աղջիկը Տիգրանայ կնութեան տուաւ:

Տրապիզոնի քաղաքին մօտերն է Ամենափրկիչ ըսուած վանքը, զոր 873ին մեծ Հայքէն եկած Հայերը շինեցին բլրոյ մը վրայ։

Միջին դարու առեն Յունաց կայսրութեան մէկ ճիւղը Տրապիզոն քաղաքը փոխադրուեր էր, զոր վերցուց սուլդան Մէհէմմէտ Բ երբոր տիրեց քաղքին։

Տրապիզոն քաղաքին մօտ անոր արեւելեան Հարաւային կողմը կ'իյնայ հիմակուան Կիւմիւշխանէ ըսուած տեղը, ուսկից առաջուց շատ առատութեամբ ոսկիի, արծըթի հանք կ'ելլէր, բայց հիմա երեսէ թողուած ըլլալուն համար այնչափ առատ չէ։ Կայ հոս Կիւմիւշխանէ անունով քաղաք մը որ բարձր լերան մը ոտքը շինած է։

272. Պոնտոսի ուրիշ երեւելի քաղաքները։ — Պողեմոնիոն, ծովեզերեայ քաղաք է, զոր Պողեմոն Ա Պոնտոսի թագաւորը նորոգեց և ընդարձակեց, ու իր անունովը կոչեց և իրեն թագաւորանիստ քաղաք ըրաւ, որոյ անունովը Պոնտոսի մէկ մասը Պոնտոս Պողեմոնեական ըսուեցաւ։ Այս քաղաքս կը կարծուի թէ հիմակուան Ֆարսա ըսուած քաղաքն է, որոյ հին աւերակները ինչուան հիմա կ'երեւին։

Ամասիա քաղաք, Իրիս գետոյն վրայ շինուած, զոր մեծն Միհրդատ Եւպատոր ընդարձակ պարսպով պատեց, ու բոլոր տէրութեան մայրաքաղաքը ըրաւ։

Թեմիսկիւրա քաղաք, որ հիմա կ'ըսուի

Թերմէ, Թերմոդոն գետոյն Սև ծովը թափելու տեղւոյն մօտ շինած:

Նէոկեսարիա, որ հիմա կ'ըսուի Նիքսար, Իրիս գետոյն վրայ շինած, որ չորրորդ դարուն մէջ Պօղեմոնական Պոնտոսին մայրաքաղաքն էր: Այս քաղքիս մէջ ծնաւ սուրբն Գրիգոր Սքանչելագործ:

Սեւաստոպոլիս քաղաք, որ հիմա կ'ըսուի Թուրհալա, շինուած է ապառաժ լերին մը ըստորոտը, որոյ ծայրը ամուր բերդ մը ունի:

Կերասոն կամ Կերասուս քաղաք, որ ամուր բերդ ունէր, բայց հիմա աւերակ է: Լուկուլլոս Հռովմայեցւոց զօրավարը երբոր Հռոմ կը դառնար, այս քաղքէս տարաւ հետը կեռաս պտուղը, որ ինչուան այն ատեն անծանօթ էր Եւրոպայի մէջ:

Սինոպ քաղաք, որ ամուր բերդ ունի և երկու նաւահանգիստ: Այս քաղաքը բուն Պափլագոնիայի մէջ կ'իյնայ, բայց երբեմն Պափլագոնիան Պոնտոսի հետ միացած ըլլալուն համար, շատ անգամ Սինոպ քաղաքը Պոնտոսի մէջ կը դրուի:

Ամիսոս կամ Ամիսա քաղաք, հին ատեն Սև ծովուն վրայ երևելի քաղաք էր, զոր Միլետացւոց և Աթենացւոց գաղթականները շինեցին, և մեծն Միհրդատ Եւպատոր Պոնտոսի թագաւորը մեծցուց և գեղեցիկ շէնքերով զարդարեց և իրեն համար ալ մէջը փառաւոր պալատ մը շինեց: Առաւ Լուկուլլոս այս քաղաքը և մէջի անբաւ հարստութիւնները կողոպտելէն ետև, քաղ-

քին մէկ մասին ալ կրակ տուաւ, զոր ետքէն Պոմպէոս նորոգեց: Այս քաղաքս հիմա կ'ըսուի Սամսոն:

Պոնտոսի մէջ կ'իյնան նաև Տրապոլիս քաղաք. Թիզիոն կամ Թիզէ ծովեզերեայ քաղաք որ ամուր բերդ և նաւահանգիստ ունի. Բիլադանա աւանը, և այլն:

## ԳԼՈՒԽ ԻԵ.

### Եփրատացիք.

273. Եփրատացւոց սահմանը:—Եփրատացւոց երկիրը Եփրատ գետոյն արևմըտեան կողմը կ'իյնայ, որոյ սահմանն է հիւսիսէն Երրորդ Հայք, հարաւէն Ասորւոց երկիրը, արևելքէն Եփրատ գետը, արևմուտքէն Կիլիկիա:

Հին ատեն կ'ըսուէր Կոմագենէ կամ Կոմագ. բայց երբոր Հռովմայեցւոց ձեռքը անցաւ, անունն ալ փոխեցին ու Եփրատացիք դրին, Եփրատ գետոյն քովը ըլլալուն համար, և իրենց ձեռքը եղած ատենը կը բովանդակէր նաև Երրորդ Հայոց մէկ մասը, գրեթէ մինչուան Մելաս գետը, և Սամոսատիան մայրաքաղաք կը սեպուէր:

274. Եփրատացւոց երկրին գլխաւոր քաղաքները:—Եփրատացւոց մէջ անուանի է Գերմանիկ քաղաքը, որ ետքերը Մարաշ

ըսուեցաւ, լեռներու մէջ շինած, և ունի բերդ մը բլրոյ վրայ։

Այս քաղաքս ԺԱ. դարուն Անտիոքայ ու Եդեսիոյ յոյն կուսակալին ձեռքն էր, ետքը Գող Վասլին ձեռքն անցաւ, և ետքերը Կիլիկեցւոց Թագաւորներուն։ Մարաշու մօտ է Ցեառնեանց անապատ ըսուած վանքը որ 1114ին գետնաշարժէ կործանեցաւ։

Եփրատացւոց երկրին մէջ անուանի է նաև Աերաւի կամ Այերաւի ընդարձակ պարսպապատ բերդաքաղաքը, որ հին ատեն կ'ըսուէր Անտիոք առ Տօրոսիւ, մէկալ Անտիոք քաղաքներէն զատելու համար։

Կարկառ ամուր բերդաքաղաք, լերին վըրայ շինած Եփրատ գետոյն արևմտեան կողմը, որ երկայն ատեն Հայոց ձեռքն եղաւ։

Կուրիս ամուր քաղաք, լեռներու մէջ շինած, որոյ մօտ էր Արևրեղան ամրոցը։

Թլպաշար քաղաք որ ըսել է Արաբացւոց լեզուով Բլուր աւետեաց, անոր համար Հայերէն այս քաղքին Թիլ աւետեաց ալ կ'ըսուի, և կ'իյնայ Հռոմկլայի մօտ, որ խաչակրաց ատեն Եդեսիոյ լատին կոմսին ձեռքն էր։

Եփրատացւոց մէջ կ'իյնան նաև Պիրուշ բերդը և Զեւգմա քաղաքը Եփրատ գետոյն քով, զոր Սելևկոս Ա. Ասորւոց Թագաւորը շիներ էր, և հին ատեն Ասորւոց մեծ վաճառաշահ քաղաքներէն մէկն էր։

275. Հռոմկլայի վրայ գիտելիք։ — Հըռոմկլայ որ ըսել է հռոմոց բերդ, Եփրատ գե-

տոյն քով շինած հին ու անառիկ բերդ է, և Թերակղզիի մը պէս Եփրատ գետէն պա_ տած է։ Այս բերդը ատեն մը Գող Վասա_ լին ձեռքն էր, երբը 1116ին Լատինացւոց անցաւ, ուր գնաց 1147ին Գրիգոր կաթո_ ղիկոս, Թողլով Ջորրորդ Հայոց Ծովք կըղ_ ղւոյն մէջ եղած կաթողիկոսարանը, և ի_ րեք տարիէն ետև գնեց այս բերդը լատին Ճոսլին կոմսին զաւկէն, որ բերդին տէրն էր, և անկէ երբը այն եղաւ Հայոց կաթո_ ղիկոսարանը, ուր Գրիգոր կաթողիկոս փառաւոր եկեղեցի մը շինեց, և 1165 իր եղբայրը Ներսէս Շնորհալին կաթողիկոս ձեռնադրեց, որ հոն վախճանեցաւ 75 տա_ րուան, և գերեզմանն ալ ինչուան հիմա կեցած է։

Մէլիք Աշրաֆ Եգիպտոսի սուլթանը 1293ին յարձըկեցաւ այս անառիկ բերդին վրայ, ու երկայն ատեն աշխատելէն ետև փլուց պարիսպներուն մէկ մասը, մնաւ ներն ու բնակիչներէն շատը Թրէ անցուց, այրեց եկեղեցիները ու կաթողիկոսարանը, գերեց մնացած բնակիչները, նաև Ստե_ փանոս Դ կաթողիկոսն ալ իր եպիսկոպոս_ ներովը մէկտեղ, ու Գրիգոր Լուսաւորչի սուրբ աջը՝ զօր Աշրաֆին յաջորդը նորէն դարձուց։ 140 տարիէն աւելի կաթողիկո_ սարանը Հռոմկլայ եղաւ, ուր 10 կաթողի_ կոս նստան, և քաղքին առնուելէն ետքը կաթողիկոսարանը Կիլիկիայի Սիս քաղա_ քը փոխադրեցաւ։

# ԳԼՈՒԽ ԻԸ.

## Կ Ի Լ Ի Կ Ի Ա

---

### Ա. Պատմական գիտելիք.

270. Կիլիկիայի վրայ պատմական գիտելիք։ — Կիլիկիայի երկիրը Հայաստանի սահմանէն դուրս կ'իյնայ, և հին ատեն առանձին թագաւորներ ունէր, որ երբեմն Պարսից և Յունաց իշխանութեան տակն ընկան, վերջը Հռովմայեցւոց, և ետքը Բիւզանդացւոց կայսերաց. ատոնց ատեն 1080ին Ռուբէն իշխանը Բագրատունեաց Գագիկ վերջի թագաւորին ազգականներէն մէկը, անոր մահը լսելով, գնաց Կիլիկիոյ կողմերը՝ ուր շատ Հայ կային, և զանոնք միաբանելով առաւ Յունաց ձեռքէն Բարձրբերդ ու Կոսիդառ ամրոցները, ետքը գնաց ամրացաւ Տօրոս լերին վրայ, ուր շատ Հայեր ժողվուած էին թշնամեաց ձեռքէն ազատելու համար, ու բնակեցաւ Կոռոմոզոլ գեղին մէջ, 15 տարիի չափ տիրելով իր ազգին վրայ։ Ասով Կիլիկիայի մէջ նորէն սկսաւ Հայոց տէրութիւնը, և Ռուբէնին անունովը Ռուբինեանց կամ Կիլիկեցւոց տէրութիւն ըսուեցաւ։

Ռուբէնի յաջորդները հարիւր տարիէ աւելի տիրեցին Կիլիկիոյ մէկ մասին Պարոն անուանելով, վերջը Լևոն Բ որ թէ առաքինութեամբը ու քաջութեամբ անուանի էր, ու խաչակրաց ըրած այլեայլ օգնութեամբքը արեւմտեան թագաւորաց հաճոյ, 1198ին Կիլիկիոյ Տարսոն քաղաքին սրբոյն Սոփիա եկեղեցւոյն մէջ փառաւոր հանդէսով Հայոց թագաւոր օծուեցաւ, և տէրութեան նշանն ալ եղաւ առիւծ, զոր Հենրիկոս Գերմանացւոց կայսրը խաւրեր էր իրեն անուանը համար, որով արծուոյն տեղ՝ որ Արշակունեաց նշանն էր, անկէ ետքը Հայոց տէրութեան նշանը եղաւ առիւծ։ Թէպէտ և այս Նոր թագաւորութեամբ Հայք ուրախացան և սկսան ծաղկիլ քաղաքականութեամբ, բայց շատ նեղութիւն քաշեցին իրենց մերձաւոր այլազգի իշխանաց բռնութենէն, ինչուան որ Կիլիկեցւոց տէրութիւնն ալ 295 տարի տեւելէն ետև 1375ին կործանեցաւ Եգիպտոսի սուլտանին ձեռքովը։

### Աշխարհագրական գիտելիք։

277. Կիլիկիայի սահմանը։ — Կիլիկիան կ'իյնայ Միջերկրական ծովուն եզերքը անոր արեւելեան հիւսիսային գին. և արեւելքէն սահմանն է Եփրատացւոց երկիրը, արեւմուտքէն Լիկայոնիա և Սաւրիա, հիւսիսէն Կապադովկիան կամ Գամիրք։

277 · Կիլիկիոյ բարեբերութիւնը և գլխաւոր գետերը ։ — Երկիրը խիստ բարեբեր է, ու ամէն տեսակ բերք կը բուսցնէ, և հիւսիսային կողմէն Տօրոս լեռներուն գօտւովը պատած է ։ Օդը ամառը տաք է և անառողջ ։ Գլխաւոր գետերն են Կիւդնոս, Սառոս, Սարոս որ և Սէյհան, Պիւռամոս կամ Բիւռամոս որ է Ճիհան ։

Գլխաւոր բերքերն են տեսակ տեսակ արմտիք ու պտուղներ, ինչպէս են խնձոր, տանձ, սերկեւիլ, նուռ, սալոր, ծիրան, արմաւ, թուրինջ, նարինջ, լեմոն, ձիթապտուղ, ձմերուկ, և այլն ։ Կենդանիներէն ոչխար, այծեամն, գոմէշ, արջ, ինձ, և այլն · Թռչուններէն սիրամարգ, կաքաւ, արագիլ, և այլն · Հանքերէն երկաթ, աղ, սև ու ճերմակ ձիւթ, ծծումբ, արջասպ, և զանազան ջերմուկներ · ունի նաև ազնիւ և առատ բամբակ և ապրիշում ։

278 · Կիլիկիոյ գլխաւոր քաղաքները ։ — Տարսոն, որ հին ու անուանի քաղաք է Միջերկրական ծովուն մօտ Կիւդնոս գետոյն քով շինած ։ Այս քաղաքս հաւանական կ'երևի թէ սուրբ գրքին մէջ յիշուած Թարսոս կամ Թարշիշ քաղաքն է, որ խիստ ծաղկած էր վաճառականութեամբ, և ամէն տեղ հռչակուած · Ռուբէն Բ առաւ Յունաց ձեռքէն այս քաղաքս (1182), և հոն հաստատեց իր իշխանութեան աթոռը, ուր մնաց մինչուան 1200 ։

Փնտուխտար Եգիպտոսի ամիրայն 1274ին

յարձակելով Կիլիկիոյ վրայ, Լեւոն Գին ատեն, առաւ Տարսոն քաղաքը, ուր էր Թագաւորին գանձը, և արքունական պալատը և սրբոյն Սոփիայ եկեղեցին այրել տալով, թալլեց քաղաքը, ու շատ հոգի ալ գերի տարաւ: Այս քաղաքս՝ որոյ մէջը ծնած է Պօղոս առաքեալ, հիմա աւերակ է, և կ'երևի թէ գետնաշարժէ եղած է, ու անոր քով շինուած է հիմակուան Թարսուս քաղաքը:

Տարսոն քաղքին մօտ էր Հերոսմաշէն աւանը, Ակներ կամ Ակներս վանքը զոր Լեւոն Բ Թագաւորը շինեց (1200):

Անարզաբա կամ Անաւարզա, որ քարաժայռի վրայ շինած ու ամուր և անմատչելի պարիսպներով ամրցուցած անառիկ քաղաք էր Պիռամոս գետոյն մօտ: Յունաց Պերփեռուժէն կայսրը Լեւոն առաջնոյն ատեն տիրեց այս քաղքին, ամիսէն աւելի պաշարելէն ու զօրքերուն շատը կորսնցընելէն ետև: Այս անուանի բերդաքաղաքը հիմա բոլոր աւերակ է, և մէջը կը տեսնուին շատ եկեղեցիներ, պալատներ, բաղնիքներ, տուներ բոլոր քարէ շինած, որ օձերու բնակարան եղած են:

Անարզաբա քաղքին մօտերը կ'իյնայ Դրազարկ հուչակաւոր վանքը, զոր Թորոս Ա հիմնովին նորոգեց (1100), և երբոր մեռաւ հոն թաղուեցաւ, ուր թաղուեցան նաև Կիլիկեցւոց ուրիշ Թագաւորներն:

279. Սիս մայրաքաղաքը և ուրիշ քա-

ղաքներ ։ — Սիս քաղաքը, շինուած է Տօրոս լերին ստորոտը պզտի գետոյ մը վրայ որ Պիռամոս գետոյն հետ կը միանայ ։ Այս քաղաքս Լևոն Բ 1186ին հիմնովին նորէն շինեց, և գեղեցիկ շինուածներով զարդարեց և ահաւոր պարիսպներով ամրցուց, ու աթոռն ալ Տարսոնէն հոս փոխադրեց ; և անկէ ետքը տէրութեան մայրաքաղաք եղաւ ։ Հեթում թագաւորին ատեն (1266) առին Եգիպտացիք այս քաղաքս, ու թալլելով իրեն ամէն հարստութիւնները, շատ հոգի ալ գերի տարին ։ 1374ին նորէն տիրեցին Եգիպտացիք այս քաղքին, ու կործանեցին անոր մեծ մասը, որոյ աւերակներուն մէջ կը տեսնուի դեռ թագաւորական պալատին մէկ մասը, գանձատունը, սրբոյն Սոփիայ փառաւոր եկեղեցին զոր Հեթում Ա. շինել տուած էր ։ Այս քաղքին մէջ Կիլիկեցւոց ատեն եօթը անգամ ազգային ժողովք եղաւ այլևայլ խնդիրներու վրայ. և 1294ին կաթողիկոսարանը Հռոմկլայէն հոս փոխադրեցաւ, և ինչուան հիմա կաթողիկոս մը կը նստի Էջմիածնի կաթողիկոսէն զատ, և է սրբոյն Ներսէսի Շնորհալւոյն յաջորդութիւնը ։

Հին ատեն այս քաղքին քովերն էր Արքայկաղնի ըսուած վանքը, չորս կողմը կաղնիի ծառերով պատած ըլլալուն այսպէս կոչուած ։

Խասու քաղաք, որուն մօտ վերջերը շինուեցան Այաս և Փայաս կամ Էգիաս, Մի-

Ջերկրական ծովուն ծոցին քով, որ հին ատեն Իսսական ծոց կ'ըսուէր, Ռուբինեանց ատեն Հայոց ծոց, և հիմա ալ կ'ըսուի Փայասայ կամ Այասայ ծոց, մեծ ու հարուստ քաղաք էր; և երևելի եղաւ Մեծին Աղեքսանդրի Դարեհ Պարսից Թագաւորին հետ ըրած պատերազմին համար Քրիստոսէ 333 տարի առաջ։ Այս քաղաքս Ռուբինեանց ատեն Հայոց ձեռքն անցաւ, բայց անծանօթ է մեր մատենագիրներուն մէջ իսոս հին անունը, հապա երկրորդական անունները կը գործածուին։ Ունի աղահանք և ծովեզերեայ ամուր բերդ մը որ կ'ըսուէր Միհնայի բերդ: Լեւոն չորրորդի ատեն (1320) Հագարացիք տիրեցին այս քաղքին, ու շատ հոգի ջարդելէն ետև կործանեցին անոր բերդը, Թալլեցին քաղաքը, ու բնակիչներուն մեծ մասը գերի տարին։ Նոյնպէս այլևայլ անգամներ ալ առին Հագարացիք այս քաղաքը Հայոց ձեռքէն։

Ատանա քաղաք, Սարոս գետոյն քով շինուած, և ինչպէս հին ատեն նոյնպէս հիմա ալ Կիլիկիայի մեծ ու անուանի քաղաքներէն մէկն է։ Դիրքը ցած ըլլալուն համար ամառը օդը խիստ գէշ և անառողջ։

Մոպսուեստիա կամ Մամեստիա, որ հիմա կ'ըսուի Միսիս, Պիւռամոս գետոյն վրայ շինուած է։ Այս քաղքիս մէջ Ագրիանոս կայսրը շատ շինութիւններ ըրաւ, և առաջ Յունաց ձեռքն էր, բայց ետքը Լեւոն Ա. առաւ անոնցմէ, որուն տիրեց ետքը (1330) Եգիպտացւոց սուլդանը։

Մլուճ բերդաքաղաք, Ատանայի մօտ, զոր 1323ին տարին այլազգիք, ու մեծ մասը այրեցին։ Մլուճի մօտիկ է Թագաւորաշէն աւանը։

Հարգան քաղաք, որ հիմա կ՚ըսուի Հաճին կամ Հէճին:

Կոռմազող գեղ, Տորոս լեռներուն վրայ, ուր եղաւ Ռուբինեանց տէրութեան սկըզբնաւորութիւնը Ռուբէն առաջնոյն ձեռքովը։

281. Կիլիկիոյ երեւելի բերդերը։ — Վահկայ ամուր եւ անառիկ բերդը, որ կ՚իյնայ Կիլիկիայի հիւսիսային դին Տորոս լեռներուն մօտ։ Այս բերդս Ռուբէն առաջնոյն որդին Կոստանդին առաւ Յունաց ձեռքէն (1095), ու իր իշխանութեան աթոռը հոս հաստատեց, որ մնաց 100 տարիէն աւելի։ Յունաց Պերփիռուժէն կայսրը (1137) բոլոր Կիլիկիան նուաճելէն ետեւ, առնեց նաեւ այս բերդին. բայց ետքէն Թորոս Լեւոնի որդին նորէն իր հօրը երկիրները ձեռք ձգելով, Վահկայ բերդն ալ ազատեց Յունաց ձեռքէն։

Այս բերդին մօտ է Կաստաղոն վանքը, ուր թաղեցաւ Ռուբէն Ա. Կիլիկեցւոց տէրութեան սկզբնաւորողը։

Լամբրոն բերդ, կ՚իյնայ Տարսոնի կողմերը եւ առաջ Ապլխարիպ անունով Հայ իշխանի մը ձեռք էր, զոր ետքը (1072) Օշին Հայ իշխանին առաւ, որ Արցախ նահանգին կողմէն եկած էր, եւ ամրցուց այս բեր-

դը, ու հոն որդւոց որդի իշխեց գրեթէ 300 տարիի չափ, Կիլիկեցւոց Թագաւորներուն հպատակելով։ Հոս ծնաւ Ս. Ներսէս Լամբրոնացի (1153) Օշին իշխանին որդին։

Լամբրոնի մօտ է Սկևռայ վանքը, ուր տեղ մեծցաւ և առաջնորդ եղաւ Ներսէս Լամբրոնացին, ու երբը Գրիգոր Տղայէն 23 տարուան արքեպիսկոպոս ձեռնադրեցաւ Տարսոն քաղքին, Լամբրոն բերդին և անոր շրջակայ սահմաններուն, ու 45 տարուան մեռաւ և թաղեցաւ Սկևռայ վանքին մէջ։

Կապան բերդ, որ Կիլիկիայի ամուր բերդերէն մէկն էր, կ'իյնայ Տօրոս լեռներուն քով։ Հոս գնաց ամրացաւ Լևոն Զ Ռուբինեանց վերջի Թագաւորը իր ընտանեօք մէկտեղ, և ինը ամիս Թշնամիներէն պաշարուելէն ետև, սովէն անձնատուր եղաւ Թշնամեաց ձեռքը, որոնք բռնեցին ու շղթայով կապած Եգիպտոս տարին։

Անուանի են Կիլիկիայի մէջ նաև Ամմիւգա բերդաքաղաք Տարսոնի մօտերը, Կոռիկոս բերդ Միջերկրական ծովուն եզերքը, որոյ անունով քովի պզտի հրուանդանն ալ Կոռիկոս կ'ըսուէր։ — Ամուտ բերդ, Առիւծ բերդ, Կուպիտառ, Կոսիտառ, Կիտառամոն բերդերը, Թիլ կամ Թիլ Համտունոյ ըսուած բերդը՝ որ բլրոյ վրայ շինուած է, և Արաբացւոց լեզուովը կ'ըսուի Թէլի Համտուն, որ կը նշանակէ բլուր Համտունոյ։ — Պապեռոն բերդ, զոր Ապլխարիպ անունով Հայ իշ-

խանը ամրցուց (1072), ու հոն բնակեցաւ, և մէջը փառաւոր եկեղեցի մ՚ ալ շինեց:

282. Կիլիկիայի երևելի վանքերը: — Կիլիկիայի մէջ բաց 'ի վերը յիշած վանքերէն, երևելի էին նաև Մեծքար կամ Մեծքարոյ ըսուած հռչակաւոր վանքը, զոր Լևոն Գ նորոգեց ու մէջը դպրոց հաստատեց:

Մաշկևոր վանքը, զոր շինեց Թորոս Ա (1100ին ատենները):

Խորին վանք, Լիւսանկան ու Միակեցեր ըսուած վանքերը, զորոնք Կոստանդին՝ Հեթում Ա Թագաւորին բարեպաշտ հայրը շինեց:

Սևաւ լեռն ալ որ Տորոսի մէկ մասն է ու Երրորդ Հայոց ու Կիլիկիայի մէջ կ՚իյնայ, խիստ ծաղկած էր կրօնաւորաց վանքերով. որոց մէջ երևելի էր Շափիրին վանքը, ուսկից էր Իգնատիոս վարդապետ՝ Ղուկասու աւետարանչին մեկնիչ:

Բարաշիթաւ վանքը, ուսկից էր Սարգիս վարդապետը Իգնատիոսին աշակերտակիցը, կաթողիկեայց մեկնիչը:

Ռոմանոսի վանք, Մամռեան վանք, Արեգի վանք, և այլն:

Սևաւ լերին վրայ բաց 'ի Հայոց վանքերէն կային Յունաց և Ասորւոց վանքեր ալ:

283. Կիլիկեցւոց ատեն Հայոց ձեռքը եղած ուրիշ տեղուանքը: — Ռուբինեանք զօրացած ատեննին տիրեցին Կիլիկիայէն դուրս Եփրատացւոց ու Երրորդ Հայոց մեծ մասին վրայ. ինչպէս Մարաշու, Հռոմկլայի,

Ջահուն գաւառին, Պեհեսնի քաղքին, և այլն ։ Իսկ այն կողմերու մնացած քաղաքներէն շատերը այլևայլ Հայ իշխաններու ձեռքն էին կայսեր հպատակ և կամ՝ ինքնագլուխ ըլլալով, ինչպէս էր Գող Վասիլը որ Երրորդ Հայոց շատ քաղաքներուն վրայ տիրած էր ։

Ռուբինեանց տէրութեան ատեն տիրեցին Հայք նաև բոլոր Իսաւրիային՝ որ Կիլիկիային արեւմտեան կողմը կ'իյնայ, և մէջը կը յիշուին Արաստոս գաւառը և Պաղրասայ բերդը. դարձեալ տիրեցին նաև Կապադովկիոյ ու Ասորւոց երկրին այլևայլ քաղքընկրուն ։



# ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ

## ՊԱՏՄԱԿԱՆ ԳԻՏԵԼԻՔ

1. Հայոց հին և նոր քաղաքական վիճակը։ — Հայոց ազգը ծագած է 'ի Հայկայ՝ որդւոյ Թորգոմայ, Յաբեթայ թոռնէն, և անոր հնազանդած ցեղերէն, Բաբելոնի մէջ ազգաց բաժանմանէն ետև. Հայկայ և իր ցեղին տէրութիւնը որ Հայկազունք ըսուեցան, տևեց գրեթէ 2000 տարիէն աւելի, և Քրիստոսէ 328 տարի առաջ վերջացաւ, և Հայաստան կէս մը ինքնիշխան կէս մը Սելևկիացւոց ձեռքը անցաւ, ինչուան որ Քրիստոսէ 149 տարի առաջ Արշակ Պարթև իր Վաղարշակ եղբայրը Հայոց վրայ թագաւոր դրաւ, և սկսաւ Արշակունեաց թագաւորութիւնը, որ տևեց ինչուան Քրիստոսի 428 տարին։ Ետքը սկսաւ մարզպանաց և ոստիկանաց իշխանութիւնը, որ էին Պարսից և Հագարացւոց կողմնակալները 'ի Հայաստան, որուն մէկ մասն ալ Յունաց իշխանութեան տակ ընկած էր. ինչուան որ երրորդ անգամ Նորէն հաստատեցաւ Հայոց

Թագաւորութիւնը Բագրատունեաց ձեռքովը 885ին և տևեց ինչուան 1045 ։ Իսկ Հայոց չորրորդ Թագաւորութիւնը, որ կ'ըսուի Ռուբինեանց տէրութիւն, և սկսաւ 1080ին և տևեց ինչուան 1375, Հայաստանի սահմանէն դուրս Կիլիկիայի մէջ. երբ բուն Հայաստանի կը տիրէին մասամբ Յոյնք, Թուրքք, Վիրք, Հագարացիք և քանի մը ազատ Հայ իշխանք և Թագաւորք. ինչուան որ նորէն Թաթարք, Պարսք և Օսմանեան Թուրքք բոլոր Հայաստանին ալ տիրեցին. որոնցմէ մեծ մաս մը առին Ռուսք այս դարուս մէջ ։ Հիմայ այս երեք ազգաց իշխանութեան տակն է Հայաստան, տեղ տեղ ալ ինքնիշխան Քրդաց բռնութեան տակ. որով շատ աւրուած և անշէն եղած է ։ Բայց տէրութեանց հիմակուան ջանքովը և Հայոց ազգին անխոնջ համբերութեամբը և ճարտարութեամբն չէննալու վրայ է ։

2. Հայոց հիմակուան գիտութեան վիճակը և վաճառականութիւնը ։ — Թէպէտև բուն մեր հայրենական երկրին մէջ որ է Հայաստան, շատ տեղ դեռ տգիտութիւն պատած է, բայց այլևայլ քաղաքներու մէջ ինչպէս են Կոստանդնուպոլիս, Զմիւռնիա, Մոսկուա, Թիֆլիս, Էջմիածին, Կալկաթա, և այլն, ըստ բաւականին ծաղկած են գիտութիւնք, և բուն Հայաստանի մէջ ալ գլխաւոր քաղաքներու և վանքերու մէջ դպրոցներ և ուսումնական ընկերութիւններ կը շատնան. այսպէս ալ գրոց տպա-

րանք և օրագիրք ։ — Իսկ վաճառականութեան կողմանէ՝ Հայոց ազգը միշտ ճարպիկ և յաջող եղած է . և հիմայ ալ ուր որ բազմաթիւ են՝ մէջերնին մեծ վաճառականներ ալ կան , այսպէս օտար երկիրներու մէջ ալ կը գտուին ։

3 . Հայոց կրօնքը ։ — Հայերը հին ատեն հեթանոսութեան ժամանակ , արև լուսին կրակ ու զանազան կուռքեր կը պաշտէին . բայց քրիստոնէութիւնը մտնելէն ետև , միշտ քրիստոնէութեան մէջ հաստատուն կեցած , ու իրենց ազգային աւանդութիւններն ու ծէսերը պաշտպանած ու պահած են ։ Իսկ հիմա ազգը երկու գլխաւոր դաս կը բաժնուի , մէկ մասը Հռովմայ քահանայապետը իրենց գլուխ չեն ճանչնար , այլ Էջմիածնի կաթողիկոսը , ուստի այս մասը կրնանք անուանել Հայ-էջմիածնական կամ Հայ-արևելեան , իբր արևելեան եկեղեցւոյ վարդապետութեանը հետևող ։ Իսկ մէկալ մասը , որ թուով քիչ է , Հռովմայ հայրապետը՝ տիեզերական կամ ընդհանուր եկեղեցւոյ գլուխ կը ճանչնայ , ու անոր հաւատոյ դաւանանքը ունի , անոր համար ալ կ'ըսուի Հայ-հռոմէական կամ Հայ-արևմըտեան , իբր արևմտեան եկեղեցւոյ միաբան։

### Աշխարհագրական գիտելիք.

4. Հայաստանի սահմանը և տարածութիւնը: — Հայաստանի սահմանն է արևելքէն Ատրպատականը կամ Ատրպէճանը, կասպից ծովը և Աղուանից երկիրը կամ Շիրուանը. հիւսիսէն Վրաստանն ու Կուր գետը և Ճանիկը՝ որ հին Խաղտիքն է. արևմուտքէն փոքր Ասիա. հարաւէն Միջագետքն ու Ասորեստանը:

Հայոց երկիրը փոքր Հայքէն ալ մէկտեղ առնլով արևելքէն դէպ'ի արևմուտք կը ձըգուի, և տարածութիւնն է իբրև 140,000 աշխարհագրական մղոն:

5. Հայոց ազգին և Հայաստանի բնակչաց թիւը: — Հայոց ազգը աշխարհիս չորս կողմը ցրուած ըլլալուն՝ որոշ չգիտցուիր ժողովրդեան թիւը. բայց սովորաբար երկուք ու կէս կամ շատ շատ երեք միլիոն կը սեպուի. այսինքն

500,000 'ի Ռուսաստան,
100,000 Պարսկաստանի մէջ,
18,000 յԱւստրիա,
10,000 յԱմերիկէ և 'ի Հնդիկս,
1,000 Եւրոպայի այլևայլ կողմերը.
400,000 Եւրոպայի Տաճկաստան.

Իսկ մնացածները Մեծ և փոքր Հայոց մէջ: Սակայն Հայաստանի մէջ ասկէց աւելի բնակիչ կայ, այլևայլ ազգերէ. ինչպէս են

քիւրտ որ ամենէն աւելի բազմաթիւ են ստ-պուին, տաճիկ, Թիւրքմէն, վրացի, պար-սիկ, և այլն։

Քիւրտերը՝ որոց անունը կ'երևի թէ մեր Կորդուք գաւառին անունէն ելած է, հին Մարաց և Հայոց ազգէն ձևացած են. հա-ւատքնին մահմէտական։ Ասոնց մէկ մասը գեղերու մէջ կը բնակի ու երկրագործ է. իսկ մէկալ մասը վրանաբնակ է, ու տարւոյն այլ և այլ եղանակներուն համեմատ իրեն բնա-կութեան տեղը կը փոխէ։ Այս վրանաբնակ-ները ոչխարներէն շատ են, ու մեծ մասը Տաճկի հարկատու ու պատերազմի ատեն օգ-նական. բայց կան ալ որ ինքնագլուխ են ու զատ զատ պէյերով կը կառավարուին։ Ա-սոնց արհեստն է հովուութիւն ու կենդա-նիներ պահել, բայց ասկէ աւելի սովորական է իրենց մէջ աւազակութիւն ու մարդ թալ-լելը։ Այլևայլ ցեղեր կը բաժնուին, որք մէկ-մէկու հետ շատ անգամ կը կռուին։ Բնու-թեամբ շատ քաջ են ու զօրաւոր, երբեմն կանայք ալ կը պատերազմին. զէնքերնին է սուր և երկայն նիզակ, իսկ գիւղաբնակնե-րուն հրացան։ Ձի հեծնալու խիստ վարպետ են։ Քիւրտերուն այլևայլ ցեղերուն մէջ կը յիշուին նաև Ռօշքօտի, Սըլիվանցի, Մօ-նըգօյի, Մէնդէքըլի, որք մեր հին հայկազուն ցեղերէ ելած են, որ են Ռշտունիք, Սլկու-նիք, Մամիկոնեանք, Մանդակունիք, և այլն։

6. *Հիմայ Հայաստան անուանած երկիրը։* —*Հայք կամ Հայաստան անունը, որ ելած է մեր Հայկ նահապետին անունէն, հիմա*

քիչ տեղ կը բովանդակէ : Այս անունը օտար ազգերուն մէջ անծանօթ ըլլալուն , մեր երկիրը Արամ նահապետին անունովը եւրոպացիք Արմէ՛նիա կը կոչեն, տաճիկները Էրմէնիստան : Եւրոպացւոց աշխարհագիրները բաց 'ի այս անունէն երբեմն Թուրքոմանիա կամ Թիւրքմէնիստան ալ կ՚ըսեն մեր երկրին , մէջի Թիւրքմէն բնակիչներուն համար , որ մետասաներորդ դարուն Թուրքաստանէն հատուած գալով Հայաստանի մէջ բնակեցան : Հայաստանի մեծ մասը մանաւանդ հարաւային կողմերը կ՚ըսուի Քիւրտիստան, Պարսից մասը Ատրպէճան, Հայաստանի հիւսիսային կողմը Կիւրճիստան , Փոքր Հայքը Անատօլու : Ուստի հիմա Էրմէնիստան անունը բուն Էրզրումի կողմերուն ու անոր շրջակայ սահմաններուն կը տրուի հասարակ գործածութեան մէջ :

7 . Հայաստանի գլխաւոր լեռները : — Գլխաւոր լեռներն են Արարատեան լեռները , որոնց ամենէն բարձրն է Մասիս որ մեր Ամասիա նահապետին անունովը կոչուած է . տաճիկները կ՚ըսեն Աղըր տաղ կամ Աիրը տաղ՝ Թերեւս Ակոռի գեղին անունէն առնլով : Վրան մեծ հրաբուխ կայ , որ 1840ին նորէն բռնկեցաւ և ծածկեց Ակոռի գեղը , որ լերին ոտքը շինած էր : Մասեաց վրայ իջաւ Նոյի տապանը :

Տաւրոս կամ Տօրոս լեռներ , որ ըսել է Ցուլ , Հայաստանի արեւմտեան հարաւային կողմը :

կորդուաց լեռներ, որ Կորդուք գաւառին անունովը կոչուած են, արեւելեան Հարաւային կողմը :

Մոսքիկեան, Պարխար և Կղարջք լեռներ, և այլն, արեւմտեան հիւսիսային կողմերը :

8. Հայաստանի գլխաւոր գետերը : — Գլխաւոր գետերն են Եփրատ, տաճկերէն Մուրատ կամ Մերատ չայը, որ երկու գըլխաւոր ճիւղ բաժնուած է : Մէկը կը բխի Կարնոյ լեռներէն, և տաճկերէն կ'ըսուի Գարա սու, մէկալը Ծաղկաց լեռներէն, որ կ'ըսուի Արածանի գետ, և այս է բուն Մուրատ սույու : Այս երկու ճիւղերը իրարու հետ միանալէն ետև կ'անցնի Եփրատացիք և Միջագետք աշխարհներէն յԱսորեստան, և Պաղտատէն վար Խուռնա քաղքին քով Շաթ կամ Տիգրիս գետոյն հետ միանալով կ'ըսուի Շաթ-իւլ-արապ, և անոր հետ մէկտեղ Պասրա քաղքին քով այլևայլ բերնով Պարսից ծոցը կը թափի :

Տիգրիս կամ Դիկղաթ, տաճկերէն Շաթ, որ նոյնպէս երկու մեծամեծ ճիւղերէ կը բաղկանայ. և Եփրատայ հետ միանալով կը թափի Պարսից ծոցը : Այս երկու գետերուն մէջ ալ շատ ձկներ կան, և մէջը նաւարկութիւն ալ կ'ըլլայ :

Երասխ կամ Արաս որ կը բխի Կարնոյ լեռներէն, և մէջը շատ վտակներ առնլով ու միանալով Կուր գետոյն հետ Կասպից ծովը կը թափի : Խիստ սաստիկ և արագ է Երասխայ վազումները, ջուրը աղնիւ և ա-

ուողջարար. մէջը մեծ ձկներ կան, ու վը-
րան մեծամեծ կամուրջներ շինուած են,
որոց մէկն է Ջուղաւ քէօփրիւսի:

Ճորոխ կամ Ճորոխ գետ, տեկ. Ջօրուգ
առոյու, Բաբերդի մօտ Սպերու լեռներէն կը
բխի, և կը Թափի Սև ծովը:

Կուր գետ, տեկ. Քիւր, որոյ մէկ ճիւղը
կը բխի Կարնոյ և Տայոց միջի լեռներէն,
մէկալը Փառաւան լճէն Ախալքէլէքին մօտ
և միանալով Երասխայ հետ Կասպից ծովը
կը Թափի:

Հայաստանի գլխաւոր լճերը: — Վա-
նայ ծով, որոյ մէջէն շատ տառեխ ձուկ կ'ել-
լէ: — Սևանայ ծով, որոյ մէջն է Սևան կըղ-
զին: — Ուրմեայ ծովակ, որ հին ատեն կ'ը-
սուէր Կապուտան ծով: — Փառաւան ծովակ՝
Ջըլտըր, որուն հին ատեն Հիւսիսային ծով
կ'ըսէին, Կեօլձիւկ որ է Ծովք լինը կամ
Խարբերդու ծովը:

11. Հայաստանի կլիմայն: — Հայաս-
տանի օդը շատ առողջարար է, ու բարե-
խառն գօտւոյն տակ իյնալուն համար ա-
մառը զուարճալի: Բայց երկիրը ծովուն ե-
րեսէն բարձր և լեռնոտ ըլլալուն, ձմեռը
սաստիկ ցուրտ կ'ըլլէ, և շատ ձիւն կուգայ.
Հայաստանի օդոյն պատճառաւ է որ մէջի
բնակիչները զօրաւոր կազմուած կ'ունենան
և ուժով կ'ըլլան, վասն զի ծովէն հեռու ըլ-
լալուն համար օդոյ շատ փոփոխութիւններ
չըլլար, և տաքութիւնը ցրտութիւնը միա-
կերպ է, որով շատ տեսակ հիւանդութիւն-
ներէ ալ ազատ է:

12. Հայաստանի պտղաբերութիւնը: — Հայաստանի երկրին ցրտութեանը ու չորութեանը և շատ տեղ լեռնոտ ըլլալուն պատճառաւ ամէն կողմ պտղաբերութիւնը հաւասար չէ. բայց բարեբեր դաշտեր ու հովիտներ շատ ունի, և երկրին մեծ մասը կրնանք ըսել թէ բարեբեր և պարարտ է: Գլխաւոր բերքն է արմտիք, որոց մէջ ցորենը առատ է. ունի նաև հաճար, գարի, սիսեռն, ոլոռն, բակլայ, բրինձ, և այլն: Պտուղներուն մէջ խաղողը ազնիւ է, և շատ տեսակներ ունի: Անուանի է նաև ծիրանը, որոյ նման ուրիշ տեղ չգտնուիր. ունի նաև դեղձ, սալոր, տանձ, խնձոր, սերկևիլ, թութ, ընկոյզ, շագանակ, կաղին, նուռ, թուզ, ձմերուկ, սեխ, վարունգ, և այլն: Անուանի է Հայաստանի մեղրն ալ, ունի նաև գազպէ, խաշնդեղ (ռավէնտ) որոյ բոյսը կ'ըսուի խաւրծիլ, վուշ, կանեփ, բամբակ, բուրդ, ազնիւ բանջարեղէններ, ու տեսակ տեսակ ազնիւ և գոյնզգոյն ծաղիկներ: Կը բուսնի Հայաստանի մէջ ղոշտակ ըսուած բոյս մը, որոյ արմատը մարդոյ կը նմանի, և դեղերու մէջ կը գործածուի:

13. Հայաստանի մէջ գտնուած կենդանիները: — Ընտանի կենդանիներուն մէջ անուանի է արջառ, այծ, ոչխար՝ որոյ դմակը երբեմն ինչուան 12 կամ 15 քաշ կը կշռէ. այս կենդանիներուն պարարտութեանը պատճառաւ կաթնեղէններն ալ ազ-

նիւ են ։ Անուանի է Հայաստանի ձին , որոյ մէկ տեսակն է նժոյգը որ շատ վազուկ ու գեղեցիկ է . ունի նաև ջորի , էշ , գայլ , աղուէս , ճագար , կուզ (սամուր) , մազոտ կատու Վանայ , և այլն . ունի տեսակ տեսակ թռչուններ , հաւ , սագ , բադ , կռունկն , արագիլ , և այլն ։ Անուանի է Հայաստանի որդան կարմիր բռուած որդը , ուսկից աղնիւ ծիրանի գոյն կ'ելլէ ։

14 . Հայաստանի հանքերը ։ — Եփրատ գետոյն քով Կապան մատէնի մէջ կայ ոսկիի և արծաթի հանք , Արղնայ մէջ պղընձի հանք Տիգրիս գետոյն քով , երկաթի հանք Պարխար լեռներուն վրայ , պղնձի հանք Գուգարաց մէջ , և տեսակ տեսակ հանքեր Գանձակայ կողմերը . աղի հանք զանազան տեղեր , նաւթ , ծծումբ , պաղլեղ , և այլն ։ Ասոնցմէ զատ կան Հայաստանի մէջ շատ անգործ մնացած հանքեր ալ ։

15 . Հայաստանի վաճառները ։ — Հայաստանի վաճառքն իրեն երկրին մէջ բուսած բերքերն են , զորոնք կ'առնու Պարսկաստան , Տաճկաստան և Ռուսաստան , և են ցորեն , գարի , սիսեռ , չորցած ծիրան , գինի , մեղր , պանիր , ապխտած ձուկ , գղթոր , արջառ , ոչխար , ձի , և այլն ։ Ասկէ զատ մեծ վաճառականութեան ճամբայ ալ է արևելեան և արևմտեան վաճառուց . և գլխաւոր շահաստաններն են Էրզրում և Թաւրէժ ։

16 . Հայաստանի բաժանումը ։ — Հայաս-

*տան հիմա երեք տէրութեանց ձեռքը ըլլալով, ամէն աշխարհագիրները երեք գլխաւոր մաս կը բաժնեն. այս ինքն, Տաճկի, Ռուսաց և Պարսից Հայաստան։ Տաճկին մասը շատ մեծ է, որոյ մէջ կը բովանդակի փոքր Հայք ու մեծ Հայոց արևմտեան և հարաւային մասը։ Արևելեան կողմը Պարսից ձեռքն է, իսկ հիւսիսայինը Ռուսաց ձեռքը։*

---

# ՏԱՃԿԻ ՀԱՅԱՍՏԱՆ

17. Տաճկի Հայաստանին վրայ դիտելիք : — Տաճկի Հայաստանը՝ որոյ մէջ կ'իյնան հին Հայոց Բարձր Հայք, Չորրորդ Հայք, Աղձնիք, Կորդուք, Մոկք, Տուրուբերան նահանգները, և Վասպուրականի ու Այրարատայ արեւմտեան կողմը, Գուգարք և Տայք նահանգներուն մէկ մասը, հիմա վեց նահանգ կամ փաշայութիւն կը բաժնուի . որ են Էրզրում, Չըլտըր, Կարս, Պայէզիտ, Վան, Տիարպէքիր :

## ՆԱՀԱՆԳ Ա.

### Էրզրում .

18. Էրզրումի նահանգին վրայ դիտելիք : — Էրզրումի նահանգին դիրքը խիստ բարձր և լեռնոտ է . ցուրտը սաստիկ, բայց օդը առողջարար : Գլխաւոր լեռներն են Պինկէօլ լեռները որ ջուրերուն առատութենէն ու աղբիւրներուն շատութենէն՝ այսպէս ըսուեցան . որ խիստ զուարճալի են ,

ու ամառ ատեն տեսակ տեսակ գեղեցիկ ծաղիկներով կը զարդարուին և կ'արդարացընեն երկրաւոր դրախտը այս կողմերս կարծելը: Այս լեռներէն կը բխին Երասխ և ուրիշ գետեր. Էրզրումայ մօտ է Տումլու լեռն, ուսկից կը բղխէ Եփրատ. ուրիշ լեռներէն ալ կը բղխեն Ճորոխ, Թորթումայ գետը, և այլն: Գլխաւոր բերքն է ցորեն, գարի, ծիրան, աղ, շողգամ, վայրի այծ, ջրային բադ ու սագ, ջրշուն, կուզ, և այլն: Երկրին սաստիկ ցրտութեանը պատճառաւ շատ տեղ այգի չըլլար, և պտղատու ծառեր ալ ինչպէս են խնձոր, տանձ, և այլն, քիչ են:

19. Էրզրում նահանգին գլխաւոր քաղաքը: — Գլխաւոր քաղաքն է Էրզրում որ կը նշանակէ Հռոմոց կամ Յունաց երկիր, և հին ատեն կ'ըսուէր Կարնոյ քաղաք և Թէոդոսուպոլիս՝ փոքր Թէոդոս կայսեր անունովը, որ այս քաղաքը շինել տուաւ: Դիրքը բլրոյ մը վրայ է ընդարձակ դաշտի մը մէջ, ու երկու ամուր պարիսպներով պատած, որոց վրայ 72 աշտարակ շինուած են, ունի նաև ամուր միջնաբերդ 12 աշտարակով: Շէնքերուն մէջ անուանի են բաղնիքները, վաճառանոցները, մզկիթները, որոց շատը հին ատեն եկեղեցի էին: Անուանի է Ուլու ճամիին կամ մզկիթին քով շինուած Չիֆտէ մինարէն, որ կարմիր և կապոյտ աղիւսներով շինած է. անուանի է նաև սուրբ Աստուածածնի Հայոց եկեղե-

ցին ։ Էրզիրում քաղաքը հիմա Ասիոյ Տաճկաստանին վաճառաշահ քաղաքներէն մէկն է. անուանի է մետաքսը, բամբակը, պղնձեղէնները, և այլն ։ Բնակիչները 80,000 կը համրուին. մեծ մասը տաճիկ, ետքը հայ ։

Էրզիրումի մօտ է Մուտտուրկուշ կամ Լուսաւորչի վանքը, Խաչկայ վանքը, Հենձոց վանքը Հինձք գեղին մէջ որ կ'ըսուի նաև կարմիր վանք, իր գմբեթաւոր սուրբ Աստուածածնի եկեղեցին կարմիր քարէ շինած ըլլալուն համար, որ կը կարծուի թէ մեծն Ներսէս շինած ըլլայ, որոյ մօտ կայ Հռիփսիմեանց աղբիւր մը ուխտատեղի ։

Էրզիրումի մօտերը կ'իյնան նաև այս գեղերը.

Արծաթի գեղ, որոյ բնակիչներուն մեծ մասը հայ են. և մէջը տաք ջրոյ ջերմուկ կայ, նոյնպէս նաև իրեն մօտ Աղտաղտ գետին մէջ ։

Կաւ գեղ, որոյ բնակիչները Անի քաղքէն գաղթական եկած կը կարծուին ։

Իլիճա կամ Ըլըճա գեղ, ուր տաք ջրոյ ջերմուկներ կան ։

Տօղուշ գեղ, ուր պաղ ջրոյ առողջարար աղբիւր կայ ։

Քարուշտ գեղ, ուր քարի մէջ փորուած այրեր, խուցեր կան ։

20. Էրզիրումի նահանգին ուրիշ գլխաւոր քաղաքները ։ — Խնուս կամ Խոներս բերդաքաղաք, ձորի մէջ շինուած լեռնակի մը

տոքը, որ պարսպի տեղ քաղքին գրեթէ չորս կողմը կը պատէ. ունի ամուր բերդ մը: Խիստ անուանի են Խնուսի ձիերը:

Թորթում գիւղաքաղաք, ձորի մէջ շինուած, ունի պզտի բերդ մը. և իր վիճակին մէջ գրեթէ 70ի չափ գեղեր կան, որոց բնակիչները տաճիկ և հայ են: Երկիրը գըւարճալի և բարեբեր է, և բաց 'ի ձիթենիէն, ամէն տեսակ պտուղ կը բուսցընէ. ունի նաև աղահանք Թաւպար գեղին մէջ: Անուանի են Թորթումի մօտ Լօշք և Խախուռ գեղերը, իրենց մէջի վանքին և փառաւոր եկեղեցւոյն համար, որ հիմա մզկիթ եղած են:

Սպեր կամ Իսպիր բերդաքաղաք, Ճորոխ գետոյն վրայ, բնակիչներուն մեծ մասը տաճիկ են: Այս քաղքին չորս դին այգեստաններ ու պարտէզներ կան, և իր վիճակին մէջ ունի շատ գեղեր, երկիրը բարեբեր է և շատ մեղրամոմ ունի, նաև հանքեր ալ:

Բայբերդ կամ Պայպուրդ, դաշտի մէջ շինուած բերդաքաղաք է ու երկու կողմէն լեռներով պատած է, և դիմացը քարաժայռի վրայ ունի ամուր բերդ կէս մը փլփըլկած: Քաղքին մէջէն կ'անցնի Ճորոխ գետը, որոյ վրայ չորս կամուրջ շինուած է: Բնակիչներուն մեծ մասը տաճիկ են: — Բաբերդայ սահմանին մէջ է Վարզահան, որ առաջ ընդարձակ գիւղաքաղաք էր. բայց Լազերուն յարձակմունքէն հիմա աւերակ և մեծ մասը գետինը թաղուած է. սակայն

գեռ մէկ քանի քարաշէն եկեղեցիներ կեցած են, կէս մը քայքայած։ Բաբերդի վիճակին մէջ կան շատ աւաններ ու գեղեր, ինչպէս Բայախոռ, Օձանեղ, Վ՛անշէն որ հին ատեն կ'ըսուէր Վահանաշէն, և այլն։ Բաբերդի վիճակին օդը ցուրտ է ու երկիրը լեռնոտ, բայց բարեբեր. բնակիչները հայ, տաճիկ և հոռոմ։

Եզնկա կամ Երզնկա և տաճկերէն Էրզինճեան քաղաք, Գայլ գետոյն քով շինած ու պարսպով պատած։ Թէպէտ և քաղաքը շատ ընդարձակ է, բայց բնակիչները համեմատութեամբ քիչ են, վասն զի ստէպ երկրաշարժ կ'ըլլայ Երզնկային կողմերը։ Քաղքին մօտ է Սեպուհ կամ Գոհանամ լեռը, որոյ վրայ սուրբ Գրիգոր Լուսաւորիչ Մանեայ այրին մէջ երկայն ատեն ճգնեցաւ։ Քաղքին չորս կողմը շատ վանքեր կան, որոցմէ ոմանք Գրիգոր Լուսաւորիչը շինած է, և ոմանք ալ հին մեհեաններէ յարմարցուցած։ Ասոնց մէջ անուանի է Ներսէս հայրապետ ըսուած վանքը, զոր մեր Տիրան Արշակունի թագաւորը շինած է կ'ըսեն, անոր համար Տիրանաշէն կ'ըսուի եղեր առաջուց. բայց երբոր մեծին Ներսէսի մարմինը Թիլ աւանէն հոս փոխադրեր են, անոր անունովը Ներսէս հայրապետ կոչուեր է։ — Երզնկա քաղքին սահմանները շատ գեղեր կան. երկիրը բարեբեր է և ամէն տեսակ պտուղ կը բուսցնէ. ջուրը առատ է, օդը առողջարար, ու հողն ալ

սաստիկ բորակային, անոր համար երկրաշարժ ալ շատ կ՚ըլլայ: — Երզնկա քաղքին ու Եկղիառումի մէջ կայ քարաշէն մեծ իջևան մը կարաւաններուն համար որ կ՚ըսուի Մամախաթուն, զոր փաշայի մը խաթունը շինած է, ու անոր համար իր անունովը կոչուած:

Կամախ կամ Քէմահ, անուանի բերդաքաղաք է, որ հին ատեն կ՚ըսուէր նաև Անի: Իրեն մօտերն է Թորդան գեղը, Աւագ վանքը Թադէոս առաքելոյն անունովը շինուած: — Բագառիճ կամ Բէգէրիճ, որ երկու գեղեր են իրարու մօտ, ու կռապաշտութեան ատեն շատ անուանի էին մեհեաններով: — Կամախին շրջակայ սահմաններն աղնիւ աղի հանք կայ, անոր համար հին ատեն այս կողմերս Դարանաղի գաւառ կ՚ըսուէր:

Կեղի գիւղաքաղաք, բնակիչներուն շատը հայ են, և մօտ է իրեն Սուրբ Կարապետ վանքը, որոյ քովէն կ՚անցնի Օրոր գետակը, վրան քարաշէն կամուրջ շինուած, որոյ վրայ նահատակուած է կ՚ըսեն Խադ եպիսկոպոսը, անոր համար ալ կ՚ըսուի Փէշիշ քէօփրիւսի:

21. Բասէն գաւառին վրայ գիտելիք: — Բասէն գաւառը Երասխ գետոյն երկու կողմն ալ կը ձգուի, ու երկու մաս կը բաժնուի, որ կ՚ըսուին Վերին Բասեն և Վարի Բասեն, երկրորդը առջինին արևելեան կողմը կ՚իյնայ և աւելի ընդարձակ է: Երկիրը բարե-

թեր է ա՛րմտեաց կողմանէ, բայց պտղա-տու ծառեր չբուսցըներ։ Հիմա Բասեն գա-ւառը աւելի ընդարձակ կը ձգուի քան թէ հին ատեն, և Էրզրումի փաշային իշխա-նութեան տակն է։

22. Վերին Բասենոյ գլխաւոր տեղուան-քը։ — Հասանղալա կամ Հասանգալէ քա-ղաքաւան, 5000 բնակչօք. վերին Բասե-նոյ մէջ խոտաւէտ լերին մը ոտքը շինած՝ որ հին ատեն Ծիրանի լեռ կ'ըսուէր։ Այս լերին մէկ կողմը շինուած է ամուր բերդ մը, որ շինողին անունովը Հասանղալա ըսուե-ցաւ, ուսկից գիւղաքաղաքն ալ նոյն անու-նը առաւ. որ հին ատեն Ցուստինիանուպոլիս կ'ըսուէր։ Բերդն ու քաղաքը կրկին պա-րըսպով պատած է, և պարսպին չորս կողմն ալ խրամ բացած, ուր պատերազմի ատեն քովի Հասանղալայու չուր ըսուած գետէն՝ որ հին ատեն Մուրց կ'ըսուէր, մէջը ջուր կ'արձըկեն։ Գիւղաքաղաքին մօտերը երկու տաք ջրոյ ջերմուկներ կան, որոց վրայ քա-րաշէն բաղնիք շինուած են, փոքր Թէոդոս կայսեր Անատոլիս զօրավարին ատենէն։ — Հասանղալայու քովն է Բասենոյ կամ Հասանղալայու կամ Աստուածածնի ըսուած վանքը, զոր Գրիգոր Մագիստրոս շինած է, և անոր եկեղեցւոյն մէջ թաղուած իր մարմինը։ — Հասանղալայու մօտ է Չօպան քէօփրիւսիւ ըսուած մեծ ու քարաշէն կա-մուրջը եօթը կամարով Երասխ գետոյն վը-րայ, հովուի մը ձեռքով շինուած։

Հասանղալա գիւղաքաղաքին մօտերը կ'իյնան Ախաս, Ոկուր, Գումնձոր, Պատիժվան գեղերը, որոց բնակիչները գրեթէ բոլոր Հայ են։

Այրընկայ բերդ, որուն տանկըները կ'ըսեն Ճիւլավ գալէսի, հին ամուր և անառիկ բերդ է քարաժայռի մը վրայ շինած, ուր պատերազմի ատեն կ'ապաւինին մօտիկ գեղերուն բնակիչները։ — Անիկ բերդին մօտ է Խոսրովերան գեղը, որ գեղեցիկ ու ծաղկով զարդարուն հովտի մը մէջ շինուած է։ Այս գեղին մօտ է Բոցիկ ըսուած բարձր լեռը, բոլոր սև ու ապառաժ քար։

Փոքր Տոռ և Մեծ Տոռ որ իրարու մօտիկ երկու գեղեր են, և հին ատեն կ'ըսուէին Որդորուռ և Դոռ։

Քէօփրիւ քէօյի որ Ջոպան քէօփրիւսիւյին քով շինուած է, և կ'երևի թէ հին Վաղարշաւան քաղքին տեղն է։

Իշխուն գեղ, որ առաջուց Իշխան կը կոչուէր, ձորի մէջ շինուած է, և քովերը շատ աւերակներ կան։

25. Ստորին կամ Վարի Բասենոյ գըլխաւոր տեղուանքը։ — Խորասան գիւղաքաղաք, որոյ բնակիչները կէս մը Հայ կէս մը Թուրք են։

Մժնկերտ գիւղաքաղաք, որ բերդ ունի և քովերը տաք ջրոյ ջերմուկ։ Մժնկերտի մօտ է սուրբ Խաչ լեռը, որոյ վրայ սուրբ Խաչ անունով փառաւոր եկեղեցի մը կայ․ բայց ասկէց վեց եօթը հատ ուրիշ քարաշէն ե-

կեղեցիներ, և գմբէթաւոր կլոր մատուռ մը միակտուր քարէ փորուած ։

Բայց առանձմէ կան Սոորին Բասենոյ մէջ ուրիշ շատ գեղեր ալ մեծ ու պզտիկ, ինչպէս Ջիրաւանք, Պաշգեղ, Արմուշալու, Ձիւրիկ, և այլն ։

24. Տուժիկ գաւառին վրայ գիտելիք ։ — Այս գաւառը Քիւրտերուն ձեռքն է, և Էրզրումի փաշայէն կախմունք չունի ։ Երկիրը ընդարձակ, ամուր և շատ բարեբեր է, որ գրեթէ ամէն տեսակ պտուղ կը բուսցնէ ։ Բնակիչները բոլոր Քիւրտ են և աւազակութեան հետ կ՚ըլլան, և շատ անգամ կարաւանները կը թալլեն, զորոնք անկարելի եղած է նուաճելը իրենց երկրին ամրութեանը համար ։

Այս գաւառին մօտ է Տէրսիմ լեռը, որոյ ծայրը մեծ եկեղեցի մը կայ 40 խորանով, զոր սուրբն Արիստակէս շինած է կ՚ըսեն, բայց հիմա պանրի ամբարանոց եղած է, և թող չեն տար Քիւրտերը որ Քրիստոնեայք ներս մտնեն ։

## ՆԱՀԱՆԳ Բ.

### Չըլտըր.

25. Չըլտըր նահանգին վրայ գիտելիք։ — Այս նահանգը որ առաջ Ախըլցխա ալ կ՚ըսուէր, Երզրումայ և Կարսայ հիւսիսային կողմը կ՚իյնայ. 1828էն վերջը մեծ մասը Ռուսի ձեռքն անցաւ Ախըլցխա քաղքավ մէկտեղ։ Երկիրը ընդհանրապէս բարեբեր. մէջէն կ՚անցնի Ճորոխ գետը, և անոր Աճարա վտակը։

26. Չըլտըր նահանգին գլխաւոր քաղաքները։ — Արտանուշ պարսպապատ քաղաք որ ամուր բերդ ունի։ — Արդուին քաղաք, որոյ շրջակայ սահմանը շատ բարեբեր է, և իրեն հարաւային կողմը՝ Իշխան գիւղաքաղաքը, որոյ մէջ փառաւոր եկեղեցի մը կայ հնուց մնացած։ — Արտահան բերդաքաղաք, Սարդէլ աւան, Օլթի պարսպապատ քաղաք որ հին ատեն կ՚ըսուէր Ողթիք, Նարիման որ հին ատեն կ՚ըսուէր Մամրուան, Բերդագրակ գիւղաքաղաք, որոյ սահմանակից գեղերուն բնակիչները բոլոր հայ էին, բայց ետքէն շատը տաճկացան։ Բերդագրակին մօտ է Խոտըրջուր ըսուած երկիրը, որոյ հարաւային կողմէն Ճորոխ գետը կ՚անցնի. երկիրը լեռնոտ և օդը ցուրտ, բնակիչները բոլոր հռոմէական հայ են։

## ՆԱՀԱՆԳ Գ.

### Կարս.

27. Կարս կամ Գարս նահանգին սահմանը։ — Կարս նահանգը կ'իյնայ Չըլտըր, Էրզրումի և Պայէզիտ նահանգներուն մէջ։ Երկիրը բարեբեր է. ունի ցորեն, գարի և տեսակ տեսակ պտուղներ։ Գլխաւոր գետն է Արփա չայը, որ համանուն լճակէն կ'ելլայ, հին ատեն կ'ըսուէր Ախուրեան գետ։

Այս գետով կը բաժնուի հիմա արեւելեան կողմէն Տաճկի սահմանը Ռուսի սահմանէն։ Ունի լճեր ալ, որոնց գլխաւորն է Չըլտըրը, հին ատեն Ծովակ հիւսիսոյ կամ Գաղակացիս ըսուած։

28. Կարս նահանգին գլխաւոր քաղաքները։ — Գարս կամ Ղարս փաշայանիստ ամուր բերդաքաղաք, որ պարսպով պատած է։ Բնակիչները քաղքին մեծութեանը համեմատ քիչ են, որ հիմա 12,000 կը համրուին, որոնցմէ շատը քիւրտ ու հայ են։ Անուանի է հոս Աբաս Թագաւորին շինած փառաւոր եկեղեցին 930ին, որ ինչուան հիմա կեցած է։ Կարսին շրջակայ սահմանները 200ի չափ մանր գեղեր կան, որոց մէջ անուանի է Ջարիշատ գեղը, որ հին ատեն երեւելի քաղաք էր։ Այս քաղաքս վերջի պատերազմին ատեն (1855) Ռուս-

ները առին և բերդերը աւրելով նորէն թողուցին Օսմանեանց։

Կաղզուան կամ Գաղզման գիւղաքաղաք՝ լերին ոտքը շինած, որոյ Հայ բնակիչներուն շատը Ռուսաստան գաղթուեցան։ Գինւոյ ու պտղոց շատ առատութիւն ունի իրեն շրջակայ սահմանները։ Ասոր մօտերն է Վարդիհեր վանքը, որ հին ատեն կ՚ըսուէր Վարդիկ հայր:

29. Շորէկէլ գաւառին վրայ գիտելիք։ — Շորէկէլ գաւառը հին Շիրակ գաւառն է, և անունը ելած է հին Շիրակաւան քաղքէն։ Երկիրը շատ բարեբեր է, բայց մշակութիւնը քիչ. մէջը շատ գեղեր կան, բայց ամենէն անուանին է Անի քաղքին աւերակները. դեռ կեցած է պարսպին մեծ մասը աշտարակներովը, և տասնի չափ եկեղեցիներով, որոց երեքը չորսը կէս մը կործանած են, մէկալնոնք դեռ ամբողջ կեցած. նոյնպէս նաև թագաւորական ընդարձակ ու զարդարուն պալատը կէս մը կործանած։ Անւոյ հարաւային կողմը կ՚իյնան Մրեն ու Բագարան քաղաքներուն աւերակները, որ հիմա կ՚ըսուին Ղարապաղ ու Բագրան: Անւոյ մօտ է Խօշավանք ըսուած մեծագործ վանքը, Ախուրեան գետոյն քով, ուր են Բագրատունի թագաւորներուն ոմանց գերեզմանները, որորոցի ձևով կարմիր քարէ շինուած։ Ասոր մօտերը կ՚իյնան Շիրակաւան ու Արգինա երևելի գիւղաքաղաքաց աւերակները։

# ՆԱՀԱՆԳ Դ.

## Պայէզիտ.

30. Պայէզիտ նահանգին սահմանը։ — Պայէզիտի նահանգը կ՚իյնայ Բասենի, Կարսի, Երևան ու Վան գաւառներուն մէջ տեղը։ Բնակիչներուն շատը հայ ու քիւրտ են. երկիրը բարեբեր է. և վայրի կենդանիներ շատ ունի։ Այս գաւառին մէջ կը բղխէ Եփրատայ արևելեան ճիւղը, որ Մուրատ կ՚ըսուի, և հին ատեն Արածանի։

31. Պայէզիտի նահանգին գլխաւոր քաղաքները։ — Այս նահանգին մէջ անուանի է Պայէզիտ ամուր բերդաքաղաքը լերին վրայ շինած։ Կ՚երևի թէ հին ատեն այս քաղաքը կ՚ըսուէր Դարոյնք, որոյ բնակիչները 10,000 կը համրուին. շատը քիւրտ են ու վաճառականութիւնը բաւական ծաղկած է։ Այս քաղաքն ալ առին Ռուսք 1854ին, ու ամրութիւնները աւրելով թողուցին։

Տիատին քաղաքաւան, ունի ամուր միջնաբերդ մը։ Այս քաղքին մօտ է Ալա տաղը, որ հին ատեն կ՚ըսուէր Ծաղկաց լեռ, ուսկից կը բխի Եփրատ գետոյն մեծ ճիւղը. և շատ ջրաբբի ու պարարտ լեռ ըլլալուն համար, զարնան տեսակ տեսակ ծաղիկներով կը զարդարուի։ Տիատինէն երեք ժամ հեռու է Իւչ քիլիսէ ըսուած վանքը, հին

Նպատ լեռին վրայ շինած ։ Ունի մեծ ու քարաշէն եկեղեցի մը Գրիգոր Լուսաւորչի անունով, զոր Յունաց Հերակլ կայսրը շինած է. թէպէտ և առաջուց հոն Գրիգոր Լուսաւորիչ եկեղեցւոյ մը հիմը ձգած էր ։

32. Ալաշկերտգաւառին վրայ գիտելիք։— Պայէզիտի արևմտեան կողմն է Ալաշկերտ գաւառը հին Վաղարշակերտ քաղքին անունովը, որ հին ատեն կ'ըսուէր Բագրեւանդ գաւառ ։ Երկիրը բարեբեր ու զուարճալի է, ունի ցորեն, գարի և ուրիշ արմտիք, բայց պտուղը քիչ է ։ Գլխաւոր քաղաքն է Թօփրագ գալէ լերան մը ոտքը շինուած, որոյ ծայրը բերդ մը ունի ։ Այս քաղաքս հին Վաղարշակերտ քաղաքն է ։ Ասկէ շատ հեռու չէ Փէօսէ տաղը բուսած ապառաժ ու անբեր լեռը, որ հին ատեն կ'ըսուէր Սուկաւ կամ Սուկաւէտ, որոյ վրայ նահատակեցան Սուքիասանք ։

Ալաշկերտին մէջ անուանի է նաև խամուր բերդաքաղաքը, որոյ բնակիչներուն շատը քիւրտ են ։

## ՆԱՀԱՆԳ, Ե.

### Վան.

33. Վան նահանգին վրայ գիտելիք։ — Վան նահանգը կ'իյնայ Պայէզիտին, Ատըրպատականին, ու Տիարպէքիրին մէջ։ Բնակիչներուն շատը քիւրտ, հայ և տաճիկ են. բերքերուն մէջ ցորենը, գինին, մեղրը ազնիւ են։ Գլխաւոր լեռներն են Նեբրովթայ լեռ, Գրգուռ լեռ, Սիփան լեռ, Վարագ՝ որոյ վրայ տասուերկու եկեղեցի կայ շինած և Աւագ սուրբ Նշանի վանքը։ Կայծառակող լեռ որ հին ատեն կ'ըսուէր Ընծաքիսար։ Գետերուն մէջ անուանի են Տիգրիս, և Վանայ ծով թափուող գետակները, ինչպէս Անգղ, Մարմէտ կամ խօշապ, և այլն։ Այս ծովակին մէջէն շատ տառեխ ձուկ կ'ելլէ, ջուրը աղի, և շատ խորունկ է. և մէջը չորս կղզի ունի, որ են Աղթամար, Առտէր, Կըտուց, Լիմ։

34. Վանայ ծովուն կղզիներուն վրայ գիտելիք։ — Աղթամարը որ Լիմ ու Կտուց կղզիներէն պզտիկ է, կ'իյնայ Վանայ ծովուն արևելեան հարաւային կողմը, ուր տասներորդ դարէն 'ի վեր Հայոց կաթողիկոսութեան մէկ ճիւղը կը նստի։ Անուանի է մէջը սուրբ խաչի փառաւոր վանքը ու անոր եկեղեցին, զոր շինեց Գագիկ արծրունեաց թագաւորը։

Առտէր կղզին Նարեկայ գեղին դիմացը կ'իյնայ և հիմա անբնակ է։

Կտուցը կ'իյնայ Աղթամարին արևելեան հիւսիսային կողմը, մէջն է սուրբ Կարապետի վանքը։

Լիմը որ ամենէն մեծ կղզին է, Կտուցայ մօտ է, մէջն է սուրբ Գէորգայ վանքը։

Այս վերջի երկու կղզիներուն մէջ խըստակրօն ճգնաւորներ կան։

35. Վան նահանգին գլխաւոր քաղաքը և ծովեզերեայ տեղուանքը։—Այս նահանգին գլխաւոր քաղաքն է Վան որ հին ատեն կ'ըսուէր նաև Շամիրամակերտ։ Երկու ամուր պարիսպներով պատած է, և դիմացը քարաժայռին վրայ ունի անառիկ բերդ մը, զոր Ասորեստանեայց Շամիրամ թագուհին շինած է։ Այս քաղքիս բնակիչներուն շատը Տաճիկ են. Հայեր ալ շատ կան, և ութը քարաշէն եկեղեցի ունին։ 1648ին երկրաշարժէ քաղքին մէջ շատ տեղեր կործանեցան, ու շատ հոգի ալ փլատակներու տակ մեռան։ Հիմա բնակչաց թիւն է 25 կամ 30,000 ու առուտուրը բաւական ծաղկած է։

Վան քաղքին շրջակայ սահմաններուն մէջ կան շատ գեղեր ու վանքեր. որոց մէջ անուանի են Արտամէտ աւանը, որ ազնիւ խնձոր, տանձ և խաղող ունի։ Այս աւանը շատ շինութեամբ և պարտէզներով զարդարեր էր մեր Բ Արտաշէսն։ Ավանց գեղ, որ Վանայ ծովուն վրայ բանուկ նաւահան-

գիտ է, անոր համար Տաճկերէն խաքէլէ քէօյիւ կ՚ըսուի։ — Նարեկ գեղ, Վանայ ծովուն հարաւային կողմը, ուր է Նարեկայ հռչակաւոր վանքը, որոյ մէջն են Գրիգորի Նարեկացւոյն և սրբոյն Սանդխտոյ գերեզմանները։ — Համոշկ կամ Ամոշկ բերդաւան, արևելեան կողմը, որ հին ատեն շատ անուանի էր, ուր Գագիկ Արծրունեաց թագաւորը շատ շինութիւններ ըրեր էր։ — Բռառակաճց գեղ, Վանայ ծովուն քով որ Բատ անունով իշխան մը շինած է։ Ասոր մօտ է Խղի կամ Ոչոռ վանքը որ լերին վրայ շինուած փառաւոր քարաշէն եկեղեցի մը ունի, որ կ՚ըսուի նաև Քառասնից խորան, քառասուն խորան ունենալուն համար, և շինած է Գագիկ Արծրունեաց թագաւորը։ — Կարմրակայ վանք, Ատէր կղզւոյն դիմացը, որ քարաշէն եկեղեցի ունի Գագիկ Արծրունիէն շինած։ — Թումայ առաքելոյն վանքը որ ծովահայեաց գեղեցիկ դիրք ունի։

36. Վանայ նահանգին ուրիշ գլխաւոր քաղաքները։ — Խօշապ բերդաքաղաք, համանուն գետոյն քով շինած, ունի քարաժայռի վրայ ամուր բերդ։ — Խօշապին մօտերն է Ապագա ամուր բերդաքաղաքը որ երեք բերդ ունի. և Հոգւոց վանքը, ուր է սուրբ Աստուածածնի հրաշագործ պատկերը զոր Բարթուղիմէոս առաքեալը Հայաստան բերաւ։

Ոստան քաղաք, Վանայ ծովուն հարաւային կողմը, ունի բերդ, բայց աւերակ է.

բնակիչները քիւրտ են : — Ոստանի մօտ է Քարադաշտ, գեղը որ հին ատեն կ'ըսուէր Մանակերտ և Վառըճշատ գեղը՝ ուր է սըրբոյն Եղիշէի Թարգմանչին վանքը և գերեզմանը :

Բերկրի քաղաք, ունի բերդ, և դիմացը սրբոյն Ստեփանոսի վանք մը լերան վրայ շինուած :

Արճէշ քաղաք, որոյ մօտ է Մեծոփայ վանքը :

Արծկէ բերդաքաղաք, Վանայ ծովուն մօտ, որոյ սահմանները աղնիւ ցորեն և գարի կ'ելլէ :

Խլաթ քաղաք, ծովուն արևմտեան հիւսիսային կողմը, բնակիչները քիւրտ են, և իր շրջակայ սահմանները աղնիւ ծիրան, խնձոր և ցորեն կ'ելլէ : — Այս քաղաքս ատենօք շատ ծաղկած էր և մէջը այլազգի Թագաւորներ կը նստէին, որոնց քարաշէն ձեռակերտները և գերեզմանները կեցած են : Գառնուան գեղը ծովուն արևմտեան կողմը ապահով նաւահանգիստ ունի :

Բաղէշ կամ Պիթլիս, երևելի և ընդարձակ բերդաքաղաք է, որոյ իշխանութիւնը քիւրտերուն ձեռքն է, և առատ ջրեր ու պարտէզներ ունի : Բնակիչներուն մեծ մասը քիւրտ են : — Բաղէշի սահմանները շատ գիւղեր կան որոց մէջ անուանի է Ծապղկոր գեղը, ուր առողջարար աղբիւր մը կը բխի լերան մը ոտքը, որ ամառը շատ պաղ է և ձմեռը տաք գոլորշիք կ'արձըկէ : Բաղէշի

մօտ են Գրգուռ լեռները, որոց մէկ մասը որ Խլաթի կողմերը կ՚իյնայ կ՚ըսուի Նեքրուվրայ լեռ, Նեբրովթայ անունովը, որ մեր Հայկ նահապետին հետ պատերազմելով մեռաւ. ինկած տեղը Հայկ նահապետ կոչեց Գերեզմանք, որոյ մօտ է Հայոց ձոր գաւառը, որ հիմա կ՚ըսուի Հավոց ձոր:

37. Ճուլամերկ գաւառին երևելի տեղերը: — Այս գաւառին մէջ, որ Վանայ հարաւային կողմը կ՚իյնայ, երևելի են Ճուլամերկ բերդաքաղաքը, որոյ բնակիչներուն շատը քիւրտ են, և իշխանութիւնն ալ անոնց ձեռքն է:

Մոկս բերդաքաղաք համանուն վիճակին մէջ, որ խիստ լեռնոտ է, և հին ատեն կ՚ըսուէր Մոկք: Բնակիչներն են քիւրտ և հայ:

Ապարանք գեղ, ուր է Ապարանից քարաշէն վանքը:

38. Սասուն գաւառին վրայ գիտելիք: — Սասուն գաւառը կ՚իյնայ Մուշին հարաւային կողմը. օդը առողջարար է, երկիրը սաստիկ լեռնոտ՝ բայց պտղաբեր, և մեծ մեծ հատերով խաղող ունի: Բնակիչները որ են քիւրտ և հայ, զօրաւոր և քաջասիրտ մարդիկ են: Անուանի է մէջը Սասունէ բերդը լերան վրայ շինուած, և Աշմուշատ գեղը:

39. Մշոյ գաւառին վրայ գիտելիք: — Մշոյ գաւառը որ հին ատեն ըստ մասին Տարօնոյ մէջ կ՚իյնար, ընդարձակ դաշտ է, օդը առողջարար, երկիրը բարեբեր. ունի

ազնիւ ցորեն, ծխախոտ, երկըթի հանք, ու տեսակ տեսակ կենդանիներ և թռչուններ: Բնակիչներուն շատը հայ ու քիւրտ են, և առանձին պէյով կամ հրամանատարով կը կառավարուի: Գլխաւոր քաղաքն է Մուշ, որ դիմացը բլրոյ վրայ բերդ ունի հին ատենէն շինուած: Իրեն մօտ են Ալտողըլքերդ կամ Ալտողաքերդ ամրոցին աւերակները, Ծակքար ըսուած քարածայռը Մշոյ և Բաղէշի մէջ, որոյ տակէն ճամբայ բացուած է, և մէջէն կ'անցնին ճամբորդները:

Մուշ քաղքին մօտերը կ'իյնան Առաքելոց կամ Ղազարու վանքը, որոյ եկեղեցւոյն բակը Թարգմանչաց շատին գերեզմանները կան, այս ինքն Գիւթի անյաղթին, Մամբրէի, Ստեփանոսի, և այլն: — Մատրավանք կամ Մառնեխանք, ուր է Յովհաննու Կարապետին ճկոյթ մատը: — Սուրբ Յովհաննէս կամ Եղրդուտի վանքը, որոյ քարաշէն եկեղեցին Թադէոս առաքեալը շինած է կ'ըսեն: — Սուրբ Կարապետի հռչակաւոր վանքը, որ անուանի ուխտատեղի է, և հին ատեն կ'ըսուէր Իննակնեան կամ Գլակայ վանք, ուր ամէն տարի վարդավառին օրը շատ ուխտաւոր կ'երթան: — Մուշին մօտ է նաև Սուրբ Սահակ ըսուած գեղը, որ հին ատեն կ'ըսուէր Աշտիշատ, ուր թաղուած է սուրբն Սահակ Պարթև:

Մշոյ գաւառին արևելեան հիւսիսային կողմը կ'իյնայ Պուլանըգ վիճակը, որուն մէջն է Մելազկերտ քաղաքը, որ հին ատեն կ'ըսուէր Մանազկերտ, և ամուր քաղաք էր:

# ՆԱՀԱՆԳ Ձ.

## Տիարպէքիր.

40. Տիարպէքիրի նահանգին սահմանը։ — Տիարպէքիրի նահանգը կ'իյնայ Միջագետաց, Եփրատ գետոյն, Էրզրումի նահանգին ու Մուսուլին մէջ։ Բնակիչներուն մեծ մասը քիւրտ են ու ինքնագլուխ. Քըլտանի ալ կը գտնուի մէջը, որ են հին Քաղդէացիներէն առաջ եկած։ Երկիրը շատ բարեբեր է և ամէն տեսակ արմտիք կը բուսցընէ, մանաւանդ ցորեն, գարի, բամբակ և այլն. բայց ամենէն անուանի բերքն է սեխը որ ինչուան երեսուն քառասուն քաշ կը կշռէ, և կը բուսնի Տիգրիս գետոյն քովերը։

41. Տիարպէքիրի նահանգին գլխաւոր քաղաքը։ — Գլխաւոր քաղաքն է Ամիդ կամ Տիարպէքիր որ հին ատեն կ'ըսուէր Տիգրանակերտ, մեծին Տիգրանայ շինած ըլլալուն համար։ Բոլոր քաղաքը ամուր ու լայն պարսպով պատած է, որոյ վրայ երկու կառք քովէքով կրնան քալել, վրան ալ 72 աշտարակ շինուած են, ու պարսպին չորս դին խրամ կայ, բայց հիմա երեսէ թողած։ Ունի ամուր բերդ, որոյ մէջն է փաշային պալատը։ Բնակչաց թիւը շատ էր; բայց 1757ին մարախէն ու երաշտէն ետև

սաստիկ սով մը եղաւ, որով 80,000 հոգի մեռան: Նոյնպէս 1771ին ժանտախտէն երեք ամսուան մէջ 82,000 հոգի մեռան, որով քաղքին բնակչաց թիւն ալ շատ պակսեցաւ, հիմա 40,000 կը դնեն, և մեծ մասը Տաճիկ են: Գլխաւոր վաճառքն է բամբակ, մետաքս, սեկ ու պղնձեղէն ամաններ:

42. Տիարպէքիրի նահանգին ուրիշ գլխաւոր քաղաքները: — Միաֆարղին որ հին ատեն կ'ըսուէր Նփրկերտ կամ Մարտիրոսաց քաղաք, հիմա ըստ մեծի մասին աւերակ է:

Ակլ գիւղաքաղաք, ուր Հայերը պզտի եկեղեցի մը ունին միակտուր քարէ փորուած:

Բալու բերդաքաղաք, ուր որ Ս. Մեսրովպ մեր գրերը հնարեց: Ասոր մօտ է Ճապղջուր ըսուած երկիրը:

Խարբերդ կամ Քարփութ պարսպապատ մեծ քաղաք է Եփրատ գետոյն մօտ, ունի լերան վրայ բերդ մը: — Խարբերդէն օր մը հեռու անուանի է Կապան աւանը Եփրատ գետոյն արևելեան կողմը, որոյ մօտերը բանուկ արծաթի հանք կայ, անոր համար ալ տաճկերէն կ'ըսեն Կապան մատէն: Նոյնպէս Խարբերդին մօտերը կ'իյնայ Արղընի կամ Արղանա գիւղաքաղաքը, որ աղնիւ խաղող ունի, և իր մօտերն ալ առատ հանքեր:

Անուանի են նաև Մեծկերտ կամ Մազկերտ որ հին ատեն կ'ըսուէր Մանձկերտ, Պաղին, Խզու կամ Հզու բերդաքաղաքը:

# ՌՈՒՍԻ ՀԱՅԱՍՏԱՆ

43. Ռուսի Հայաստանին վրայ գիտելիք։ — Ռուսի Հայաստանը կ'իյնայ մեծին Հայոց հիւսիսային արեւելեան կողմը՝ որոյ մեծ մասը Հայոց տէրութեան վերջերը Վրաց ձեռքը անցեր էր, անոր համար օտարազգիք այս մասը բոլորովին Վրաստանի մաս կը համարին։ Կը պարունակէ իր մէջը հին ատենուան Սիւնիք, Արցախ, Ուտի, Փայտակարան նահանգները, Այրարատ եւ Գուգարք նահանգներուն մէկ մասը։ Տաճկէն եւ Պարսկէն նոր առած երկիրները 1840ին երկու նահանգ բաժնուեցան, որ են Երեւան եւ Նախիջեւան. իսկ առջի առածները, Թիֆլիզի, Կէնճէի եւ Գարապաղ նահանգներուն մասն են։

44. Թիֆլիզու նահանգին մէջ սեպուած Հայաստանի գլխաւոր քաղաքներ։ — Ռուսի Հայաստանին մէջ են Ախլցխա որ Վրաց հնչումով կ'ըսուի Ախալցիխէ եւ ըսել է Նոր բերդ, որ կ'իյնայ Կուր գետոյն մօտ։ Այս քաղաքս 1829էն առաջ Տաճկին ձեռքն էր. վաճառականութիւնը բաւական ծաղկած է, եւ բնակչաց թիւն է 12,000։

Ախալքալէք կամ Վրաց հնչումով Ախալ-

քաղաքի, որ ըսել է Նոր քաղաք, որոյ հիւսիսային կողմը կ'իյնայ Փառաւան լիճը, ուսկից կը բխի Կուր գետոյն մէկ ճիւղը։

Դմանիս գիւղաքաղաք, որոյ մօտ է Հաղբատ ու Սանահին գեղերը Սոմխէթ գաւառին մէջ. որոց մէջ անուանի են համանուն հռչակաւոր վանքերը. երկուքին մէջ ալ Թագաւորազուններու և երևելի վարդապետներու գերեզմաններ կան։

Լոռի հին և անուանի գիւղաքաղաք է՝ աւերակ, անոր մօտ է Շամշոյլտէ բերդաւանն նոյնպէս աւերակ։

45. Գանձակ և Գարապաղ նահանգաց մէջ գլխաւոր տեղուանքն։ — Գանձակ կամ Կենճէ բերդաքաղաք որ կ'ըսուի նաև Ելիզաբէթոպոլիս, Կուր գետոյն մօտ. մեծ և անուանի քաղաք է, 20,000 բնակչով. Գարապաղու մէջ է Գանձասար վանքը լեռնակի վրայ շինուած, որ հին ատեն Աղուանից կաթողիկոսներուն աթոռն էր։ — Ասոր մօտ է Շուշի քաղաքը, որ հիմայ Գարապաղու մայրաքաղաքն է, ամուր բերդով. հոս փոխադրուած է Գանձասարայ աթոռը. Գարապաղու երկիրը հին Սիւնեաց, Արցախու և Ուտեաց մասն է. այս նաքինիս մէջն էր Պարտաւ կամ Փերտէ քաղաքը երբեմն մայրաքաղաք Աղուանից, հիմայ աւերակ է։ Ասոր մօտ է Շամքոր աւանը Կուր գետոյն քով, որոյ մէջ 180 ոտնաչափ բարձր աշտարակ մը կար կարմիր աղիւսով շինած, և երկրաշարժէ կործանեցաւ։ — Գա-

բաղադրու Սիւնեաց երկրին մասը հիմայ Ղափան կ'ըսուի . մէջը անուանի են Կիւրիկեաւանը , Տաթեւու մեծ և հին վանքը , որ Ս. Եւստաթէոս անունով առաքելոյ աշակերտի մը անուամբ շինուած , և Սիւնեաց եպիսկոպոսարան եղած էր : — Որոտն գետը և Բաղաբերդ ամուր բերդը , և այլն :

46 . Երևան նահանգին գլխաւոր քաղաքները : — Երևան բերդաքաղաք որն որ Հրազդան կամ Զանկի գետոյն վրայ է , տափակ դաշտի մէջ շինած ու չորս կողմը լեռներով պատած : Բերդը քաղքէն քիչ մը հեռու է : Այս քաղաքը առաջ Պարսից ձեռքն էր , բայց 1827ին Ռուսները տիրեցին . բնակիչներուն թիւն է 20,000 . բամբակի , նաւթի ու աղի մեծ առուտուր ունի : — Երևան քաղքին մօտ է Անանիա առաքելոյն վանքը և Խոր Վիրապը որ հին Արտաշատ քաղքին մօտն է , Խոր Վիրապին վրայ քարաշէն գմբեթաւոր եկեղեցի շինած է Գրիգոր Լուսաւորչի անունով , և տարին երկու երեք անգամ պատարագ կ'ըլլուի այս Խոր Վիրապին մէջ , որոյ հիմակուան խորութիւնն է 5 գրկաչափ , և մէջը խորան շինած է :

Երևանայ սահմանին մէջ կ'իյնան Բջնի գեղը Զանկու վտակին քով որ Գրիգորի Մագիստրոսի կալուածն էր , և երբեմն արքեպիսկոպոսի աթոռ : — Կիւմրի քաղաք որ կ'ըսուի հիմա նաև Աղեքսանդրուպոլիս Ռուսաց Աղեքսանդր կայսեր անունովը :

Այս քաղաքը կ՚ելնայ Ախուրեան գետոյն արևելեան եզերքը, որ օրէ օր ծաղկելով բազմամարդ ու վաճառաշահ քաղաք կ՚ըլլայ: — Սարդարապատ ամրոց. զոր շինեց Հիւսէին Գուլի Երևանայ սարտարը 1819ին, կ՚ելնայ հին Արմաւիր քաղքին աւերակներուն քով, որոյ շինութեանը համար գործածեց նոյն Արմաւիր քաղքին մնացած աւերակներուն քարերը, և անուանեց Սարդարապատ, և պատած է կրկին պարսպով, և հին ատեն կ՚ըսուէր տեղւոյն անունը Քեաւշակեարխ, համանուն գետակին անունովը որ Երասխայ հետ կը միանայ: — Գառնի գեղ որ կ՚ըսուի նաև Թախտ Տրդատայ, հոն Տրդատ Թագաւորը իր քրոջը Խոսրովիդխտոյն համար փառաւոր ու Թագաւորական պալատ մը շինելուն համար, որուն զարմանալի աւերակները կեցած են: Գառնիին մօտ է Սևանայ ծովը որ հին ատեն Գեղամայ ծով կ՚ըսուէր, և մէջն է Սևան կըղզին ուր հռչակաւոր վանք մը կայ ճգնաւորաց:

47. Էջմիածնի վրայ գիտելիք: — Երևան քաղքին արևմտակողմն է Էջմիածինը որուն տաճարները իւչ քիլիսէ կ՚ըսեն, մէջի երեք եկեղեցիներուն համար որ են Շողակաթ Աստուածածնի, Հռիփսիմեայ ու Գայիանեայ, տեղը Վաղարշապատ քաղքին քովն է, չորս կողմը պարսպով պատած է, և է մեծ վանք և Հայոց գլխաւոր կաթողիկոսին աթոռը: Հռիփսիմեայ ու Գայիանեայ վան-

քերը իրենց նահատակութեան տեղը շինուած են. Էջմիածնայ Շողակաթի եկեղեցին ալ Սուրբ Գրիգոր Լուսաւորիչ և Տրդատ Թագաւորն հիմնարկեցին, այն տեղը՝ ուր որ Լուսաւորիչ տեսլեան մէջ տեսաւ զՔրիստոս երկնքէն իջած, անոր համար ըսուեցաւ Էջ-Միածին: Վերջի կաթողիկոսները շատ նորոգութիւն ըրած են այս վանքիս մէջ:

Էջմիածնի մօտ են Օշական գեղը, ուր է սրբոյն Մեսրոպայ գերեզմանը. Կարբի կամ Քարբի աւանը, Եղիվարդ, Փարպի և Ուշի գեղերը, Սաղմոսավանք, և Յովհաննավանք, Լազրեվանք վանքերը, և այլն:

148. Նախջուան նահանգին գլխաւոր տեղուանքը: — Նախջուան պարսպապատ քաղաքը Երասխայ ձախ կամ արևելեան դին, Նոյ նահապետին առաջին բնակութեան տեղը կը կարծուի, և հոս է կ'ըսեն իրեն գերեզմանը: Հին ատեն անուանի ու բազմամարդ քաղաք էր, բայց հիմա մեծ մասը աւերակ է: Բնակիչներն են 12,000: — Նախջուանայ սահմանին մէջ կ'իյնան Ջահուկ աւանը, Խոշկաշէն որ հին ատեն կ'ըսուէր Խոշակունիք. Ապրակունի գեղ որոյ մօտ սուրբ Կարապետի վանք մը կայ. Ապարներ կամ Ապարաներ գեղ, աս ալ վանք մը ունէր Ունիթոռաց: — Աստապատ աւան Երասխայ հիւսիսային կողմը, տուները քարաշէն և ըստ մեծի մասին փառաւոր: Երընջակ որ կ'ըսուի հիմա Ալինձա գալէսի, լե-

րին վրայ շինուած ամուր բերդ է ։ Ջուղա կամ հին Ջուղա, հին ատեն վաճառաշահ քաղաք էր, բայց հիմա մեծ մասը աւերակ է. որոյ մօտ է Շօռոթ կիսաւեր աւանը ։ Ցարաշամբ կամ Շամբ գեղ, որ հին ատեն կ՚ըսուէր Խորամ քաղաք, որոյ մօտ կայ Ստեփանոսի Նախավկայի վանք մը ։ Ագուլիս գեղ, որոյ մօտ է Վանանդ գեղը որ ազնիւ ծիրան ունի ։ — Որդուատ կամ Ուրտուպատ քաղաք Երասխայ քով. հին ատեն գեղ մ՚ էր ։



# ՊԱՐՍԻՑ ՀԱՅԱՍՏԱՆ

49. Պարսից Հայաստանին վրայ գիտե-
լիք: — Պարսից Հայաստանը առաջ աւելի ընդարձակ էր, բայց հիմա մէկ մասը Ռուսաց ձեռքը անցնելուն համար պզտիկցած է, և Ատրպատականին կամ Ատրպէճա-
նին մասն կը համարուի, և է մեծին Հայոց Այրարատ, Վասպուրական, Փայտակա-
րան և Պարսկահայք նահանգներուն մա-
սերը: Երկիրը շատ բարեբեր ու զուարճա-
լի է, և ամէն տեսակ պտուղ կը բուսցընէ:

50. Պարսից Հայաստանին գլխաւոր քաղաքները: — Դավրէժ կամ Թէվրիզ քա-
ղաք, զոր շինեց մեծն Խոսրով Հայոց Թա-
գաւորը. և ինչպէս որ հին ատեն շատ ծաղ-
կած էր, նոյնպէս հիմա ալ ծաղկած է, ա-
մէն տուն պարտէզ ունի, անոր համար ընդարձակ է քաղքին շրջապատն ալ: Մէ-
ջը շատ հնութիւնք ու երևելի շէնքեր կան: Շատ անգամ գետնաշարժէ քաղքին մեծ մասը կործանած է, ինչպէս նաև 1854ին ալ: Բնակչաց թիւը 70–80,000 է:

Արտաշիլ կամ Էրտէպիլ Կասպից ծովին մօտ, որ վաճառականութեամբ շատ ծաղ-
կած է, և մէջը անուանի մզկիթներ ու շէն-

քեր ունի, և փառաւոր շիրիմներ, որոց մէջ ամենէն հռչակաւորն է Պարսից Շահ Սէֆի Թագաւորին և իրեն մէկ քանի յաջորդներուն շիրիմները։

Մարաղա Ուրմեայ ծովակին մօտ ամուր բերդաքաղաք է. բնակիչները 10,000. մէջը անուանի է Հուլաւուն խանին գերեզմանը և իրեն շինած դիտարանը։

Ուրմիա կամ Ուռմի քաղաք Ուրմեայ ծովակին արևմտեան կողմը, որոյ անունով ծովակն ալ այսպէս կոչուած է, որ կ'ըսուի նաև Դաւրիժու ծով։ Ջուրը սաստիկ աղի է, մէջը անբնակ մանր կղզիներ կան։

Սալամաս կամ Սալմաստ քաղաք, որ հին ատեն կ'ըսուէր Սաղամաս, և կ'իյնայ Ուրմեայ ծովակին արևմտեան հիւսիսային կողմը. արմտիք շատ ունի, գինին ալ ազնիւ. հիմայ աւերակ է. իրեն մօտ է Տիղման գիւղաքաղաքը, Խոսրովա գեղը, Թէսուջ աւանը, և ուրիշ շատ գեղեր։

Խոյ քաղաք որ է հին Հեր քաղաքը, Ուրմեայ ծովակին հիւսիսային դին ընդարձակ դաշտի մը մէջ շինած. պարտէզներ շատ ունի, շրջակայ սահմաններն ալ բարերեր են. բնակիչքն 25,000։

Մարանդ կամ Մերենտ քաղաք, 10,000 բնակիչ ունի, Ահեր և Միրատ քաղաքներ, և այլն։ Մակու քաղաքաւանը Արարատայ կողմը, ամուր քարափոր բերդ ունի. ասոր քովերն է Արտազու դաշտը, ուր որ նահատակեցան Ս. Վարդանանք։ Հոն է

նաև Թադէի վանքը, Ս. Թադէոս առաքելոյն և Սանդուխտ կուսին նահատակութեան տեղը. ուր որ հին ատեն Շաւարշան անունով թագաւորական բնակարան մը կար ։

51. Մուղան կամ Մուկան դաշտին վըրայ գիտելիք ։ — Այս ընդարձակ դաշտը որ կը ձգուի Երասխ գետոյն արևելեան կողմէն ինչուան Կասպից ծովը, հիմա կէս մը Պարսից, կէս մ՚ալ Ռուսաց ձեռքն է ։ Երկրին մեծ մասը անբեր է, և օձերով լեցուն. և մէջը բնակութեան համար շէնքեր գեղեր չկան, բայց եթէ Կասպից ծովուն քով. մէկ մասն ալ խոտաւէտ դաշտ է, ուր անթիւ հօտեր կ՚արածին ձմեռ ատեն ։

# ՅԱՒԵԼՈՒԱԾ

## Ա. Փոքր Հայք

52. Փոքր Հայոց երկիրը։ — Փոքր Հայք կ'իյնայ Եփրատ գետոյն արեւմտեան կողմը, մեծին Հայոց սահմանակից։ Երկիրը ընդհանրապէս բարեբեր է, թէպէտ և լեռնոտ, Անտիտաւրոս լերանց թեւերով. գլխաւոր գետերն են Գըզըլ Իրմագ, որ հին ատեն կ'ըսուէր Ալիս, կը թափի Սեւ ծովը։ — Եէշիլ Իրմագ, որ կ'ըսուի նաեւ Թոգաթ սույու, Ամասիա սույու, երկու մեծամեծ վտակներէ միացած, որոց մէկը հին ատեն կ'ըսուէր Լիգոս կամ Գայլ գետ, մէկալը Իրիս։ — Գարա սու, որ հին ատեն կ'ըսուէր Մելաս կամ Մելան, Կեսարիոյ կողմերէն կը բխի, և կը թափի Եփրատայ մէջ։

53. Փոքր Հայոց բաժանմունքը։ — Փոքր Հայք հին ատեն երեք մաս կը բաժնուէր Առաջին, Երկրորդ և Երրորդ Հայք. իսկ հիմա կէս մը Գարամանիա ու կէս մ' ալ Սըվազ նահանգին մէջ կ'իյնայ։ Ինչուան հիմա այս կողմերս շատ Հայ կը գտնուին. և պատճառը այս է որ Բագրատունեաց տէրութեան վերջերը երբոր Հայաստան թըշնամիներէն ոտնակոխ կ'ըլլար՝ շատ Հայեր թողլով իրենց երկիրը եկան փոքր Հայոց

մէջ բնակեցան, որ Յունաց ձեռքն էր։ Ինչպէս ԺԱ. դարուն կէսին Վասպուրական աշխարհին Թագաւորը բոլոր իր ժողովըր-դովը Սեբաստիա քաղքին կողմերը եկաւ բնակեցաւ, իր աշխարհը Յունաց կայսեր թողլով, նոյնպէս Կարսի Թագաւորն ալ, նաև ուրիշ նախարարներ և մեծամեծներ։

54. Սըվազ նահանգին գլխաւոր քաղաք-ները։ — Սըվազ նահանգին երկիրը շատ պտղաբեր է, օդը առողջարար և ցուրտ. ունի ազնիւ մեղր, մետաքս, պղնձէ հանք, և այլն։ Մէջի գլխաւոր քաղաքն է Սըվազ կամ Սեւաստ, որ հին ատեն կ'ըսուէր Սե-բաստիա, Եէշիլ Ըրմագին մօտ, որոյ մէկ վտակը քաղքին մէջէն կ'անցնի։ Քաղաքը անպարիսպ է և ունի երկու բերդ, և շրջա-կայ սահմանները բաւական բարեբեր են և աղէկ արմտիք կը բերեն։ Բնակչաց թիւն է 16,000։ Սըվազի մօտ է Քառասուն մանկունք ըսուած տեղը, ուր հին ատեն Քառասուն մանկանց վանք կար, բայց հիմա աւրուած է։ Անոր մօտ է սևագոյն ու լեղի ջրով պըզ-տիկ լճակը, ուր նահատակեցան 40 մանկունք, որ և ուխտատեղի է։ — Սըվազի մօտ կան Բուզճիկ և Զառա գեղերը և ուրիշ շատ գեղեր, և սուրբ Նշանի վանքը երեք եկեղեցիով։ Այս քաղքիս մէջ ծնաւ 1676ին Մխիթար աբբահայր։

55. Սըվազէն զատ ուրիշ գլխաւոր քա-ղաքները։ — Թոգաթ քաղաք, որ հին ա-տեն կ'ըսուէր Եւդոկիա, Եէշիլ Ըրմագին մօտ,

վաճառականութիւնը բաւական ծաղկած է, և փոքր Ասիոյ վաճառականութեան կեդրոնը կը համարուի: Ունի հին բերդ մը ապառաժի վրայ կէս մը կործանած: Քաղաքին պղնձագործները շատ երևելի են Ասիոյ մէջ. Հայերը եօթը եկեղեցի ունին: Այս քաղաքս 1825ին երկրաշարժէ շատ վնասներ քաշեց. բնակիչներն են 25,000: Թոգաթին մօտ են Կոմանա քաղքին աւերակները:

Զիլէ քաղաք, որոյ բնակիչներուն շատը զօրաւոր սրտոտ ու առևտուրի ետևէ եղող մարդիկ են:

Նիկսար որ հին ատեն կ'ըսուէր Նէոկեսարիա, բերդաքաղաք է, և քովերը ամէն տեսակ պտղոյ առատութիւն ունի, մանաւանդ կեռասի:

Գարահիսար քաղաք, որ ուրիշ Գարահիսար քաղքըներէն որոշելու համար կ'ըսուի սովորաբար Շապին Գարահիսար, և հին ատեն կ'ըսուէր Նիկոպոլիս, ունի պզտի ամուր բերդ մը սև քարաժայռի վրայ շինած: Քաղքին մօտերը առատ պաղլեղի հանք կայ: — Գարահիսարին մօտերն է Ախչար օվա բարեբեր դաշտը, որոյ մէջն են Ախչար և Ածպտեր գեղերը:

56. Եփրատ գետոյն մօտ քաղաքներ: — Եփրատայ և Մեծ Հայոց մօտ քաղաքներն են, Տիվրիկի կամ Տեվրիկի գիւղաքաղաք, ունի բերդ բարձր տեղ շինած, և մօտերը սուրբ Լուսաւորչի վանք մը: Բնակիչքն են

16,000։ Տիվրիկին մօտ է Տէրըճան քաղաք՝ որ բերդ մը ունի քարաժայռ բլրոյ վրայ շինած և մօտը Աշուտի գեղը, ուր Ս. Յակոբ վանքը, որ Հայոց առաջնորդարանն է. Կասմ գեղը, որոյ քովերը կան երկաթի և մագնիսի հանք։

Կիւրիւն քաղաք, լեռներու մէջ, 1000 տունէն աւելի Հայ բնակիչ ունի, որ առուտուր կ'ընեն։ Ասոր մօտ է Ս. Թորոս վանքը Մանձըրըխ գեղին մէջ, ուր է Հայոց առաջնորդարանը։

Արաբկեր գիւղաքաղաք, որոյ շրջակայ սահմանները շատ բարեբեր են, և մօտերը արծըթի հանք կայ։ Արաբկերին մօտ է Ռուկիգեռակ վտակը որ Եփրատայ հետ կը խառնուի, և մէջէն շատ կարմրախայտ ձուկ կ'ելլէ։

Ակն կամ Էկին գիւղաքաղաք, Եփրատ գետոյն քով, որոյ վրայ կամուրջ ձգուած է քաղքին դիմացը։ Այս քաղքիս շրջակայ սահմանները շատ լեռնոտ են, անոր համար ցորեն գարի և ուրիշ արմտիք չեն բուսցըներ։ Բնակիչներուն մեծ մասը Հայ են, բնութեամբ ճարտար և աշխոյժ. կը գտնուին նաև Հայհոռոմներ[1] ու տաճիկ։ —

1 Հայհոռոմք կ'ըսուին անոնք որ ազգաւ հայ են, լեզուովին ու ժամերգութիւննին հայերէն, բայց դաւանանքնին և ծէսերնին յունական։ Վասն զի ԺԱ և ԺԲ դարերուն մէջ Յունաց կայսերքը ստիպելով Վասպուրականէն Սենեքերիմ

Ակնայ գիւղաքաղաքին մօտ է Սուրբ Երեւումն կամ սուրբ Երեւան ըսուած վանքը, որ բարձր տեղ շինուած է, և Արակայ գեղը՝ որոյ բնակիչները բոլոր տաճիկ են. գեղէն դուրս կայ Գրիգոր Նարեկացւոյն գերեզմանը պատով պատած, որ ուխտատեղի է, ու տաճկըներն ալ կը պատուեն, և հին ատեն գերեզմանին վրայ եկեղեցի ու վանք կար Նարեկ անունով, ուսկից գեղն ալ Նարեկայ գեղ ըսուած էր, և հիմա աւրուելով Արակայ գեղ ըսուեր է։

Պիր կամ Պիրիճիկ քաղաք, ունէր ամուր բերդ, հիմա թէ պարիսպները և թէ բերդը բոլոր քայքայած են. հին ատեն անուանի էր նաև վաճառականութեամբ։ Պիր քաղքին մօտ է Հռոմկլա կամ Ռոմգալէ Եփրատ գետոյն քով քարաժայռի վրայ շինած ամուր բերդ։ Մէջը երեք հին քարաշէն եկեղեցիներ կան, որոց մէկն է սուրբ Ներսէս Շնորհալի, ուր կայ իր գերեզմանը, և եկեղեցւոյն քովն է հին կաթողիկոսարանը, հիմա մեծ մասը աւերակ է։

Մալաթիա որ հին ատեն կ՚ըսուէր Մելիտինէ և Երրորդ Հայոց մայրաքաղաքն էր. կռապաշտութեան ատեն ալ, քրիստոնէութեան ատեն ալ անուանի եղած է, բայց շատ պատերազմներէ աւրուած. հի-

Թագաւորին հետ մէկտեղ եկող Հայերը՝ շատերը հոռոմցուցին. և ատոնց մնացորդներն են որ ինչուան հիմա դեռ կը գտնուին այն կողմերը։

մակուան բնակիչներն են 14,000 ։ Քաղաքէն դուրս կայ Գրիգոր Լուսաւորչի վանք մը, ուր կը նստի Մալաթիա քաղքին Հայոց առաջնորդը ։ Երկիրը շատ պտղաբեր է ։

Մալաթիա գաւառին մէջ անուանի են նաև Սամիսատ կամ Սամսատ քաղաքը որ հին ատեն կ՚ըսուէր Սամոսատիա Եփրատայ մօտ ։ Հըսնմանսուր քաղաք կամ Ատիաման Սամսատին մօտ ։ — Պեհեսնի քաղաքաւան , որոյ խաղողը և տախտակը ազնիւ է ։ Բնակիչքը 10,000 . որոնցմէ 300 տուն Հայ ։

57 . Գայսէրիէ գաւառին վրայ գիտելիք ։ — Գայսերիէ կամ Ղայսերի գաւառը հին ատեն կ՚ըսուէր Կապադովկիա և Առաջին Հայք , հիմա Գարամանիայի կամ Գոնիայի նահանգին մասն է ։ Երկիրը բարեբեր , օդը ցուրտ . բնակիչները ճարտար ու յաջող մարդիկ ։ Գլխաւոր քաղաքն է Գայսերիէ՝ որ հին ատեն կ՚ըսուէր Մաժաք և Կեսարիա , և շինուած է դաշտի մը մէջ Էրճիէլ ( Արգէոս ) լերին հիւսիսային կողմը ։ Ունի պըզտի բերդ մը , և քաղքին մէկ կողմը պարըսպով պատած է ։ Շէնքերուն մէջ անուանի է Ուլու ճամի կամ մզկիթը կապարով ծածկած , և մեծ մինարէ մը ունի ։ Կ՚ըսեն թէ այս մզկիթը հին ատեն եկեղեցի էր , և մէջը թաղուած էր սուրբն Բարսեղ ։ Այս քաղքիս բնակիչները որ հիմա 65,000 կը համրուին , տաճկըներէն եւ հոռոմներէն աւելի Հայերն են ։ Անուանի է քաղքիս ապուխտը ու սեկը ։

Կեսարիա քաղքին մօտերը կ՚իյնան Սուրբ Կարապետի վանքը ուր կը նստի Հայոց առաջնորդը ։ — Թալաս գեղ, Կարմիր կամ Կերմիր գեղ, Նիրզէ կամ Նիզիէ գեղ որ հին ատեն կ՚ըսուէր Նիսա, ուսկից էր Գրիգոր Նիւսացին. Միւսասօն գեղ որ հին ատեն կ՚ըսուէր Նազիանզ քաղաք կամ Դիոկեսարիա ուսկից էր Գրիգոր Աստուածաբան ։ — Տէրէվանք կամ Տէրէվէնք գեղ, որոյ մօտ պզտի վանք մը կայ սրբոյն Սարգսի անունով, որոյ եկեղեցին ու քովի խուցերը ամբողջ քարի մէջ փորած է աբեղայի մը ձեռքով ։

## Բ. Միջագետք.

58. Հայոց Միջագետաց գլխաւոր քաղաքները ։ — Ուրֆա կամ Ուրհա քաղաք որ 40,000 բնակիչ ունի, և հին ատեն կ՚ըսուէր Եդեսիա, բերդաւոր անուանի քաղաք է, չորս կողմը պարսպով պատած, ու պարըսպին չորս դին խրամ բացած ։ Բերդը ապառաժի վրայ շինած է, և մէջը կայ քարաշէն փառաւոր մզկիթ մը, որ հին ատեն սրբոյն Սարգսի եկեղեցի էր, որոյ երկու քարաշէն բարձր զանգակատունները կան մինչև հիմա ։ Քաղքին մէջ կան երևելի վաճառանոցներ, բաղնիքներ ու մզկիթներ՝ որոցմէ շատը հին ատեն եկեղեցի էին ։ Ասոնց մէջ անուանի է Քառասուն մանկանց

զմրեթաւոր ու զարդարուն եկեղեցին բոլոր քարէ շինած, որ հիմա մզկիթ է։ Հայերը մէկ եկեղեցի միայն ունին որ է սուրբ Աստուածածնի եկեղեցին, Աբգար Թագաւորէն շինուած։ Ուրհայի մօտ կայ Հայոց սուրբ Յակոբ ըսուած քարաշէն ու փառաւոր վանքը, ուր բնակած է կ'ըսեն սուրբն Յակոբ Մծբնայ հայրապետը. և սուրբ Սարգիս վանքը, որոյ եկեղեցւոյն մէջ քարէ մեծ տապան մը կայ ուր թաղուած է կ'ըսեն սուրբն Եփրեմ ասորի։ Սրբոյն Սարգսի վանքին մօտ կայ Աբգարու անուամբ եկեղեցի մը բոլոր ապառաժ քարի մէջ փորուած շատ աշխատութեամբ ու ծախքով, որոյ քովերը այլևայլ աւերակներ կան, որ Աբգար Թագաւորին ամարանոցներն էին կ'ըսեն։ Կայ նաև մութ քարանձաւ մը ուր երկու գերեզման կան, մէկը Աբգար Թագաւորին է կ'ըսեն, մէկալը իր Աբդիու իշխանին։

Ռաքքա կամ Ռակկա որ հին ատեն երևելի քաղաք էր, բայց հիմա մեծ մասը աւերակ է։ Ասոր հիւսիսային կողմը կ'իյնան Խառան քաղքին աւերակները։

Մերտին ամուր բերդաքաղաք է, բարձր ապառաժ լերին վրայ շինած ու պարսպով պատած, ունի շատ մզկիթներ և բաղնիքներ. Հռոմէական Հայերն ալ եպիսկոպոսանիստ եկեղեցի մը ունին։ Մէրտինին շրջակայ սահմանը բարեբեր է, և հարաւային արևելեան կողմը կ'իյնայ Մծբին կամ

Նիսիպին քաղաքին աւերակները, ուր կան ամբողջ մնացած սրբոյն Յակոբայ Մծբնայ եկեղեցին և ուրիշ մէկ քանի շէնքեր ։

Ճեզիրէ բերդաքաղաք, կ'իյնայ Տիգրիս կամ Շատ գետոյն արեւմտեան կողմը, որ երբոր բարձրանայ ամառուան մէջ, քաղաքին չորս դին կղզւոյ պէս կը պատէ, անոր համար Ճէզիրէ ըսուած է, որ արաբացւոց լեզուով կղզի ըսել է, հայերէն ալ Գզիրա ըսուեր է ։ Այս քաղաքին իշխանութիւնը իր շրջակայ սահմանովը մէկտեղ քիւրտերուն ձեռքն է, և ասոր անունովը հիմա բոլոր Միջագետք էլ Ճեզիրէ կ'ըսուի ։ — Այս կողմերս, և Ամէտիէ քաղաքին ու Սինճար քաղաքին և լերանց կողմերը կը բնակին շատ Եզիտի աղանդաւորք, որոնք կէս հեթանոս կէս մահմէտական են, քրիստոնէական աւանդութիւններ ալ ունին ։

## Գ. Կիլիկիա.

59. Կիլիկիոյ վրայ գիտելիք ։ — Կիլիկիան որ հիմա կ'ըսուի Ատանա, կ'իյնայ Միջերկրական ծովուն քով Գարամանիային հարաւային դին ։ Օդը ամառուան մէջ շատ տաք ու նեղացուցիչ, և գլխաւոր քաղաքները գրեթէ բոլոր ցած ու տաք տեղ շինուած ըլլալուն համար՝ ամառը մէջի բնակիչները բոլոր գեղերու մէջ կը ցրուին ։ Երկիրը լեռնոտ, բայց շատ բարեբեր է. մա-

Նաւանգ բամբակը խիստ առատ է ։ Գլխաւոր գետերն են Ճիհան և Սէյհուն . կան ուրիշ մանր գետեր ալ ։ Բնակիչներուն մեծ մասը տաճիկ , քիւրտ և Հայ են ։

60 . Կիլիկիոյ գլխաւոր քաղաքները ։ — Ադանա բերդաքաղաք Սէյհունի քով որ հին ատեն կ'ըսուէր Սարոս , որոյ վրայ քաղքին դիմացը քարաշէն մեծ կամուրջ շինած է ։ Վաճառականութիւնը բանուկ է . և ամառը օդը գէշ և վնասակար , անոր համար բնակիչները կը ցրուին գեղերու և ամարանոցներու մէջ ։ Բնակչաց թիւն է 20,000 ։

Սիս բերդաքաղաք , որոյ չորս կողմը ամուր պարսպով պատած է , բայց տեղ տեղ փլփլկած ։ Քաղքին հարաւային կողմն է կաթողիկոսարանը , ուր Հայոց առանձին կաթողիկոս կընստի , որ կ'իշխէ Կիլիկիոյ և փոքր Հայոց մէջ եղած հայերուն վրայ ։ Հին շէնքերէն մնացած են հիմա ժամատունը , բանտը , սրբոյն Սոփիայ եկեղեցին , որոյ մօտ է Ռուբինեանց թագաւորական պալատը կամ դարպասը . բայց ամէնքն ալ երեսէ թողած ու կէս մը աւերակ ։ Սսոյ հիւսիսային կողմը կ'իյնայ Պէրայէրբ բերդը լեռներու վրայ շինած , որ հին ատեն կ'ըսուէր Բարձր բիրդ :

Անարզաբա բերդաքաղաք , Ճիհան կամ հին Պիւռամոս գետոյն քով շինած ու կըրկին պարսպով պատած . որ հիմա բոլորովին անբնակ է , և մէջը կ'երևին շատ եկեղեցիներ , տուներ , պալատներ , և այլն ։

Մսիս քաղաք որ հին ատեն կ'ըսուէր Մոպսուեստիա կամ Մամեստիա. մէջէն կ'անցնի Ճիհան գետը, և ունի բերդ մը:

Թարսուս կամ Թէրսիս քաղաք որ հին ատեն կ'ըսուէր Տարսոն, շինուած է Միջերկրական ծովուն մօտ Կիւդնոս կամ Գարասու գետոյն Միջերկրական ծովը թափելու տեղւոյն մօտ: Հին Տարսոն քաղքին ընդարձակ աւերակները ասոր քովը կ'իյնան, որ առաջ շատ ծաղկած էր վաճառականութեամբ: Հիմա նաւահանգիստն է Մէրսին գեղը, քաղքէն հինգ ժամ հեռու. բնակչաց թիւն է 3,000: Տարսոնի մօտ է Նէմրուտ-դաղէ, որ է Լամբրոն բերդը:

Այաս կամ Փայաս քաղաք Միջերկրական ծոցոյն քով. ունի ծովեզերեայ ամուր բերդ և նաւահանգիստ: Պէյլան կամ Պէյլէն՝ լերանց մէջ քաղաքաւան մըն է, իբր 1000 տունով, կէսը հայ:

61. Մարաշու գաւառին վրայ գիտելիք:
— Մարաշու գաւառը կ'իյնայ Ատանային ու Գարամանիային արևելեան կողմը Եփրատ գետոյն քով, որ հին ատեն կ'ըսուէր Կոմագենէ կամ Կոմագ, ետքէն ըսուեցաւ Եփրատացւոց աշխարհ, և հիմա կ'ըսուի Մարաշ համանուն գլխաւոր քաղքին անունովը: Սակայն հիմակուան Մարաշու նահանգը հին Եփրատացւոց երկրէն շատ աւելի ընդարձակ է, և կը հասնի ինչուան Մալաթիա կամ Մելիտինէ, հին ատենուան Երրորդ Հայոց մէկ մասը մէջը բովանդակե-

լով Մելիտինէ ու Սամոստիա քաղաքնե֊րուն հետ մէկտեղ։ Երկիրը բարեբեր է, գլխաւոր բերքն է բրինձ, ցորեն, բամբակ, և այլն։ Ունի երկրթի հանք Մարաշ քաղքին ու Զէյթունի սահմանները։

62. Մարաշու երկրին գլխաւոր քաղաք֊ները։ — Գլխաւոր քաղաքն է Մարաշ որ հին ատեն Գերմանիկ կ՚ըսուէր, և ունի բերդ բարձր բլրոյ վրայ շինած։ Մէջը շատ բաղնիքներ, մզկիթներ կան. բնակիչներն են 20,000, որոնցմէ 600 տուն Հայ. գըլ֊խաւոր արուեստնին է ներկարարութիւն ու ոստայնանկութիւն։

Ալպերափ կամ Ալերափ բերդաքաղաք, ո֊րոյ բնակիչներն են 40-50,000. որոնցմէ 10,000ի չափ Հայք են։ Օդը առողջարար, բայց ստէպ երկրաշարժներ կ՚ըլլան։

Զէյթունի կամ Զէյթուն քաղաք, բնակիչ֊ները բոլոր Հայ են կորիճ և ինքնագլուխ մարդիկ, 1000 տունէն աւելի. քաղքին եր֊կու կողմէն ջուր կ՚անցնի։ Մէջը եօթն ե֊կեղեցի կայ և քովը Աստուածածնայ վան֊քը, ուր կը նստի եպիսկոպոսը. քովերն ալ երկրթի հանք, որ տեղացիք կը բանին։

Ուլնի գեղ որ Զէյթունէն վեց ժամ հե֊ռու է, ասոր մէջն է սրբոյն Ստեփանոսի ուլնեցւոյն վանքը, և մատուռ մը որոյ մէջն է իր գերեզմանը, և մեծ ուխտատեղի է։ Ուլնիի մօտ է Ֆրնուզ աւանը, 600 տուն Հայ բնակչօք. ունի վանք մը Ս. Կարապետ անունով, ուր եպիսկոպոս կը նստի։

# ՑԱՆԿ

---

## ՀԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## ՅՕԴ. Ա. Հայաստանի լեռները.



## ՅՕԴ. Բ. Գետերու վրայ.

30 Տիգրիսին յորդութիւնը ։
31 Երասխ ։ — Երասխ գետոյն անունը և աղբիւրը ։
32 Երասխ գետոյն ընթացքն ու կամուրջներն ։
33 Երասխայ վրայ շինուած քաղաքները ։
34 Ճորոխ ։ — Ճորոխ գետոյն անուան ծագումը ։
35 Ճորոխ գետոյն աղբիւրը ։

### Դրախտին չորս գետերէն զատ Հայաստանի մէկալ գետերը ։

36 Կուր գետոյն վրայ գիտելիք ։
37 Հայաստանի մէջ յիշուած ուրիշ մանր գետերը ։

### ՅՕԴ. Գ. Լճերու կամ Ծովակներու վրայ ։

38 Լճերու վրայ ընդհանուր գիտելիք ։
39 Բզնունեաց ծովին գիրքը և անուանը ծագումը ։
40 Գեղամայ ծով ։
41 Կապուտան ծով ։
42 Հայաստանի մէջ յիշուած ուրիշ ծովերը ։
43 Հայաստանի մէջ յիշուած երևելի ճահիճները ։

### ՅՕԴ. Դ. Հայաստանի բերքերուն վրայ ։

44 Հայաստանի բարեբերութիւնը ։
45 Հայաստանի մէջ յիշուած բերքեր ։
46 Հայաստանի մէջ յիշուած ընտանի կենդանիները ։
47 Հայաստանի մէջ յիշուած գազաններն ու թռչունները ։

## Գլ. Ե. Բարձր Հայք.

62 Բարձր Հայոց դիրքն ու սահմանը։
63 Բարձր Հայոց լեռներն ու գետերը և բերքերը։
64 Բարձր Հայոց գաւառները։
65 Դարանաղի գաւառին վրայ գիտելիք։
66 Սեպուհ լերան վրայ գիտելիք։
67 Դարանաղեաց գաւառին գլխաւոր տեղերը։
68 Անի բերդին վրայ գիտելիք։
69 Եկեղեաց գաւառին վրայ գիտելիք։
70 } Եկեղեաց գաւառին մէջ յիշուած երևելի
71 } տեղերը։
72 Մանանաղի գաւառին դիրքը և նշանաւոր տեղուանքը։
73 Դերջան գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։
74 Սպեր գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։
75 Կարնոյ գաւառին վրայ գիտելիք։
76 Կարնոյ գաւառին մայրաքաղաքը։
77 Կարնոյ գաւառին ուրիշ երևելի տեղերը։

## Գլ. Զ. Չորրորդ Հայք.

78 Չորրորդ Հայոց վրայ գիտելիք։
79 Չորրորդ Հայոց գաւառներն։
80 Խորձեան գաւառին վրայ գիտելիք։
81 Հաշտեանք գաւառին վրայ գիտելիք։
82 Պաղնատուն գաւառին գլխաւոր տեղերը։
83 Բալահովիտ գաւառին վրայ գիտելիք։
84 Ծոփաց գաւառին վրայ գիտելիք։
85 Ծոփք Շահունեաց գաւառին մայրաքաղաքը։

48 Հայաստանի մէջ յիշուած հանքերը ։
49 Հայաստանի մէջ գտնուած գոհարեղէն քարերը ։

## ԳԼ. Գ. Հայաստանի բազմամարդութեան և սակաւամարդութեան վրայ.

50 Հայաստանի բազմամարդութեան վրայ գիտելիք ։
51 Հայաստան եկած գաղթականները ։
52 Այս գաղթականներէն զատ Հայաստանի մէջ բնակող օտար ազգերը ։
53 Հայաստանի բազմամարդ քաղաքները ։

## ՅՕԴ. Ա. Հայաստանի բնակչաց քիչնալուն պատճառները.

54 Հայաստանէն ելած գաղթականութիւնները ։
55 Յունաց երկիրը գնացած գաղթականները ։
56 Անի քաղքէն ելած գաղթականները ։
57 Ռուբինեանց տէրութիւնը վերցուելէն ետև Հայաստանէն ելած գաղթականները ։
58 Հայաստանի բնակչաց քիչնալուն գլխաւոր պատճառները ։

## ԳԼ. Դ. Հայաստանի աշխարհագրական բաժանումը.

59 Արամ նահապետին և Մօրիկ կայսեր ըրած բաժանմունքը ։
60 Մեծ Հայոց այլևայլ նահանգները ։
61 Մեր մատենագրաց Հայաստանի այլևայլ մասերուն սովորական անունէն զատ տրուած անունները ։

## Գլ. Ե. Բարձր Հայք.



## Գլ. Զ. Չորրորդ Հայք.

86 Ծոփք Շահունեաց գաւառին մէջ յիշուած ուրիշ քաղաքները ։
87 Հանձիթ գաւառին մէջ յիշուած տեղերը ։

## Գլ. Է. Աղձնիք.

88 Աղձնիք նահանգին վրայ աշխարհագրական գիտելիք ։
89 Աղձնեաց վրայ պատմական գիտելիք ։
90 Աղձնեաց գաւառներն ։
91 Արզն և Նփրկերտ գաւառներուն վրայ գիտելիք ։
92 Սասուն գաւառին վրայ գիտելիք ։
93 Աղձնիք նահանգին մէջ յիշուած ուրիշ տեղերը ։

## Գլ. Ը. Տուրուբերան.

94 Տուրուբերան նահանգին վրայ գիտելիք ։
95 Տուրուբերան նահանգը քանի գաւառ կը բաժնուի ։
96 Խոյթ գաւառին անուանը վրայ գիտելիք ։
97 Տարօն գաւառին անուանը ծագումը ։
98 Տարօնոյ վրայ պատմական գիտելիք ։
99 Տարօնոյ երկրին բարեբերութիւնը ։
100 Աշտիշատ քաղաքին վրայ գիտելիք ։
101 Տարօնոյ գլխաւոր տեղերը ։
102 Գլակայ վանքին վրայ գիտելիք ։
103 Գլակայ վանքին կալուածները ։
104 Արջուց երկրին վրայ գիտելիք ։
105 Աշմունիք գաւառին դիրքը և մէջի գլխաւոր քաղաքները ։
106 Հարք գաւառին անուանը ծագումը ։
107 Հարք գաւառին գլխաւոր քաղաքները ։
108 Բզնունիք գաւառին անուանը ծագումը ։

## Գլ. Թ. Մոկք.



## Գլ. Ժ. Կորճայք.



## Գլ. ԺԱ. Պարսկահայք.

## Գլ. ԺԲ. Վասպուրական.



## Գլ. ԺԳ. Սիւնիք կամ Սիսական.

151 Երնջակ գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը ։

152 Վայոց ձոր գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը ։

153 Վայոց ձոր գաւառին երևելի վանքերը ։

154 Գեղարքունի գաւառին գլխաւոր տեղուանքը ։

155 Գեղարքունի գաւառին երևելի վանքերը ։

159 Սոտք և Աղահեճք գաւառներուն մէջ յիշուած տեղերը ։

157 Ծղուկք գաւառին վրայ գիտելիք ։

158 Ծղուկք գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը ։

158 Տաթևու վանքին վրայ գիտելիք ։

160 Բաղք գաւառին վրայ գիտելիք ։

161 Բաղք գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը ։

162 Ձորք գաւառին վրայ գիտելիք ։

163 Արևիք գաւառին մէջ յիշուած տեղերը ։

164 Կուսական գաւառին վրայ գիտելիք ։

165 Սիւնեաց աշխարհին մէջ յիշուած ուրիշ տեղերը ։

## ԳԼ. ԺԴ. Արցախ.

166 Արցախ նահանգին վրայ գիտելիք ։

167 Արցախու գաւառները ։

168 Միւս Հաբանդին մէջ յիշուած տեղերը ։

169 Վայկունիք գաւառին վրայ գիտելիք ։

170 Արցախու մէջ յիշուած ուրիշ տեղերը ։

## ԳԼ. ԺԵ. Փայտակարան.

171 Փայտակարան նահանգին վրայ գիտելիք ։

172 Փայտակարան նահանգին գաւառները ։

173 Փայտակարանի մէջ յիշուած քաղաքները ։

48 Հայաստանի մէջ յիշուած հանքերը ։
49 Հայաստանի մէջ գտնուած գոհարեղէն քա-րերը ։

## ԳԼ. Գ. Հայաստանի բազմամարդութեանց և սակաւամարդութեանց վրայ.

50 Հայաստանի բազմամարդութեան վրայ դի-տելիք։
51 Հայաստան եկած գաղթականները ։
52 Այս գաղթականներէն զատ Հայաստանի մէջ բնակող օտար ազգերը ։
53 Հայաստանի բազմամարդ քաղաքները ։

## ՅՕԴ. Ա. Հայաստանի բնակչաց քիչնալուն պատճառները.

54 Հայաստանէն ելած գաղթականութիւնները։
55 Ցունաց երկիրը գնացած գաղթականները ։
56 Անի քաղքէն ելած գաղթականները ։
57 Ռուբինեանց տէրութիւնը վերցուելէն ետև Հայաստանէն ելած գաղթականները ։
58 Հայաստանի բնակչաց քիչնալուն գլխաւոր պատճառները ։

## ԳԼ. Դ. Հայաստանի աշխարհագրական բաժանմունքը.

59 Արամ նահապետին և Մօրիկ կայսեր ըրած բաժանմունքը ։
60 Մեծ Հայոց այլևայլ նահանգները ։
61 Մեր մատենագրաց Հայաստանի այլևայլ մա-սերուն սովորական անունէն զատ տրուած անունները ։

## Գլ. Ե. Բարձր Հայք.



## Գլ. Զ. Չորրորդ Հայք.

86 Ծոփք Շահունեաց գաւառին մէջ յիշուած ուրիշ քաղաքները ։
87 Հանձիթ գաւառին մէջ յիշուած տեղերը ։

## Գլ. Է. Աղձնիք.

88 Աղձնիք նահանգին վրայ աշխարհագրական գիտելիք ։
89 Աղձնեաց վրայ պատմական գիտելիք ։
90 Աղձնեաց գաւառներն ։
91 Արզն և Նփրկերտ գաւառներուն վրայ գիտելիք ։
92 Սասուն գաւառին վրայ գիտելիք ։
93 Աղձնիք նահանգին մէջ յիշուած ուրիշ տեղերը ։

## Գլ. Ը. Տուրուբերան.

94 Տուրուբերան նահանգին վրայ գիտելիք ։
95 Տուրուբերան նահանգը քանի՛ գաւառ կը բաժնուի ։
96 Խոյթ գաւառին անուանը վրայ գիտելիք ։
97 Տարօն գաւառին անուանը ծագումը ։
98 Տարօնոյ վրայ պատմական գիտելիք ։
99 Տարօնոյ երկրին բարեբերութիւնը ։
100 Աշտիշատ քաղաքին վրայ գիտելիք ։
101 Տարօնոյ գլխաւոր տեղերը ։
102 Գլակայ վանքին վրայ գիտելիք ։
103 Գլակայ վանքին կալուածները ։
104 Արջուց երկրին վրայ գիտելիք ։
105 Աշմունիք գաւառին դիրքը և մէջի գլխաւոր քաղաքները ։
106 Հարք գաւառին անուանը ծագումը ։
107 Հարք գաւառին գլխաւոր քաղաքները ։
108 Բզնունիք գաւառին անուանը ծագումը ։

109 Բզնունեաց գլխաւոր քաղաքները :
110 Աղիովիտ գաւառին վրայ գիտելիք :
111 Աղիովիտ գաւառին գլխաւոր քաղաքները :
112 Ապահունեաց գաւառին վրայ գիտելիք :
113 Խորխոռունիք գաւառին վրայ գիտելիք :

## Գլ. Թ. Մոկք.

114 Մոկք նահանգին վրայ գիտելիք :
115 Մոկաց նահանգին գաւառները :
116 Մոկք նահանգին մէջ յիշուած տեղերը :

## Գլ. Ժ. Կորճայք.

117 Կորճայք նահանգին վրայ գիտելիք :
118 Կորճայք նահանգը քանի գաւառ կը բաժնուի :
119 Կորդուք գաւառին վրայ գիտելիք :
120 Արտաքին պատմչաց Կորդուաց երկրին ու բնակիչներուն համար ըսածը :
121 Կորդրիք գաւառին վրայ գիտելիք :
122 Կորճայք նահանգին մէջ յիշուած ուրիշ գլխաւոր քաղաքները :

## Գլ. ԺԱ. Պարսկահայք.

123 Պարսկահայք նահանգին վրայ գիտելիք :
124 Պարսկահայք նահանգին գաւառները :
125 Զարեւանդ և Հեր գաւառաց վրայ գիտելիք :

## Գլ. ԺԲ. Վասպուրական.

126 Վասպուրական նահանգին վրայ պատմական գիտելիք ։
127 Վասպուրական նահանգին գաւառներն ։
128 Ռշտունիք գաւառին վրայ գիտելիք ։
129 Ռշտունեաց՝ գլխաւոր քաղաքները ։
130 Աղթամար կղզւոյն վրայ գիտելիք ։
131 Վան քաղաքին վրայ գիտելիք ։
132 Տոսպ գաւառին ուրիշ քաղաքները ։
133 Վարագ լերին վրայ գիտելիք ։
134 Առբերանի գաւառին վրայ գիտելիք ։
135 Առնոյոտն գաւառին վրայ գիտելիք ։
136 Անձեւացիք գաւառին վրայ գիտելիք ։
137 Անձեւացեաց երկրին մէջ յիշուած տեղերը ։
138 Երուանդունիք գաւառին մէջ յիշուած տեղերը ։
139 Արտազ գաւառին վրայ գիտելիք ։
140 Աղբակ գաւառին գլխաւոր քաղաքները ։
141 Թոռնաւան և Ճուաշռոտ գաւառներուն մէջ յիշուած տեղերը ։
142 Գողթն գաւառին վրայ գիտելիք ։
143 Գողթն գաւառին մէջ յիշուած տեղերը ։
144 Նախճաւան գաւառին վրայ գիտելիք ։
145 Հացիւնեաց խաչին վրայ գիտելիք ։
146 Մարանդ գաւառին մէջ յիշուած տեղերը ։

## Գլ. ԺԳ. Սիւնիք կամ Սիսական.

147 Սիւնեաց նահանգին անուանը ծագումը ։
148 Սիւնեաց աշխարհին վրայ պատմական գիտելիք ։
149 Սիւնեաց մէջ քրիստոնէութեան մտնելը ։
150 Սիւնեաց նահանգին գաւառներն ։

151 Երնջակ գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը։

152 Վայոց ձոր գաւառին անունը և գլխաւոր տեղուանքը։

153 Վայոց ձոր գաւառին երևելի վանքերը։

154 Գեղարքունի գաւառին գլխաւոր տեղուանքը։

155 Գեղարքունի գաւառին երևելի վանքերը։

159 Սոտք և Աղահեճք գաւառներուն մէջ յիշուած տեղերը։

157 Ծղուկք գաւառին վրայ գիտելիք։

158 Ծղուկք գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։

158 Տաթեւու վանքին վրայ գիտելիք։

160 Բաղք գաւառին վրայ գիտելիք։

161 Բաղք գաւառին մէջ յիշուած երևելի տեղերը։

162 Ձորք գաւառին վրայ գիտելիք։

163 Արևիք գաւառին մէջ յիշուած տեղերը։

164 Կուսական գաւառին վրայ գիտելիք։

165 Սիւնեաց աշխարհին մէջ յիշուած ուրիշ տեղերը։

## ԳԼ. ԺԴ. Արցախ.

166 Արցախ նահանգին վրայ գիտելիք։

167 Արցախու գաւառները։

168 Միւս Հաբանդին մէջ յիշուած տեղերը։

169 Վայկունիք գաւառին վրայ գիտելիք։

170 Արցախու մէջ յիշուած ուրիշ տեղերը։

## ԳԼ. ԺԵ. Փայտակարան.

171 Փայտակարան նահանգին վրայ գիտելիք։

172 Փայտակարան նահանգին գաւառները։

173 Փայտակարանի մէջ յիշուած քաղաքները։

## Գլ. ԺԶ. Ուտի.

174 Ուտի նահանգին վրայ գիտելիք։
175 Ուտի նահանգին գաւառները։
176 Գարգման գաւառին վրայ գիտելիք։
177 Շակաշէն գաւառին վրայ գիտելիք։
178 Շակաշէն գաւառին մէջ յիշուած տեղերը։
179 Ուտի առանձնակին երևելի տեղերը։
180 Ուտի նահանգին մէջ յիշուած ուրիշ տե-ղերը։

## Գլ. ԺԷ. Գուգարք.

181 Գուգարք նահանգին վրայ գիտելիք։
182 Գուգարք նահանգին բաժանումը։
183 Ձորոփոր գաւառին մէջ յիշուած տեղերը։
184 Հաղբատ և Սանահնի վանքերուն վրայ գի-տելիք։
185 Տաշիր գաւառին մէջ յիշուած տեղերը։
186 Արտահան և Ջաւախք գաւառներուն վրայ գիտելիք։
187 Գուգարք նահանգին մէջ յիշուած ուրիշ տեղերը։

## Գլ. ԺԸ. Տայք.

188 Տայք նահանգին վրայ գիտելիք։
189 Տայք նահանգին գաւառներն։
190 Տայք նահանգին մէջ յիշուած տեղերը։

## Գլ. ԺԹ. Այրարատ.

191 Այրարատ նահանգին անունը։
192 Այրարատայ բարեբերութիւնը,
193 Այրարատ նահանգին վրայ պատմական գիտելիք։
194 Այրարատայ նահանգը քանի՞ գաւառ կը բաժնուի։
195 Բասեան գաւառին վրայ գիտելիք։
196 Բասեան գաւառին մէջ յիշուած տեղերը։
197 Գաբեղեանք և Աբեղեանք գաւառները։
198 Արշարունիք գաւառը։
199 Արշարունեաց մէջ յիշուած երևելի քաղաքները։
200 Արշարունեաց մէջ յիշուած երևելի վանքերը։
201 Բագրևանդ գաւառ։
202 Բագրևանդ գաւառին երևելի քաղաքները։
203 Ծաղկոտն գաւառ։
204 Շիրակ գաւառին վրայ գիտելիք։
205 Շիրակ գաւառին երևելի քաղաքները։
206 Շիրակայ երևելի վանքերը։
207 Վանանդ գաւառին վրայ գիտելիք։
208 Վանանդ գաւառին երևելի քաղաքները։
209 Արագածոտն գաւառը և մէջի երևելի քաղաքներուն վրայ գիտելիք։
210 Արագածոտն գաւառին երևելի վանքերը։
211 Ճակատք գաւառին մէջ յիշուած տեղերը։
212 Մասեացոտն գաւառ։
213 Կոգովիտ կամ Կոգայովիտ գաւառ։
214 Կոգովիտ գաւառին երևելի տեղերը։
215 Նիգ գաւառին մէջ յիշուած տեղերը։
216 Կոտայք գաւառին մէջ յիշուած տեղերը։
217 Վարաժնունիք գաւառին վրայ գիտելիք։

218 Դըւնայ գաւառին մէջ յիշուած տեղերը ։

219 } Այրարատ նահանգին մէջ յիշուած ուրիշ
221 } քաղաքները ։ — Արտաշատ, Արմաւիր, Երազմոյն, Վաղարշապատ, և այլն ։

222 Հռիփսիմեանց և Գայիանեանց վկայարաններուն վրայ գիտելիք ։

## ԳԼ. Ի. Փոքր Հայք.

223 }
224 } Փոքր Հայոց վրայ գիտելիք ։

225 Փոքր Հայոց առաջին տիրապետողը, և անոր վրայ ըրած բաժանմունքը ։

226 Փոքր Հայոց գլխաւոր լեռները ։

227 Փոքր Հայոց գլխաւոր գետերը ։

## ԱՌԱՋԻՆ ՀԱՅՔ

228 Առաջին Հայոց սահմանը ։

229 Առաջին Հայոց գլխաւոր քաղաքները ։

230 Առաջին Հայոց կամ Կապադովկիայի մէջ յիշուած ուրիշ քաղաքները ։

## ԵՐԿՐՈՐԴ ՀԱՅՔ

231 Երկրորդ Հայոց սահմանը և գլխաւոր քաղաքը ։

232 Երկրորդ Հայոց ուրիշ գլխաւոր քաղաքները ։

## ԵՐՐՈՐԴ ՀԱՅՔ

233 Երրորդ Հայոց սահմանը և գլխաւոր քաղաքը ։

234 Երրորդ Հայոց մայրաքաղաքը և ուրիշ գլխաւոր քաղաքները ։

235 Ջահան գաւառին վրայ գիտելիք ։

## Գլ. ԻԱ. Միջագետք Հայոց.



## Գլ. ԻԲ. Ատրպատական.



## Գլ. ԻԳ. Վիրք կամ Վերիա.



## Գլ. ԻԴ. Աղուանք.

## Աշխարհագրական գիտելիք .

261 Աղուանից երկրին սահմանը ։
262 Աղուանից գլխաւոր քաղաքները ։

## Գլ . ԻԵ . Խաղտիք .

263 Խաղտիք և Եգերք աշխարհաց սահմանը ։
264 Եգերացւոց ազգին սկզբնաւորութիւնը ։
265 Խաղտեաց վրայ պատմական գիտելիք ։
266 Խաղտեաց երևելի գետերը ։
267 Խաղտեաց գլխաւոր քաղաքները ։
268 Կողքիսին գլխաւոր քաղաքները ։

## Գլ . ԻԶ . Պոնտոս .

269 Պոնտոսի սահմանը ։
270 Պոնտոսի տէրութեան վրայ պատմական գի-
տելիք ։
271 } Պոնտոսի տէրութեան գլխաւոր քաղաք-
272 } ները ։

## Գլ . ԻԷ . Եփրատացիք .

273 Եփրատացւոց սահմանը ։
274 Եփրատացւոց երկրին գլխաւոր քաղաքները ։
275 Հռոմկլայի վրայ գիտելիք ։

## Դլ . ԻԸ . Կիլիկիա .

276 Կիլիկիայի վրայ պատմական գիտելիք ։
277 Կիլիկեցւոց թագաւորութեան սկզբնաւո-
րութիւնը ։
278 Կիլիկիոյ թագաւորութեան տևողութիւնը ։

279 Կիլիկիոյ սահմանը ։

280 Կիլիկիոյ բարեբերութիւնը և գլխաւոր գետերը ։

281 Կիլիկիոյ գլխաւոր քաղաքները ։ — Տարսոն, Անարզաբա, Սիս, Ատանա, և այլն ։

282 Կիլիկիոյ երևելի բերդերը ։

283 Կիլիկիոյ երևելի վանքերը ։

284 Սևաւ լերին երևելի վանքերը ։

285 Կիլիկեցւոց ատեն հայերուն օտար երկիրներու վրայ տիրապետութիւնը ։

---

# ՆՈՐ ՀԱՅԱՍՏԱՆ

---

## Պատմական գիտելիք.

1 Հայոց հին և նոր քաղաքական վիճակը։
2 Հայոց հիմակուան գիտութեան վիճակը և վաճառականութիւնը։
3 Հայոց կրօնքը։

## Աշխարհագրական գիտելիք.

4 Հայաստանի սահմանը և տարածութիւնը։
5 Հայոց ազգին և Հայաստանի բնակչաց թիւը։
6 Հիմա Հայաստան անուանած երկիրը։
7 Հայաստանի գլխաւոր լեռները։
8 }
9 } Հայաստանի գլխաւոր գետերը և լճերը։
10 }
11 Հայաստանի կլիմայն։
12 Հայաստանի պտղաբերութիւնը։
13 Հայաստանի մէջ գտնուած կենդանիները։
14 Հայաստանի հանքերը։
15 Հայաստանի վաճառները։
16 Հայաստանի բաժանումը։

## Տաճկի Հայաստան.

17 Տաճկի Հայաստանին վրայ գիտելիք ։
18 Էրզրումի նահանգին վրայ գիտելիք ։
19 } Էրզրումի նահանգին գլխաւոր քաղաք-
20 } ները ։
21 Բասեան գաւառին վրայ գիտելիք ։
22 Վերին Բասենոյ գլխաւոր քաղաքները ։
23 Ստորին կամ Վարի Բասենոյ գլխաւոր քա-
ղաքները ։
24 Տուժիկ գաւառին վրայ գիտելիք ։
25 Չըլտըր նահանգին վրայ գիտելիք ։
26 Չըլտըր նահանգին գլխաւոր քաղաքները ։
27 Կարս կամ Գարս նահանգին սահմանը ։
28 Կարս նահանգին գլխաւոր քաղաքները ։
29 Շօրէկէլ գաւառին վրայ գիտելիք ։
30 Պայէզիտ նահանգին սահմանը ։
31 Պայէզիտի նահանգին գլխաւոր քաղաքները ։
32 Ալաշկերտ գաւառին վրայ գիտելիք ։
33 Վան նահանգին վրայ գիտելիք ։
34 Վանայ ծովուն կղզիներուն վրայ գիտելիք ։
35 Վան նահանգին գլխաւոր քաղաքը և ծովե-
զերեայ տեղուանքը ։
36 Վանայ նահանգին ուրիշ գլխաւոր քաղաք-
ները ։
37 Ճուլամերկ գաւառին երևելի տեղերը ։
38 Սասուն գաւառին վրայ գիտելիք ։
39 Մշոյ գաւառին վրայ գիտելիք ։
40 Տիարպէքիրի նահանգին սահմանը ։
41 Տիարպէքիրի նահանգին գլխաւոր քաղաքը ։
42 Տիարպէքիրի նահանգին ուրիշ քաղաքները ։

## Ռուսի Հայաստան.

43 Ռուսի Հայաստանին վրայ գիտելիք :
44 Թիֆլիզու նահանգին մէջ սեպուած Հայաստանի գլխաւոր քաղաքները :
45 Գանձակ և Ղարապաղ նահանգաց մէջ գլխաւոր տեղուանքն :
46 Երևան նահանգին գլխաւոր քաղաքները :
47 Էջմիածնի վրայ գիտելիք :
48 Նախիջուան նահանգին գլխաւոր տեղուանքը :

## Պարսից Հայաստան.

49 Պարսից Հայաստանին վրայ գիտելիք :
50 Պարսից Հայաստանին գլխաւոր քաղաքները :
51 Մուղան կամ Մուկան դաշտին վրայ գիտելիք :

## Փոքր Հայք.

52 Փոքր Հայոց երկիրը :
53 Փոքր Հայոց բաժանմունքը :
54 Սըվազ նահանգին գլխաւոր քաղաքները :
55 Սըվազէն զատ ուրիշ գլխաւոր քաղաքներ :
56 Եփրատ գետոյն մօտ քաղաքներ :
57 Գայսերիէ քաղաքին վրայ գիտելիք :
58 Հայոց Միջագետաց գլխաւոր քաղաքները :
59 Կիլիկիոյ վրայ գիտելիք :
60 Կիլիկիոյ գլխաւոր քաղաքները :
61 Մարաշու գաւառին վրայ գիտելիք :
62 Մարաշու երկրին գլխաւոր քաղաքները :



